ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ • 1970

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

1970-71 ուսումնական տարում մեր ամսագրի համարներում պարբերաբար տպագրվելու են կուսակցական ուսումնական ցանցի երկու օղակների՝ «Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի» և «Պրոբլեմային տնտեսական սեմինարների» ծրագրային նյութերը՝ հոդվածներով: Առաջինի ունկնդիրների համար կտպագրվեն գերազանցապես **տնտեսագիտական բնույթի,** իսկ երկրորդի համար՝ **միջազգային կյանքին** վերաբերող հոդվածներ:

### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:*

*Սույն կանոնները խախտողների հոդվածները կմնան անհետևանք:*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**10** ՀՈԿՏԵՄԲԵՐ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян утиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание






## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ

# ՈՐՈՇՈՒՄԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ 50-ԱՄՅԱԿԻ ՄԱՍԻՆ

1970 թվականի նոյեմբերին հայ ժողովուրդը, հանրապետության բոլոր աշխատավորները սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում մեծ հանդիսավորությամբ կնշեն Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակը:

Հիսուն տարի առաջ սկսվեց հայ ժողովրդի բազմադարյան պատմության նոր դարագլուխը: Ընթանալով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ուղիով, Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, տապալեցին դաշնակցականների ու նրանց օտարերկրյա տերերի իշխանությունը և Հայաստանը հռչակեցին Սովետական Սոցիալիստական Հանրապետություն:

Հայաստանի աշխատավորները սոցիալական և ազգային ազատագրության պայքարի դժվարին ու բարդ ուղի են անցել: Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորումը և սովետական իշխանության հաստատումն այդ պայքարի, Ռուսաստանի կազմում Հայաստանի սոցիալ-տնտեսական ու քաղաքական նախորդ զարգացման օրինաչափ արդյունքն են:

Հայ ժողովուրդն իր ազգային մեծ տոնը դիմավորում է օրինական հպարտությամբ: ՍՍՀՄ ժողովուրդների միասնական ընտանիքում, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման շնորհիվ նա պատմական մեծ նվաճումների է հասել տնտեսության, կուլտուրայի, գիտության, հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում: Հայաստանը դարձել է ծաղկուն, բարգավաճող սոցիալիստական հանրապետություն:

Հանրագումարի բերելով 50-ամյա փառավոր ուղու արդյունքները, հայ ժողովուրդը, հանրապետության բոլոր աշխատավորները իրենց անսահման սերն ու երախտագիտությունն են արտահայտում Վլադիմիր Իլյիչ Լենինին, նրա ստեղծած Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը:

Մեծ Լենինի անվան, նրա հեղափոխական գործունեության հետ են անխզելիորեն կապված Հայաստանում մարքսիզմի տարածումը, բոլշևիկյան կազմակերպությունների ստեղծումն ու ամրապնդումը, հայ ժողովրդի սոցիալական և ազգային ազատագրությունը, նրա սոցիալիստական վերածնունդը: Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները լի են Իլյիչի պատգամներն այսուհետև նույնպես սրբությամբ կատարելու, սոցիալիզմի պատմական նվաճումները պահպանելու և բազմապատկելու վճռականությամբ:

* * *

Հայ ժողովուրդը դարեր շարունակ հերոսական պայքար է մղել օտարերկրյա և սեփական կեղեքիչների դեմ, անցել է դաժան փորձությունների ու ոգորումների երկարատև ուղի:

Հայ առաջադեմ գործիչներն իրենց հայրենիքի փրկությունը տեսել են Ռուսաստանի հետ սերտ դաշինքի մեջ: Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին հայ ժողովրդի պատմական ճակատագրում ունեցավ պրոգրեսիվ նշանակություն: Հայ ժողովուրդն իր բախտը կապեց ռուս մեծ ժողովրդի, նրա առաջավոր ուժերի հեղափոխական պայքարի հետ:

Արդեն XX դարի սկզբին Հայաստանի աշխատավորները ներգրավվեցին ցարիզմի դեմ համառուսաստանյան պրոլետարիատի հերոսական պայքարի մեջ:

Մարքսիզմի գաղափարների տարածումը, լենինյան իսկրայական խմբակների առաջացումն Անդրկովկասում արմատական շրջադարձ հանդիսացան երկրամասի հասարակական-քաղաքական կյանքում: Հայաստանում մարքսիստական առաջին կազմակերպություններն ստեղծվեցին Երևանում, Ալեքսանդրապոլում, Ղարսում, Ջալալօղլիում, Հաղպատում և այլուր:

1902 թվականին Թիֆլիսում ձևավորվեց «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը», որն իրեն հռչակեց որպես Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության բաղկացուցիչ մաս: Բարձր գնահատելով միության կազմակերպումը՝ Վ. Ի. Լենինը 1903 թվականի փետրվարին «Իսկրայի» էջերում գրեց. «Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստը և մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածքը տալու նրա ուշագրավ փորձը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 6, էջ 411):

1903 թվականին բոլշևիզմի հանդես գալը նոր էտապ նշանավորեց Ռուսաստանի հեղափոխական շարժման մեջ: Բոլշևիզմը ցույց տվեց աշխատավոր ժողովրդի ազատագրության իրական ուղին: Կանգնելով բոլշևիզմի դիրքերում, Հայաստանի հեղափոխական սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները ռուսական առաջին հեղափոխության տարիներին գլխավորեցին աշխատավորների ազատագրական շարժումը: Ղեկավարվելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության գաղափարներով՝ հայ բոլշևիկները եռանդուն պայքար էին մղում նացիոնալիզմի դեմ, ղեկավարում աշխատավորների դասակարգային մարտերը:

Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ինտերնացիոնալ բնույթը: «Մեզ մոտ և Կովկասում,— գրել է նա 1913 թվականին,— ս. դ. վրացիները+հայերը+թաթարները+ռուսները աշխատում էին *միասին մեկ միասնական* ս. դ. կազմակերպության մեջ: Այդ փրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում: Միակ լուծումը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 35, էջ 79):

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հայ ժողովուրդը մեծ ողբերգություն ապրեց: Օգտվելով պատերազմական իրադրությունից, օսմանյան Թուրքիայի կառավարողները, իմպերիալիստական տերությունների մեղսակցությամբ, իրականացրին արևմտահայության տեղահանման և բնաջնջման իրենց վաղեմի ծրագիրը:

Բոլշևիկները բացահայտում էին իմպերիալիստական կառավարությունների զավթողական նպատակները, մերկացնում բուրժուական կուսակցությունների հակաժողովրդական քաղաքականությունը: Պատերազմից դուրս գալու միակ ուղին նրանք տեսնում էին սոցիալիստական հեղափոխության հաղթանակի մեջ:



Հեղափոխական պայքարի բովում աճեց կոմունիստական կուսակցության գործիչների, մեծ Լենինի աշակերտների և զինակիցների հիանալի համաստեղություն: Հայ ժողովրդի լավագույն զավակներ Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի, Բոգդան Կնունյանցի, Սիմոն Տեր-Պետրոսյանի (Կամո), Ալեքսանդր Մյասնիկյանի և շատ ուրիշների անունները ոսկե տառերով են գրված սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար ռուսաստանյան պրոլետարիատի մղած պայքարի հերոսական տարեգրության մեջ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նշանավորեց մարդկության պատմության նոր դարաշրջանի սկիզբը:

Հայ բանվորները, գյուղացիները, մտավորականության առաջադեմ ներկայացուցիչները ցնծությամբ դիմավորեցին Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը: Հոկտեմբերը բացեց հայ ժողովրդի ազատագրության ուղին, Հայաստանի աշխատավորներին վճռական պայքարի ոգեշնչեց հանուն սովետական իշխանության, պայմաններ ստեղծեց՝ իրագործելու ազատության ու անկախության նրանց դարավոր երազանքները:

Սակայն օտարերկրյա իմպերիալիստները և երկրամասի հակահեղափոխական ուժերը միավորվեցին՝ խոչընդոտելու Հոկտեմբերի հաղթարշավն Անդրկովկասում:

Ղեկավարվելով իրենց նեղ դասակարգային շահերով՝ Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունները տանում էին երկրամասը Սովետական Ռուսաստանից անջատելու դավաճանական գիծ: 1918 թվականի գարնանը երկիր ներխուժած թուրքական զավթիչների դեմ մղած մահացու պայքարում հայ ժողովուրդը հերոսաբար պաշտպանեց իր գոյության իրավունքը:

1918—1920 թվականներին Հայաստանում ստեղծվեց բացառիկ ծանր իրադրություն: Իշխանության գլուխ կանգնած դաշնակցության բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունն իր արկածախնդրական քաղաքականությամբ էլ ավելի ծանրացրեց ժողովրդի աղետալի վիճակը:

Այդ ճակատագրական պահին Սովետական Ռուսաստանը միակ ուժն էր, որ հանդես էր գալիս ի պաշտպանություն հայ ժողովրդի: Դեռևս 1917 թվականի դեկտեմբերին ՌՍՖՍՀ Ժողովրդական կոմիսարների սովետը, Վ. Ի. Լենինի ստորագրությամբ, ընդունեց դեկրետ, որով պաշտպանեց Արևմտյան Հայաստանի բնակչության ազատ ինքնորոշման իրավունքը: Քաղաքական և դիվանագիտական ակցիաներով Սովետական Ռուսաստանի կառավարությունը վճռաբար հանդես էր գալիս հայ ժողովրդի բնաջնջման իմպերիալիստական քաղաքականության դեմ:

Հայաստանի աշխատավորները բոլշևիկների գլխավորությամբ համառ պայքար ծավալեցին դաշնակցական հակաժողովրդական իշխանության դեմ:

Հայաստանի կոմունիստները հարազատ ժողովրդի փրկությունը տեսնում էին սովետական իշխանության հաստատման համար մղվող դասակարգային պայքարի ուղիներում, Սովետական Ռուսաստանի հետ դաշինքի մեջ:

Անդրկովկասում Հոկտեմբերյան հեղափոխության դրոշը առաջինը բարձրացրեց Բաքվի բազմազգ պրոլետարիատը: 1918 թվականին Բաքվի կոմունան, Ստեփան Շահումյանի գլխավորությամբ, հերոսական պայքար մղեց ներքին հակահեղափոխության և օտարերկրյա ինտերվենտների միացյալ ուժերի դեմ:

Վ. Ի. Լենինի և ՌԿ(բ)Կ Կենտկոմի օգնությամբ Հայաստանի բոլշևիկները աշխատանք ծավալեցին իրենց շարքերի համախմբման, կուսակցական կազմակերպությունների քաղաքական և կազմակերպչական ամրապնդման ուղղությամբ:

1919 թվականի սեպտեմբերին Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցությունն ընտրեց կուսակցական միասնական ղեկավար կենտրոն՝ ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտե (Արմենկոմ): Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման գործում որոշիչ դեր խաղաց 1920 թվականի հունվարին Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների Երևանում գումարված առաջին կոնֆերանսը:

Անդրկովկասի հեղափոխական շարժումների, սովետական իշխանության

համար Հայաստանի աշխատավորների մղած պայքարի պատմության մեջ պանծալի էջ է 1920 թվականի Մայիսյան ապստամբությունը:

Հայ ժողովուրդը խոր երախտագիտությամբ է հարգում սովետական իշխանության համար ընկած իր քաջարի զավակների պայծառ հիշատակը:

Հայաստանում սովետական իշխանության համար մղված պայքարում մեծ նշանակություն ունեցավ Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության կազմակերպական ձևավորումը 1920 թվականի հունիսին:

1920 թվականի ամռանը կազմավորվեց Հայաստանի կոմունիստական երիտասարդական միությունը:

1920 թվականի աշնանը օտարերկրյա զավթիչների նոր արշավանքի, դաշնակցական կառավարության հակաժողովրդական քաղաքականության հետևանքով Հայաստանը կանգնեց կատարյալ աղետի առջև: Այդ օրհասական իրադրության պայմաններում Հայաստանի աշխատավորները, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, ապստամբության դրոշ բարձրացրին դաշնակների տիրապետության դեմ: Ապստամբներին օգնության եկավ 11-րդ հերոսական կարմիր բանակը: Դաշնակների և նրանց օտարերկրյա տերերի իշխանությունը խորտակվեց:

Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտեն 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանը հռչակեց սովետական: Վ. Ի. Լենինը ողջունեց իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին:

Հայաստանում սովետական իշխանության հաղթանակը դարձակետ հանդիսացավ հայ ժողովրդի բազմադարյան պատմության մեջ: Հայաստանի աշխատավորներն ընդմիշտ ազատագրվեցին ներքին և արտաքին կեղեքիչներից:

Ստեղծվեց Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը: Հայ ժողովուրդն ընթացավ նոր կյանքի, սոցիալիզմի կառուցման ուղիով:

* * *

Սովետական իշխանության հաստատումով դրվեցին հայ ժողովրդի սոցիալիստական վերածնության հիմքերը:

Նոր կյանքի կառուցումն սկսվեց բացառիկ ծանր պայմաններում: Սովետական իշխանությունը ժառանգել էր հետամնաց, քայքայված տնտեսություն: Ամենուրեք տիրում էին սով ու աղքատություն: Սովետական իշխանությունն ամենաարմատական միջոցներ ձեռնարկեց տնտեսական ծայրաստիճան քայքայումը հաղթահարելու, նորաստեղծ հանրապետության ներքին ու արտաքին դրությունն ամրապնդելու համար:

Ազգայնացվեցին արտադրության միջոցները, ժողովրդական տնտեսության բոլոր բարձունքներն անցան բանվորների և աշխատավոր գյուղացիության ձեռքը: Ստեղծվեց Հայաստանի սովետական պետական ապարատը, կազմավորվեցին բանվորա-գյուղացիական իշխանության տեղական օրգանները՝ սովետները: 1922 թվականի փետրվարին Հայաստանի սովետների առաջին համագումարը հաստատեց հանրապետության առաջին սահմանադրությունը:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունն աշխատավոր մասսաներին ոտքի հանեց քայքայվածության և սովի դեմ, նրանց ջանքերն ուղղեց տնտեսական շինարարության առաջնահերթ խնդիրների լուծմանը:

Ներքին և արտաքին դժվարությունները հաղթահարելու գործում վճռական նշանակություն ունեցավ սովետական Ռուսաստանի տնտեսական, ռազմաքաղաքական, դիվանագիտական օգնությունը: Հայաստանը ստանում էր պարենամթերք, արդյունաբերական ապրանքներ, մեքենաներ ու սարքավորումներ, դրամական միջոցներ:

Լենինը ուշադիր հետևում էր անդրկովկասյան նորաստեղծ սովետական հանրապետությունների ամրապնդմանն ու զարգացմանը: Ծրագրային նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի 1921 թվականի ապրիլի 14-ի *Ադրբեջանի Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնային Հանրապետության կոմունիստ-ընկերներին* հղած նամակը, ուր նշված էին սովետական իշխանության ամրապնդման, տնտեսության վերականգնման ու զարգացման ուղղությամբ Կովկասի, այդ թվում՝ Հայաստանի աշխատավորության կարևորագույն խնդիրները:



Երկրամասի ժողովուրդների կյանքում պատմական դեր խաղաց 1922 թվականին Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ Անդրկովկասյան Ֆեդերացիայի ստեղծումը:

Լենինյան ազգային քաղաքականության մեծ հաղթանակն էր Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը:

Սովետական Ռուսաստանի օգնության պայմաններում, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Հայաստանի աշխատավորները, մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ միասին, հերոսական պայքար ծավալեցին հանուն սոցիալիստական հասարակարգի կառուցման:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունն իրականացնում էր կուսակցության գլխավոր գիծը, պայքար մղում տրոցկիզմի, «ձախ» և աջ օպորտունիզմի ու բուրժուական նացիոնալիզմի, հակալենինյան բոլոր խմբավորումների դեմ, պաշտպանում կուսակցության շարքերի միասնությունը:

Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ պատմական կարճ ժամանակամիջոցում բուռն վերելք ապրեցին Հայաստանի ժողովրդական տնտեսությունն ու կուլտուրան: Երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ասպարեզում կուսակցության քաղաքականության հաղթանակը, կուլտուրական հեղափոխությունը արմատապես վերափոխեցին ժողովրդի տնտեսական և հասարակական-քաղաքական կյանքը: Արդեն առաջին հնգամյակի տարիներին հանրապետությունը ագրարայինից վերածվեց ինդուստրիալ-ագրարայինի, մանր, անջատ գյուղացիական տնտեսությունները փոխարինվեցին կոլեկտիվ խոշոր տնտեսություններով:

Հետագա տարիներին ավարտվեց Հայաստանի ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինումը, բարձրացավ աշխատավորության նյութական և կուլտուրական մակարդակը, իսպառ վերացվեցին շահագործողական դասակարգերը, ամրապնդվեց բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության անխախտ դաշինքը, հաստատվեց սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական կուռ միասնությունը: Սոցիալիստական շինարարության ընթացքում վերացվեց ժողովուրդների՝ անցյալից ժառանգած փաստացի անհավասարությունը:

Մեր երկրի սոցիալիստական մյուս ազգերի հետ միասին ձևավորվեց և զարգացավ սոցիալիստական հայ ազգը: Ծաղկում ապրեց նրա կուլտուրան:

1936 թվականին ընդունվեց ՍՍՀՄ սահմանադրությունը, հաղթանակած սոցիալիզմի սահմանադրությունը: Անդրկովկասյան Ֆեդերացիան, կատարելով իր պատմական դերը, վերացվեց: Հայկական, Վրացական և Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունները մտան ՍՍՀՄ կազմի մեջ: Ընդունվեց Հայկական ՍՍՀ նոր սահմանադրությունը:

Սովետական ժողովրդի խաղաղ ստեղծագործական աշխատանքն ընդհատվեց մեր երկրի վրա ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակումով: Պատերազմը սպառնալիքի տակ դրեց ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների ազատությունն ու անկախությունը, Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները:

Սովետական ժողովուրդը պատվով դիմացավ պատերազմի ծանր փորձությանը: Ռուս մեծ ժողովրդի, մեր երկրի եղբայրական ողջ աշխատավորների հետ մեկտեղ հայ ժողովուրդը պատերազմի արհավիրքների օրերին մի անգամ ևս ապացուցեց իր անձնուրաց հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, սովետական կարգերին, հարազատ կոմունիստական կուսակցությանը:

Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում հերոսաբար կռվեցին հայ ժողովրդի հարյուր հազարավոր զավակներ ու դուստրեր: Ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, ուզբեկների, ղազախների, վրացիների, ադրբեջանցիների, լատիշների, ՍՍՀՄ մյուս ժողովուրդների զավակների հետ ուս-ուսի նրանք մարտնչեցին Մոսկվայի, Ստալինգրադի տակ, մասնակցեցին Լենինգրադի պաշտպանությանը, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մերձբալթյան հանրապետությունների ազատագրմանը:

Ֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում իրենց մարտական դրոշները անթառամ փառքով պսակեցին հայկական հինգ դիվիզիաները:

89-րդ հրաձգային Թամանյան դիվիզիան Կովկասյան նախալեռներից հասավ մինչև Բեռլին:

Հիտլերյան օկուպացիայի տարիներին հազարավոր հայ հայրենասերներ կռվեցին պարտիզանական ջոկատներում, ներգրավվեցին Ֆրանսիայի, Հունաստանի, Բուլղարիայի և այլ երկրների հակաֆաշիստական շարժման մեջ: Ֆաշիզմի դեմ մղված ընդհանուր պայքարին մասնակցեցին արտասահմանյան հազարավոր հայեր: Հայկական գաղութներում ծավալվեց սովետական բանակին օգնելու նպատակով միջոցներ հավաքելու հայրենասիրական շարժումը:

Ավելի քան 60 հայ գեներալներ ռազմաճակատներում կորամիավորումներ էին ղեկավարում:

Մարտերում ցուցաբերած արիության ու խիզախության համար մոտ 70 հազար հայ ռազմիկներ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով և մարտական մեդալներով, իսկ 103-ը արժանացան Սովետական Միության հերոսի կոչման:

Ամբողջ պատերազմի ընթացքում Հայաստանի բանվորները, կոլտնտեսականներն ու մտավորականությունն աշխատում էին անձնուրաց կերպով: Կուսակցության՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» կոչը դարձավ հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների գործունեության նշանաբանը:

Հաղթականորեն ավարտելով Հայրենական մեծ պատերազմը, սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ պատերազմի հետևանքների վերացմանը:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը մոբիլիզացրեց հանրապետության աշխատավորությանը, նրա ջանքերն ուղղելով ժողովրդական տնտեսության հետպատերազմյան կարգացման ծրագիրը հաջողությամբ կենսագործելուն:

Բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը իրենց անձնվեր աշխատանքով ապահովեցին հանրապետության էկոնոմիկայի ու կուլտուրայի բուռն վերելքը:

Սովետական Հայաստանի աշխատավորները փայլուն էջեր արձանագրեցին ՍՍՀՄ-ում սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակի համար համաժողովրդական պայքարի տարեգրության մեջ: ՍՍՀՄ-ում սոցիալիզմի լիակատար, վերջնական հաղթանակը և անցումը կոմունիզմի կառուցմանը լենինյան կենսահաստատ գաղափարների, կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականության կենդանի մարմնավորումն է: Սոցիալիզմն ամբողջ աշխարհին ցույց տվեց իր վերափոխիչ մեծ ուժը, կապիտալիզմի նկատմամբ իր անվիճելի գերապանցությունը:

«Սոցիալիզմը,— ասել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— ծնունդ է տվել միլիոնների՝ պատմության մեջ դեռևս չտեսնված ստեղծագործական խանդավառության, մասսայական անձնվեր աշխատանքի, որը կատարվում է ոչ թե հարկադրանքով, այլ արգասիք է աշխատավորների բարձր գիտակցականության»:

Սովետական Հայաստանի աշխատավորներն օրինական հպարտության զգացումով են նայում պայքարի ու հաղթանակների անցած կեսդարյա փառահեղ ճանապարհին: Սոցիալիզմ կառուցող սերնդի աննկուն կամքը, մասսայական հերոսությունը, արիության և անձնազոհության անմոռաց օրինակները ոգեշնչման հորդաբուխ աղբյուր են ներկա ու գալիք սերունդների համար:

Անցած կես դարում հայ ժողովրդի հաջողությունները փայլուն վկայությունն են այն բանի, թե ինչպիսի մեծ գործերի է ընդունակ շահագործման կապանքները թոթափած, իր երկրի ու վաստակի տերը դարձած աշխատավոր մարդը:

Իր վերածննդի կեսդարյա պանծալի ուղին հայ ժողովուրդն անցել է ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ սերտ համագործակցության պայմաններում: Սովետական Միության կոմունիստական կուսակցության իմաստուն ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ Հայաստանն այսօր դարձել է ժամանակակից զարգացած ինդուստրիալ երկիր: Հանրապետության ազգային եկամտի ավելի քան երկու երրորդը գոյանում է արդյունաբերության ոլորտում: Սովետական իշխանության տարիներին հիմնադրվեցին արդյունաբերական



խոշոր կենտրոններ: Ժամանակակից գործարաններ ու ֆաբրիկաներ կառուցվեցին Երևանում, Լենինականում, Կիրովականում: Հանրապետության քարտեզի վրա առաջացան նոր քաղաքներ՝ Քաջարանն ու Հրազդանը, Չարենցավանն ու Աբովյանը: Ինդուստրիալ Հայաստանի դեմքը ներկայումս որոշում են արդյունաբերության ժամանակակից այնպիսի առաջատար ճյուղեր, ինչպիսիք են՝ գունավոր մետալուրգիան, քիմիական, մեքենաշինական ու սարքաշինական արդյունաբերությունը, ռադիոէլեկտրոնիկան, ավտոմատացման միջոցների ու նորագույն հաշվիչ մեքենաների արտադրությունը:

Վերջին տարիներին զգալի աշխատանք է կատարվել հանրապետության արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման ուղղությամբ: Արդյունաբերական խոշոր կենտրոնների հետագա զարգացմանը զուգընթաց գրեթե բոլոր շրջկենտրոններում ստեղծվեցին արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք հնարավորություն են ընձեռում՝ արդյունավետ օգտագործելու տեղական հումքը և աշխատուժը:

Սովետական Հայաստանը ներկայումս աշխարհի ավելի քան 70 երկրներ է արտահանում շուրջ 150 անուն արդյունաբերական արտադրանք: Հանրապետության արդյունաբերությունը գտնվում է անշեղ վերելքի ճանապարհին: Ներկայումս Հայաստանում գործում է 678 արդյունաբերական ձեռնարկություն: Ընթացիկ հոբելյանական տարում արդյունաբերական արտադրանքի ծավալը նախահեղափոխական մակարդակը կգերազանցի ավելի քան 180 անգամ:

Բարձր տեմպերով է զարգանում Հայաստանի էներգետիկ բազան: Միայն 1969 թվականին հանրապետությունում արտադրվել է 5 միլիարդ 408 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա կամ 2,7 անգամ ավելի, քան ամբողջ ցարական Ռուսաստանում 1913 թվականին:

Մեծ վերելք է ապրել հանրապետության ավտոմոբիլային, երկաթուղային և օդային տրանսպորտը, ընդլայնվում է խճուղային ճանապարհների ցանցը:

Անշեղորեն աճում են կապիտալ ներդրումները: Միայն ընթացիկ հնգամյակի անցած չորս տարում հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են այնքան կապիտալ միջոցներ, որքան 1921—1961 թվականներին:

Սոցիալիստական արդյունաբերության ստեղծմանն ու զարգացմանը զուգընթաց ձևավորվեց ու աճեց Հայաստանի բանվոր դասակարգը, ստեղծվեց ինժեներա-տեխնիկական աշխատողների մեծաթիվ ջոկատը, որոնք վճռական դեր են խաղում հանրապետության արտադրողական ուժերի զարգացման և նրա սոցիալ-տնտեսական կյանքում:

Սովետական իշխանության տարիներին արմատապես վերափոխվել է գյուղատնտեսությունը:

Հանրապետությունը ծածկվել է ջրանցքների լայն ցանցով: 1920 թվականի համեմատությամբ, հանրապետության ոռոգելի հողատարածություններն ավելացել են ավելի քան 4 անգամ և 1970 թ. սկզբին կազմել են 255 հազար հեկտար: Ջրարբիացվել են հարյուր հազարավոր հեկտար արոտավայրեր: Տարեցտարի ավելանում են ջրաշինարարական աշխատանքներին հատկացվող միջոցները: Հանրապետությունում արագ տեմպերով զարգանում են խաղողագործությունն ու պտղաբուծությունը: Անցած 50 տարիների ընթացքում խաղողի և պտղատու այգիների տարածություններն ավելացել են 12 անգամ: Բարձրանում է գյուղատնտեսական արտադրության ինտենսիվությունը, աճում է նրա նյութատեխնիկական բազան: Հաջողությամբ է իրագործվում գյուղատնտեսության քիմիացման, էլեկտրիֆիկացման, հողագործության և անասնապահության կուլտուրայի հետագա բարելավման ծրագիրը: Հայաստանի հանրային դաշտերում աշխատում են ավելի քան 9.000 տրակտոր, մոտ 1.700 հացահատիկային կոմբայն, ավելի քան 9.000 բեռնատար ավտոմեքենա, հազարավոր գյուղատնտեսական այլ մեքենաներ: Էլեկտրիֆիկացվել են հանրապետության բոլոր սովխոզներն ու կոլտնտեսությունները:

Սովետական իշխանության տարիներին հանրապետության գյուղատնտեսության մեջ ներդրվել է 1,3 միլիարդ ռուբլի: Գյուղում աճել են մասնագետների և մեխանիզատորների որակյալ կադրեր: Այժմ գյուղատնտեսական արտադրության ոլորտում աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագի-

տական կրթությամբ ավելի քան 7.600 ագրոնոմներ, կոոտեխնիկներ, անասնաբույծներ, ինժեներներ և տեխնիկներ:

Արտադրության միջոցների հանրային սեփականությունը, տնտեսության վարման սոցիալիստական եղանակը, կոլեկտիվ աշխատանքը հիմնովին վերափոխել են գյուղացու կենցաղը, նրա հոգեբանությունը: Գյուղի բնակչության բարեկեցության աճը, նրա կուլտուր-կրթական մակարդակի բարձրացումը լենինյան կոոպերատիվ պլանի կենսագործման արդյունքն են, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի անխորտակելիության փայլուն հաստատումը:

Կոմունիստական կուսակցության գործունեության գերագույն նպատակը աշխատավորների կենսական շահերին ծառայելն է, նրանց նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման նկատմամբ անդուլ հոգատարությունը: Աշխատանքի արտադրողականության կգալի բարձրացման, հանրային հարստության ավելացման համեմատ աճում են հանրապետության բանվորների, գյուղացիների, ծառայողների ռեալ եկամուտները, մեծանում են սպառման հանրային ֆոնդերը, կարգանում է ժողովրդական կրթությունը, բարելավվում աշխատավորների բուժսպասարկումը, սոցիալական ապահովությունը: Ընդլայնվում են առևտուրը և բնակչության կենցաղային սպասարկման գործը:

Այսօրվա Սովետական Հայաստանը շինարարական մի իսկա հրապարակ է: Աննախընթաց ծավալ է ստացել բնակարանային շինարարությունը: Միայն վերջին չորս տարում կառուցվել է 4 միլիոն 802 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն:

Սովետական իշխանության տարիներին, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Հայաստանում իրագործվեց կուլտուրական հեղափոխությունը: Հուժկու զարգացում ապրեց հայ ժողովրդի բազմադարյան կուլտուրան, նա ստացավ հոգևոր մշակույթի նոր արժեքներ ստեղծելու անսահման հնարավորություններ: Հայաստանի աշխատավորները հաղորդակից դարձան մարդկության կուլտուրայի գանձերին: Այժմ կուլտուրայի բոլոր հարստությունները, գիտության նվաճումները, տեխնիկայի հրաշալիքները դարձել են նյութական և հոգևոր արժեքների իսկական ստեղծողի՝ ժողովրդի սեփականությունը:

Սոցիալիստական Հայաստանը համատարած գրագիտության երկիր է. 1.500 հանրակրթական դպրոցներում սովորում է 634 հազար աշակերտ, որոնց ուսուցման ու դաստիարակության գործով զբաղված է ավելի քան 32 հազար ուսուցիչ: Մանկապարտեզներում և մանկամսուրներում ընդգրկված են մոտ 90 հազար երեխաներ:

Հանրապետության 12 բուհերում սովորում է ավելի քան 53 հազար ուսանող: Անցած 50 տարում Հայաստանը տվել է բարձրագույն կրթությամբ ավելի քան 80 հազար որակյալ մասնագետ: Մեծ զարգացում է ապրել միջնակարգ մասնագիտական կրթությունը. 60 տեխնիկումներում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում է 45 հազար ուսանող: 10 հազար բնակչին ընկնող ուսանողների թվով Հայաստանն առաջ է անցել զարգացած կապիտալիստական շատ երկրներից:

Սոցիալիստական Հայաստանը դարձել է առաջավոր գիտության հանրապետություն: Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան Միության ճանաչված գիտական կենտրոններից է: Ավելի քան 100 գիտահետազոտական հիմնարկներում աշխատանք են կատարում 11 հազար 600 գիտական աշխատողներ: Բուռն զարգացում են ապրում ժամանակակից գիտության բնագավառները: Հայաստանի գիտնականները խոշոր հաջողությունների են հասել գիտության ամենատարբեր ուղղություններում՝ երկրի ընդերքի գաղտնիքների բացահայտումից մինչև հեռավոր գալակտիկաներում և կոսմիկական տարածություններում երկրային մարմինների ու պրոցեսների հետազոտումը: Հետագա զարգացում են ապրել հասարակական գիտությունները:

Սովետական Հայաստանն ունի կուլտուր-լուսավորական հիմնարկների լայն ցանց: Հանրապետությունում գործում են ավելի քան 1.100 ակումբ, 1.254 մասսայական գրադարան, որոնց գրքային ֆոնդը գերազանցում է ցարական Ռուսաստանի գրքային ֆոնդն ամբողջությամբ վերցրած:



Բարգավաճել է հայ ժողովրդի՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Մեծ զարգացում են ապրել սովետահայ գրականությունը, երաժշտությունը, գեղանկարչությունը, կինոն, թատրոնը: Զարգանալով սոցիալիստական ռեալիզմի ուղիով, կուսակցության և ժողովրդայնության լենինյան սկզբունքների հիման վրա, գրականությունը և արվեստը արտացոլում են սովետական ժողովրդի հերոսական առօրյան, կարևոր դեր են խաղում կուլտուրական առաջընթացի, սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության գործում: Ժողովրդի հոգևոր կյանքում իրենց հաստատուն տեղն են գրավել գիրքը, թերթը, ռադիոն և հեռուստատեսությունը:

Սովետական իշխանության տարիներին ձևավորվեց ու աճեց կոմունիստական կուսակցության ու ժողովրդի գործին անսահմանորեն նվիրված սովետահայ մտավորականությունը: Նա իր ամբողջ տաղանդը, ամբողջ եռանդը նվիրաբերում է մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ գործին:

Արմատապես վերակառուցվել է բնակչության բուժսպասարկումը, վերացվել են համաճարակային ու մասսայական հիվանդությունները, ընդարձակվել է առողջապահական հիմնարկների ցանցը: Եթե 1920 թվականին Հայաստանում կար ընդամենը 26 հիվանդանոց՝ 235 մահճակալով, ապա այժմ գործում են ժամանակակից սարքավորումներով 265 հիվանդանոց՝ ավելի քան 20 հազար մահճակալով: Աճել է բժիշկների և գիտաշխատողների մեծ ջոկատ: Աշխատավորների առողջապահության և բուժսպասարկման բնագավառում զբաղված են 7.329 բժիշկներ և 17.274 միջին բուժաշխատողներ: 10 հազար բնակչին Հայաստանում մոտ երկու անգամ ավելի բժիշկ է ընկնում, քան զարգացած կապիտալիստական երկրներում:

Բուռն թափով աճել է հանրապետության բնակչությունը: Վերջին 11 տարում այն ավելացել է 41,4 տոկոսով և այժմ կազմում է 2,5 միլիոն մարդ:

Հայ ժողովրդի կյանքում տեղի ունեցած մեծ վերափոխումները հնարավորություն ընձեռեցին իրականացնելու նրա տարագիր հատվածի երազանքը: Սովետական Միության կոմունիստական կուսակցության և ՍՍՀՄ կառավարության հոգատարության շնորհիվ անցած 50 տարում աշխարհով մեկ սփռված հարյուր հազարավոր հայ աշխատավորներ հաստատվեցին հայրենիքում: Այստեղ նրանց համար ստեղծվեցին աշխատանքի և կյանքի ապահով պայմաններ, հանրապետության հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում ակտիվորեն մասնակցելու հնարավորություններ:

Հայ ժողովուրդը արժանի ավանդ է ներդնում կոմունիզմի կառուցման գործում: Տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերած հաջողությունների համար Հայկական ՍՍՀ-ն պարգևատրվել է Լենինի երկու շքանշանով:

Սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման է արժանացել 179 մարդ: Ավելի քան 130 հազար աշխատավորներ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով և մեդալներով: Շքանշաններ են ստացել 24 արդյունաբերական և շինարարական ձեռնարկություններ, կոլտնտեսություններ, սովխոզներ, գիտության, կուլտուրայի, լուսավորության հիմնարկներ:

Սովետական գիտության ու տեխնիկայի, գրականության և արվեստի զարգացման գործում աչքի ընկած բազմաթիվ գիտնականներ, ինժեներներ, արտադրության նորարարներ, գրողներ, կոմպոզիտորներ, նկարիչներ, արտիստներ արժանացել են լենինյան և պետական մրցանակների:

Հանրապետության 37 ձեռնարկություն, կազմակերպություն պարգևատրվեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի, իսկ 128 կազմակերպություն՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի հոբելյանական լենինյան պատվոգրերով:

Սովետական Հայաստանի պատմական նվաճումները Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության լենինյան ազգային քաղաքականության փայլուն արգասիքն են:

Այս օրերին հայ ժողովուրդն իր շնորհակալական սրտագին խոսքն է ուղղում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին և սովետական կառավարությանը Հայ-

կական ՍՍՀ էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման նկատմամբ նրանց ցուցաբերած ամենօրյա հոգատարության համար, երախտագիտություն է արտահայտում ռուս մեծ ժողովրդին, սոցիալիստական մեր հայրենիքի բոլոր ժողովուրդներին անգնահատելի, եղբայրական օգնության համար:

Սովետական ժողովուրդների բարեկամության ու միասնության դրսևորումն է Սովետական Հայաստանի աշխատավորների սոցիալիստական մրցությունը Ուկրաինայի և Վրաստանի, Մոլդավիայի և Ադրբեջանի, Ուզբեկստանի, Էստոնիայի, եղբայրական մյուս հանրապետությունների աշխատավորների հետ:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ջանք ու եռանդ չեն խնայի՝ այսուհետև ևս պատվով կատարելու կուսակցության ու կառավարության առաջադրանքները, աչքի լույսի պես պահպանելու և ամրապնդելու սովետական ժողովուրդների լենինյան բարեկամությունը:

Կոմունիզմի համար մղվող պայքարի ոգեշնչողն ու կազմակերպիչը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է: Նրա մարտական ջոկատներից մեկը՝ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, պայքարի ու հաղթանակների փառավոր ուղի է անցել: Ավելի քան 130 հազար կոմունիստներ միավորող Հայաստանի կոմկուսն այսօր իր 50-ամյակը դիմավորում է գաղափարապես կոփված և կազմակերպչորեն ամրապնդված, Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը սերտորեն համախմբված:

Սովետական հասարակարգի հետագա զարգացման գործում կարևոր նշանակություն ունեցան անհատի պաշտամունքի հետևանքների վերացման, կուսակցական և պետական կյանքի լենինյան նորմերի վերականգնման, սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնման ուղղությամբ կուսակցության ձեռնարկած միջոցառումները:

Կուսակցության և ժողովրդի կյանքում մեծ դեր խաղաց ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումը, որը դատապարտեց վոլյունտարիզմը և սուբյեկտիվիզմը:

Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումներով՝ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը գլխավորում է հանրապետության բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության պայքարը կոմունիստական շինարարության հերթական խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

Կոմունիզմի կառուցման գործում աճում է սովետների, արհմիությունների, կոմերիտմիության դերը:

Տնտեսական և կուլտուրական շինարարության կարևորագույն հարցերի լուծման գործում ավելի ակտիվորեն են մասնակցում աշխատավորների դեպուտատների սովետները: Հասարակական-քաղաքական մեծ աշխատանք են կատարում Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և հանրապետության տեղական սովետների մոտ 26 հազար դեպուտատներ:

Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ հանրապետության արհմիությունները մեծ աշխատանք են կատարում մասսաների կոմունիստական դաստիարակության, տնտեսական շինարարության խնդիրները հաջողությամբ կենսագործելու և սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը բարձրացնելու ուղղությամբ:

Պատվով է կատարում կուսակցության հավատարիմ ռեզերվի և օգնականի դերը Հայաստանի պանծալի կոմերիտմիությունը, որն իր շարքերում միավորում է շուրջ 260 հազար պատանիների ու աղջիկների: Կոմերիտմիությունը աճող սերնդին դաստիարակում է կոմունիստական կուսակցության, սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային տրադիցիաների ոգով, իր արժանի ավանդն է ներդնում հանրապետության էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման գործում:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, ղեկավարվելով ՍՄԿԿ XXIII համագումարի և Կենտկոմի դեկտեմբերյան (1969 թ.) և հուլիսյան (1970 թ.) պլենումների որոշումներով, հանրապետության աշխատավորների ջանքերը մոբիլիզացնում է արտադրության արդյունավետության բարձրացման, տնտեսական աճի որակական ցուցանիշների բարելավման, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն արտադրության մեջ լայնորեն ներդնելու, միջոցների ռացիոնալ օգտագործման, գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, հողագործության և անասնաբուծության հետագա վերելքի կարևորագույն խնդիրները լուծելու համար:



Հայաստանի աշխատավորները ջերմորեն հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությանը: Նրանք դատապարտում են ամերիկյան իմպերիալիստների ավազակային պատերազմը Հնդկաչինում, պաշտպանում արաբ ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը:

Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները միահամուռ հավանություն են տալիս և պաշտպանում միջազգային կոմունիստական շարժման հետագա միասնությունն ամրապնդելու, իմպերիալիզմի դեմ, հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի աշխարհի բոլոր առաջադիմական ուժերը համախմբելու ուղղությամբ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հսկայական ջանքերը:

Հայաստանի աշխատավորները, Սովետական Միության ժողովուրդների հետ միասին, մեծ ոգևորությամբ ընդունեցին Սովետական Միության կոմունիստական կուսակցության հերթական XXIV համագումար հրավիրելու մասին որոշման լուրը: Համագումարը կամփոփի անցած հինգ տարում կուսակցության և ժողովրդի կատարած աշխատանքի արդյունքները, կորոշի կոմունիստական շինարարության հերթական խնդիրները, կհաստատի ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանը:

Նախատոնական այս օրերին հանրապետության գործարանների, ֆաբրիկաների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, սոցիալիստական լայն մրցություն են ծավալել հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու, ՍՄԿԿ XXIV համագումարը արժանավայել դիմավորելու համար:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԸ ՈՐՈՇՈՒՄ Է

Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակի տոնակատարությունն անցկացնել որպես կոմունիստական կուսակցության գլխավորությամբ սովետական իշխանության տարիներին հայ ժողովրդի, հանրապետության բոլոր աշխատավորների ձեռք բերած պատմական նվաճումների ստուգատես: Փառապանծ հոբելյանի նախապատրաստությունը պետք է ընթանա հասարակական արտադրության և հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում նորանոր բարձունքների հասնելու նշանաբանով:

Հավանություն տալ Սովետական Հայաստանի բոլոր այն առաջավոր ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների և սովխոզների կոլեկտիվների նախաձեռնությանը, որոնք ՍՄԿԿ առաջիկա XXIV համագումարի և Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի ու Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակի պատվին ստանձնել են բարձր պարտավորություններ և սոցիալիստական լայն մրցություն են ծավալել դրանք ժամկետից շուտ կատարելու համար:

Արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, տրանսպորտի աշխատանքային կոլեկտիվների կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին՝ համաժողովրդական տոնի պատվին լայնորեն ծավալել սոցիալիստական գործարար մրցություն: Ամենուրեք գլխավորել մասսաների ստեղծագործական եռանդը, բանվորների, ծառայողների, ինժեներատեխնիկական աշխատողների բոլոր ուժերը մոբիլիզացնել աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու և որակը բարելավելու, հումքը, էլեկտրաէներգիան, նյու-

թական ու դրամական միջոցները խնայելու, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումները արտադրության մեջ արմատավորելու, աշխատանքը գիտականորեն կազմակերպելու, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, պետական պլանները տեխնիկատնտեսական բոլոր հիմնական ցուցանիշներով կատարելու և գերակատարելու համար:

Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգանները պետք է գյուղի աշխատավորների ջանքերն ուղղեն գյուղատնտեսական արտադրության կզալի վերելք ապահովելու նպատակին: Անհրաժեշտ է առաջիկայում ևս հետևողական աշխատանք կատարել ցանքատարածություններն ու այգիներն ընդլայնելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու, անասունների գլխաքանակն ու մթերատվությունն ավելացնելու ուղղությամբ: Բարձր արդյունավետությամբ օգտագործել եղած ռեզերվներն ու հնարավորությունները, գյուղատնտեսական տեխնիկան, մեքենայացնել աշխատատար պրոցեսները, ընդլայնել արտադրական բազան, բարձրացնել գյուղատնտեսական գիտության դերը՝ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում:

Գյուղատնտեսության բոլոր աշխատողների կարևոր խնդիրն է՝ առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1970 թ.) պլենումի որոշումներով, ապահովել ընթացիկ տարվա պետական պլանն ու սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները:

Կուսակցական կազմակերպությունները պետք է անհրաժեշտ միջոցառումներ իրագործեն՝ վերացնելու ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների, հիմնարկների և կազմակերպությունների գործունեության թերությունները, ուժեղացնեն պայքարը բյուրոկրատիզմի, քաշքշուկի, սոցիալիստական սեփականության շռայլման դեմ, պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդման համար:

Գիտնականները, գրողները, կոմպոզիտորները, նկարիչները, արվեստի և կուլտուրայի գործիչները, բժիշկները, մանկավարժները, ժողովրդական տնտեսության մասնագետները, մտավոր աշխատանքի մարդիկ, ստեղծագործական կոլեկտիվները պետք է այսուհետև նույնպես համառորեն առաջ մղեն գիտության, տեխնիկայի, կուլտուրայի, արվեստի հետագա զարգացումը, բարելավեն բնակչության բուժսպասարկումը, շարունակեն կոմունիզմի վեհ գաղափարների ոգով երիտասարդ սերնդի դաստիարակության գործը, նորանոր նվաճումներով դիմավորեն հայ ժողովրդի փառապանծ տոնը:

ՀԿԿ քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կազմակերպություններին. Հայաստանի արհեստակցական միությունների խորհրդին, ՀԼԿԵՄ Կենտկոմին՝ քաղաքական և կազմակերպչական լայն աշխատանք ծավալել Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման 50-ամյակը նախապատրաստելու և անցկացնելու ուղղությամբ: Այդ նպատակով լայնորեն օգտագործել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակի և Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստության ու անցկացման ընթացքում ձեռք բերած կազմակերպչական, պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի հարուստ փորձը:

Ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, հիմնարկներում, ուսումնական հաստատություններում և զինվորական մասերում, բոլոր քաղաքներում և շրջաններում անցկացնել հանդիսավոր ժողովներ՝ նվիրված Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակին:

Անհրաժեշտ է լայնորեն պրոպագանդել հայ ժողովրդի, մեր երկրի բոլոր ժողովուրդների ձեռք բերած պատմական նվաճումները, ցույց տալ, որ միայն սովետական իշխանության հաստատումը հայ ժողովրդին փրկեց ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից, նրա առջև բացեց անշեղ զարգացման ու ծաղկման լայն ճանապարհ, որ սովետական իշխանության տարիներին հասարակական կյանքի բոլոր բնագավառներում հայ ժողովուրդը հսկայական նվաճումների է հասել լենինյան կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Սովետական Միության եղբայրական մյուս ժողովուրդների հետ սերտ բարեկամության և փոխօգնության պայմաններում:



Մասսայական-քաղաքական աշխատանքներում լայնորեն ներգրավել հին բոլշևիկների, Հոկտեմբերյան հեղափոխության և Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար մղված պայքարի մասնակիցների, աշխատանքի վետերանների, Սովետական Միության հերոսների և սոցիալիստական աշխատանքի հերոսների:

Հանրապետական, քաղաքային և շրջանային թերթերի, ամսագրերի էջերում, ռադիոյով, հեռուստատեսությամբ լայնորեն լուսաբանել Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակը, պրոպագանդել սովետական իշխանության տարիներին հանրապետության աշխատավորների ձեռք բերած պատմական նվաճումները:

Հանձնարարել հրատարակչական մարմիններին՝ ապահովել հոբելյանական գրականության լույսընծայումը:

Կազմակերպել գիտական սեսիաներ և կոնֆերանսներ, գեղարվեստական ինքնագործունեության ստուգատեսներ, ժողովրդական տնտեսության նվաճումների, կերպարվեստի և գրքերի ցուցահանդեսներ, սպորտային միջոցառումներ, դպրոցականների սպարտակիադաներ՝ նվիրված Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 50-ամյակին:

Շարունակել աշխատանքները սովետական իշխանության համար իրենց կյանքը զոհաբերած հերոսների հիշատակը հավերժացնելու ուղղությամբ, հուշարձաններ կառուցել, հուշատախտակներ տեղադրել անցյալի հեղափոխական կարևորագույն այն իրադարձությունների վայրերում, որոնք առնչվում են Հայաստանում սովետական իշխանության հաստատման, Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման, սոցիալիստական շինարարության տարիներին հանրապետության աշխատավորների հերոսական պայքարի ու հաղթանակների հետ:

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը՝ ՍՄԿԿ մարտական ջոկատներից մեկը, դեպի իր XXIV համագումարն է գնում առաջադրված խնդիրներն այսուհետև ևս պատվով կատարելու վճռականությամբ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հաստատ վստահություն է հայտնում, որ հանրապետության կոմունիստները, բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մտավորականությունը, բոլոր աշխատավորները, է՛լ ավելի սերտորեն համախմբվելով ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի և հարազատ սովետական կառավարության շուրջը, արտադրական ու քաղաքական նոր վերելքով կդիմավորեն Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության ու Հայաստանի կոմունիստական կուսակցության կեսդարյա հոբելյանը, ՍՄԿԿ XXIV համագումարը և բոլոր ուժերը կգործադրեն կոմունիստական շինարարության ասպարեզում նոր հաղթանակների հասնելու համար:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ս. Ա. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Դոկտոր, պրոֆեսոր, ՍՍՀՄ ԲԳԱ թղթ. անդամ

## ԱՐՏԱՑՈԼՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՀՈԳԵԲԱՆՈՒԹՅԱՆ ԱՌՈՒՄՈՎ

*Մարդկային հասարակության պատմության ընթացքում չի եղել որևէ գաղափարախոսություն, որն այնպիսի զորեղ ազդեցություն ունենար ժողովուրդների ճակատագրի վրա, ինչպես մարքս-լենինյան գաղափարախոսությունը։ XX դարի սկզբից ի վեր և ներկայումս այն դարձել է միլիոնավոր մարդկանց ներքին համոզմունքը։ Մարքս-լենինյան գաղափարները ոչ միայն արդի հասարակության զարգացման մեծագույն գործոնն են, այլև, բառիս լայն առումով, հասարակական կյանքի բոլոր մարզերի վիթխարի հեղաբեկիչ ուժ։*

*Լենինի տեսական աշխատություններում իր խոր արտացոլումն է գտել պատմական նոր դարաշրջանի տրամաբանությունը։*

*Ներկա ժամանակաշրջանում հատուկ հետաքրքրություն են ներկայացնում Լենինի այն աշխատությունները, որոնցում ընդհանրացված է բնագիտության ընդերքում XIX և XX դարերի սահմանագծում տեղի ունեցած բարդ վերակառուցումը, որի ականատեսներն ենք այսօր։ Այդ ժամանակաշրջանում բնագիտության մեջ տեղի ունեցած հեղաշրջումն առաջ բերեց արմատական վերակառուցում գիտական իմացության և փոփոխություններ՝ փիլիսոփայական մտածողության մեջ։*

*Լենինը դարի այն առաջին մտածողն էր, որն իր ժամանակի բնագիտության նվաճումներում տեսավ գիտական վիթխարի հեղափոխության սկիզբը, որը կարողացավ բացահայտել և փիլիսոփայորեն ընդհանրացնել բնության մեծ հետազոտողների հիմնարար հայտնագործությունների հեղափոխական իմաստը։ Լենինը ցույց տվեց բնական գիտությունների մեթոդոլոգիական վերազինման, գիտնականների կողմից առաջավոր գիտական տեսության գիտակից յուրացման և փիլիսոփաների ու բնագետների միության կազմակերպման կենսական անհրաժեշտությունը։*

*Առաջնորդի այդ ցուցումը ներկայումս հետևողականորեն կատարվում է։ Վերջին 10—15 տարիներում պարբերաբար հրավիրվում են փիլիսոփայության ներկայացուցիչների և գիտնական ֆիզիկոսների ու քիմիկոսների, կենսաբաններ ու բնախոսների, հոգեբանների ու հոգե-նյարդաբան բժիշկների համատեղ կոնֆերանսներ, նստաշրջաններ և սիմպոզիումներ։ Հենց նորերս մենք մասնակցեցինք փիլիսոփաների, սոցիոլոգների ու հոգենյարդաբանների համամիութենական սիմպոզիումին, որը նվիրված էր անձի պրոբլեմին՝ նորմայում և պաթոլոգիայում։*

*Իմացաբանական պրոբլեմների ստեղծագործական ուսումնասիրությունը Լենինին թույլ տվեց մի առանձին ուժով զարգացնելու այն գաղափարը, թե իմացության էությունը մարդկային գլխում օբյեկտիվ աշխարհի արտացոլման մեջ է։ Նա ապացուցեց, որ առանց մարդու իմացական գործունեության արտացոլիչ բնույթի ընդունման անհնար է մատերիալիստական դիալեկտիկան։ Արտացոլման տեսությունից հրաժարվելն անխուսափելիորեն կհանգեցնի սուբյեկտիվիզմի, ագնոստիցիզմի ու էկլեկտիկայով դիալեկտիկայի ննենգափոխմանը, ինչպես վարվում են փիլիսոփայական ժամանակակից ռևիզիոնիստները։*

**Մատերիալիզմը և էմպիրիոկրիտիցիզմը** *և* **Փիլիսոփայական տետրակներ** *կլասիկ երկերում Լենինը զարգացրեց արտացոլման մարքսիստական տեսությունը։ Մի տեսություն, որը կազմում է իրոք գիտական հոգեբանության ու հոգե-նյարդաբանության փիլիսոփայական բազան։*

*Լենինը ցույց է տվել, որ, ի տարբերություն մետաֆիզիկական հին մատերիալիզմի, մարդկային իմացության էության արդի հասկացողությունը հիմնվում է իրականության արտացոլման պրոցեսի ակտիվ բնույթի վրա։*

*Հենց այդ տեսանկյունից պետք է հասկանալ Լենինի հայտնի արտահայտությունը մարդկային գիտակցության մասին, որը ոչ միայն արտացոլում, այլև ստեղծագործում է, այսինքն վերափոխում ու մարդկայնացնում է օբյեկտիվ ռեալ իրականությունը։ Արդի կենսաբանության տվյալները համոզիչ փաստերով ցույց են տալիս, որ նույնիսկ կենդանիները արտաքին աշխարհի օբյեկտներն արտացոլում են ոչ թե պասսիվ հայեցողությամբ, այլ արտաքին ինֆորմացիայի՝ իրենց կենսագործունեության համար առավել էական կոմպոնենտների նպատակասլաց ընտրությամբ ու առանձնացմամբ։*

*Պարզագույն տիպի կենդանիների մոտ արտացոլման այդ բարդ պրոցեսում գերիշխում են վարքի ծրագրավորման արտահայտված բնազդական ձևերը, դրանք տպավորված են ուղեղի ընդկեղևյա և բնային մասերում։*

*Հետագա էվոլյուցիան ողնաշարավոր բարձր տիպի կենդանիների մոտ հանգեցրեց աֆֆերենտային ֆունկցիաների աստիճանական կորտիկալացմանը։ Այստեղ արդեն ակնհայտ գերիշխող դեր են խաղում վարքի ղեկավարման օնտոգենիկ կերպով ձեռք բերված ծրագրերը։*

*Այդ ամենը ծայր աստիճան բարդանում և կատարելագործվում է մարդու մակարդակի ըմբռնողական գործունեության մեջ. մարդու, որը գտնվում է էվոլյուցիայի գագաթնակետին, քանի որ նրա զորեղ զարգացած անալիզատորներով օժտված գլխուղեղը ընկալման ընթացքում ունի արտաքին օբյեկտի պատկերի ամբողջական կառուցվածքի մանրատման (այսինքն վերլուծության) և միավորման (այսինքն սինթեզի), այդ օբյեկտից դուրս նրա պատկերագրծման, գործողությունների ակտիվ ծրագրավորման, վերահսկման ու ղեկավարման հոգե-բնախոսական մեխանիզմներ։*

*Միկրոէլեկտրոդային տեխնիկայի օգնությամբ կատարված գլխուղեղի նեյրոնների նորագույն հետազոտությունները, վիրահատման ժամանակ նեյրովիրաբույժների կատարած փորձառական դիտումները, ուղեղի վնասվածքների պայմաններում հոգեկան կառուցվածքի կլինիկական պատկերի՝ հոգե-*









բույժների ու նեյրոհոգեբանների կատարած վերլուծությունը հնարավորություն են տվել կեղևի անալիզատորներում հայտնաբերելու ստորակարգությամբ դասավորված մի շարք գոտիներ, որոնք էտապ առ էտապ իրականացնում են ակտիվ արտացոլման պրոցեսը։

Լենինը զգացողությունը դիտում էր որպես գիտակցության անմիջական կապն արտաքին աշխարհի հետ, որպես արտաքին գրգռման էներգիայի վերածումը գիտակցության փաստի։ Նա պնդում էր, որ «այլ կերպ, քան զգացողության միջոցով մենք չենք կարող նյութի ոչ մի ձևի, շարժման ոչ մի ձևի մասին որևէ բան իմանալ»։ Լենինի այդ ըմբռնումն առաջացնում է այն միտքը, թե իմացական ակտը ձևավորվում է մի շարք փոխակերպումներով, անցնելով մատերիայի շարժման բոլոր մակարդակների ու ձևերի միջով։

Եվ իրոք՝ մարդկանց ամենօրյա կապերով և ֆիզիկական փոխազդեցություններով է պայմանավորվում դրանցից յուրաքանչյուրի համար առանձնահատուկ ֆիզիոլոգիական, բիոքիմիական ու բիոէլեկտրական պրոցեսների առաջացումը զգայարաններում, որոնք վերջին հաշվով փոխակերպվում են արտաքին առարկայի հոգեկան սուբյեկտիվ պատկերի։ Այստեղ կատարվում է իրականը գաղափարականի, օբյեկտիվը սուբյեկտիվի վերափոխելու բարդ պրոցեսը։

Ինչպես որ օրգանիզմում տեղի ունեցող նյութերի փոխանակման անընդմեջ պրոցեսն ապահովում է նրա գոյությունը, հարմարումն ու զարգացումը, այնպես էլ օբյեկտիվը սուբյեկտիվի և, ընդհակառակը, փոխադարձ անընդհատ ձևափոխման օրինաչափությունն ապահովում և զարգացնում է անձի իմացական ունակությունը կենսական պրակտիկայում։

Դեռևս Ի. Մ. Սեչենովն է ապացուցել արտաքին առարկայի, աչքի ցանցաթաղանթում նրա արտացոլման և մեր գիտակցության մեջ նրա պատկերման օբյեկտիվ նմանությունը։ Նա արդարացիորեն հաստատում էր, որ մենք ոչ թե զգում ենք այն, ինչ տեսողության ժամանակ տեղի է ունենում մեր աչքի մեջ, այլ անմիջականորեն տեսնում ենք արտաքին այն ամենը, ինչ գտնվում է մեզանից դուրս։ Նրա կարծիքով պատկերման այդ օբյեկտիվացումը կարելի է համեմատել առարկայի՝ տափակ հայելիում արտացոլված պատկերի հետ այն տարբերությամբ միայն, որ ֆիզիկական հայելին պատկերները տալիս է իր ետևում, մինչդեռ մեր գիտակցության հայելին դրանք տալիս է իր առջևում։

Շրջապատի երևույթների պատկերները գիտակցության մեջ առաջանում են մարդու ակտիվ գործողությունների պրոցեսում և, իրենց հերթին, դրանք ծառայում են որպես նրա վարքի կարգավորիչներ։ Դրանք կենսաբանական կենսական նշանակություն ունեն միջավայրին մարդու հարմարվելու առումով։ «Մարդը չէր կարող կենսաբանորեն հարմարվել միջավայրին, եթե զգացողությունները նրան չտային այդ միջավայրի օբյեկտիվորեն ճիշտ պատկերացումը»,— նշում է Լենինը, քննադատելով Մախի ռելյատիվիստական հայացքները։

Իդեալիզմի կողմնակիցների՝ մարքսիստական իմացաբանության այդ հիմնական սկզբունքին հակառակ սոփեստական դատողությունները այն են, որ «զգացողությունն ընկալվում է ոչ թե որպես գիտակցության կապն արտաքին աշխարհի հետ, այլ որպես գիտակցությունը արտաքին աշխարհից լրովին անջատող մի անջրպետ, մի պատ»,— ասում է Լենինը։

Մի քանի տարի առաջ Վատիկանի գիտությունների ակադեմիան Հռոմում հրավիրեց «Ուղեղը և գիտակցական փորձը» թեմային նվիրված միջազգային



սիմպոզիում։ Այնտեղ հավաքվեցին Արևմուտքի խոշորագույն գիտնականները՝ հոգեբաններ, նեյրոընախոսներ և մորֆոլոգներ։ Դրանց թվում էին այնպիսի նշանավոր դեմքեր, ինչպիսիք են՝ Էդրիանը, Պենֆիլդը, Էկլզը, Գրանիտը և ուրիշներ։ Իրենց ելույթներում նրանք հաստատում էին, թե գիտակցությունն ուղեղից անկախ առաջնային սուբստանց է և, թե արտաքին աշխարհը երկրորդային է, գիտակցության ածանցյալ և նրանից կախված երևույթ։

Միանգամայն հակասական են մարդկային էության այդպիսի հետազոտողների հայացքներն աշխարհի նկատմամբ։ Մի կողմից, նրանք իրենց նվաճումներով ու հայտնագործություններով առաջ են մղում բնական գիտությունները, իսկ մյուս կողմից՝ կասկածի տակ են առնում և փորձում են ժխտել նյութական աշխարհի առաջնայնությունը և օբյեկտիվ իրականությունը։

Ավելի քան վաթսուն տարի առաջ Վլադիմիր Իլյիչը Մատերիալիզմը և էմպիրիոկրիտիցիզմը գրքում մարքսիստներին խորհուրդ էր տալիս յուրացնել ու վերամշակել բուրժուական գիտնականների գիտական նվաճումները և, դրա հետ մեկտեղ, կարողանալ հետևողականորեն պայքարել նրանց ռեակցիոն միտումների դեմ։

Դա է բուրժուական գիտության էության ներքին հակասականությունը։ Գիտա-տեխնիկական արդի առաջադիմության ճնշման տակ, որը թափանցում է մարդկային կյանքի բոլոր բնագավառները, այդ հակասությունը խիստ սրվում է. բնագիտության բոլոր բնագավառներում կատարված մեծ հայտնագործությունների նոր բովանդակությունը հետզհետե խարխլում ու խորտակում է իդեալիզմի և կրոնական աշխարհայեցողության իր դարն ապրած հին ձևը։

Արդի փիլիսոփայական իդեալիզմն այլևս ի վիճակի չէ հանդես գալու իր իմացաբանական դիրքերի բացահայտ պաշտպանությամբ, թեև նրանում ավելի ու ավելի ուժեղանում են ռեակցիոն նկրտումները։ Գիտության մատերիալիստական բովանդակության հզոր զարգացման ճնշման տակ նա, վախենալով փիլիսոփայությունը գիտությանը հակադրելուց, փիլիսոփայությունը բնագիտությունից լրովին անջատելուց, ձախացած ժողովրդական մասսաներին և գիտության մարդկանց առողջ մտքի հոգեբանությունից ու իրականությունից կտրելուց, ստիպված է քողարկել իր խացինալ ներքին էությունը։

Այդ առթիվ Լենինը գրել է՝ «Գժանոցում կամ իդեալիստ փիլիսոփաների գիտության մեջ չեղած ամեն մի առողջ մարդու պարզամիտ ռեալիզմն այն է, որ իրերը, միջավայրը և աշխարհը գոյություն ունեն անկախ մեր զգացողությունից, մեր գիտակցությունից, անկախ մեր եսից և առհասարակ մարդուց»։

Գիտության մեջ դեռևս հաճախ գոյություն ունեն իրենց դարն ապրած հայացքներ, որոնք արգելակում են առաջադիմության արագացումը։ Հոգեբանության մեջ գոյություն ունի մի տեսակետ, ըստ որի զգայական ոլորտը հոգեկան կառուցվածքի ստորին, պերիֆերիկ բնագավառ է և անձի կազմության նկատմամբ անկարևոր, առնչություն չունեցող մասը։ Դա սխալ է։ Կիբեռնետիկայի և ինֆորմացիայի տեսության բնագավառում ստեղծված նորագույն կոնցեպցիաների շնորհիվ հոգեբանությունը նույնպես հարստացել է նոր բեղմնավոր պատկերացմամբ, որպես զգայական-ընկալական ոլորտի միասնական կազմակերպության կողմից իրականացվող ինֆորմացիոն գործունեության գլխուղեղի աշխատանքի մասին (Բ. Գ. Անանև)։ Հայտնի է, որ ինֆորմացիան դիտվում է որպես ուղեղում տեղի ունեցող արտացոլիչ պրոցեսի բովանդակություն։ Ինֆորմացիայի այդպիսի մեկնաբանությունը գալիս է դեռևս Նորբերտ Վիներից, որը Կիբեռնետիկան և հասարակությունը գրքում ինֆորմացիան բնորոշեց որ-

պես «արտաքին աշխարհին մեր հարմարվելու և մեր զգայարանները հարմարեցնելու պրոցեսում այդ արտաքին աշխարհից ստացված բովանդակության» փաստագրում։

Վերջին տարիների հետազոտությունները ցույց են տվել, որ դրսից և օրգանիզմի ներսից եկող իմացական ինֆորմացիան կարծես անձի հոգևոր սնունդն է, որի խախտումը կամ ընդհատումը կարող է առաջացնել հոգեկան գործունեության խանգարում։ Վերջին տասնամյակում, գիտա-տեխնիկական առաջադիմության արագացման կապակցությամբ, անհրաժեշտություն է առաջացել ուսումնասիրելու մարդու հոգե-բնախոսությունը էկոլոգիական փակ սիստեմներում (տիեզերանավի խցիկը, բատիսկաֆը, Անտարկտիկայի ամենագնաց մեքենաները և այլն)։ Կամավոր կերպով փորձարկման ենթարկվողները տեղակայվում էին հատուկ խցիկներում, որոնք լրիվին մեկուսացված էին արտաքին գրգռիչներից։ Այս ձևով ուսումնասիրվում էր մարդու հոգեվիճակը ինֆորմացիոն քաղցի պայմաններում։ Ամերիկյան և սովետական գիտնականների դիտումները ցույց են տվել, որ հոգեկան առողջ մարդկանց մոտ զգայական մեկուսացման պայմաններում առաջանում էին հալյուցինացիաներ և հոգեկան խանգարման այլ նշաններ։ Մի անգամ ևս հաստատվում են Սեչենովի և Պավլովի գաղափարներն այն մասին, թե գլխուղեղը օրգանիզմի ներքին և արտաքին միջավայրի վիթխարի անալիզատոր է։

Դեռևս անցյալ դարում Սեչենովը, կանխելով կինեմատոգրաֆիայի գաղափարը, մեր հոգևոր կյանքը համեմատում էր հարափոփոխ պատկերներով տեսադաշտում գտնվող մոգական լապտերի հետ։ Իսկ ներկայումս մեր հոգեկան կառուցվածքի ըմբռնողական գործունեությունը կարող ենք համեմատել կոմբինացված տեխնիկական բարդ մի այնպիսի սարքի արտադրանքի հետ, որը միաժամանակ երկու պրոցես ունի՝ կինոնկարահանում և կինոցուցադրում։

Եվ իրոք. մարդու կողմից շրջապատի ընկալումը հիշեցնում է իր կատարելությամբ իդեալական մի կինոֆիլմ՝ պանորամային, լայնաֆորմատ, ստերեոսկոպիկ կերպով պարզորոշ, գունավոր, ստերեոսկոպիկ հնչյունավոր ու հոտավետ, մի խոսքով ռեալ իրականությունը շարժման մեջ ողջ հարստությամբ պատկերող կինոֆիլմ։ Այդ «ֆիլմի» շրջանակներն անհետանում են և առաջ է գալիս «ներկայության էֆեկտը», որպես իրադարձությունների անմիջական մասնակից հանդիսատեսի։

Դրսից եկող մեր ընկալումների պրոցեսում միաժամանակ արտացոլվում են նաև մարդու ներքին մարմնական աշխարհից ծագող իմպուլսները. նրանք նպաստում են ինքն իրեն ընկալելու զգայության, այսինքն սեփական եսի գիտակցության առաջացմանը։ Եվ սեփական եսի զգացումը ուղեկցում է արտաքին երևույթների մեր ամեն մի ընկալմանը, նպաստում այն ամենի իմացական տարբերմանը, ինչ տեղի է ունենում մեր շուրջը, մեր մարմնի ներսում և մեր գիտակցության ոլորտում։

Արտացոլման տեսությունը մշակելիս Վլադիմիր Իլյիչն առաջին անգամ ընդգծեց արտացոլման համընդհանուր բնույթը և տվեց այն գաղափարի բանաձևումը, թե մատերիայի բուն հիմքում էլ գոյություն ունի զգացողությանը հիշեցնող ունակություն, այսինքն՝ արտացոլման ունակություն։ Եվ այդ հատկությունը, որը Լենինը համարում էր համընդհանուր, ներկայումս ավելի ու ավելի ապացուցվում է տեսականորեն և փորձնականորեն։

Վերջին տարիներս ուղեղի գործունեության պատկերացման զարգացման զորեղ խթան եղավ կիբեռնետիկան։ Պարզվեց, որ ուղեղն ընդունակ է ո՛չ միայն



կուտակելու և վերամշակելու ինֆորմացիան, այլև նախօրոք առաջադրված, կարծես նյարդային բջիջներում «գրի առնված» ծրագրին համապատասխան ուղղություն տալու մարդու վարքին։

Կիբեռնետիկայի և արտացոլման տեսության հաջողությունների կապակցությամբ արտացոլման սկզբունքը հետագա զարգացման հնարավորություն ստացավ։ Անձի վարքի ծրագրում սահմանվել է ինչպես գենետիկական, այնպես էլ անձի կյանքի օրոք ստացվող ինֆորմացիայի առկայությունը։ Վճռական նշանակություն ունի վարքի ձևը բերովի ծրագրի տիպը։ Իր բոլոր կետերում վարքի ծրագիրը պետք է հաշվի առնի օրգանիզմի կյանքի արտաքին ու ներքին պայմանների առանձնահատկությունները։ Առկա օբյեկտիվ իրադրության հետ սեփական վարքի ներքին կապի խախտումն անխուսափելիորեն հանգեցնում է արտաքին միջավայրում համարժեք կողմնորոշման կորստին։

Դիալեկտիկական մատերիալիզմը նախանշում է նյարդային և հոգեկան պրոցեսների, պատկերի և օբյեկտիվ առարկայի, պատկերի և առարկայական գործունեության միջև եղած հարաբերությունների հետազոտման փիլիսոփայական ընդհանուր ուղին։ Հոգե-բնախոսության առջև ներկայումս ծառացել և իրենց գիտական լուծմանն են սպասում խիստ բարդ այդ խնդիրները։

Հոգեկան ֆունկցիաները ներկայումս դառնում են ո՛չ միայն բնական-գիտական վերլուծության, այլև տեխնիկական մոդելացման ու ինժեներական պրակտիկայի օբյեկտ։ Դրա հետ մեկտեղ հոգե-բնախոսությունն ավելի ու ավելի մեծ չափով է դառնում հիմնարար ուղղություններից մեկը մարդու վերաբերյալ գիտությունների ընդհանուր կոմպլեքսում։

Արտացոլիչ գործունեության մակարդակները չեն սահմանափակվում զգայական իմացության պրոցեսներով։ Փիլիսոփայական տետրակներում Լենինը նշել է արտացոլման պրոցեսի մակարդակները՝ «կենդանի հայեցողությունից դեպի աբստրակտ մտածողություն և նրանից դեպի պրակտիկա,— այս է «օբյեկտիվ իրականության իմացության դիալեկտիկական ուղին»։

Արտացոլվող իմացական ինֆորմացիայի բովանդակությունը առարկայական և բանավոր պատկերների, պատկերացումների, հասկացողությունների և տրամաբանական կատեգորիաների ձևով տպավորվում և վերարտադրվում է մեր հիշողության մեջ։ Դեռ Պավլովի արտահայտած այն միտքը, թե ժամանակավոր պայմանական կապերի գոյացման մեխանիզմների պարզումը չի սահմանափակվի բնախոսության մակարդակով, այլ կհասնի մինչև բիոքիմիական վերլուծության խորքերը, ներկայումս բացահայտվում է որպես հիշողության նյութական սուբստրատ ռիբոնուկլեինաթթվի (ռնթ) դերի մեկնում։ Որպես հիշողության ինտիմ մեխանիզմ ուղեղում արտաքին ինֆորմացիայի սևեռման համար ռիբոնուկլեինաթթվի նշանակության վերաբերյալ այդ հիպոթեզն ուսումնասիրվում է աշխարհի շատ լաբորատորիաներում։

Հոգեկան ոլորտի ընդհանրացված կերպարներն արտացոլիչ պրոցեսի իրենց դրսևորման բարձրագույն ձևում՝ տեսական մտածողության մեջ, ձերբազատվում են տեսողական, լսողական, շոշափողական, զգայական-առարկայական կախվածությունից։ Սակայն մտածողական-տրամաբանական մակարդակը ամենևին էլ չի կտրվում զգայական-առարկայական մակարդակից։ Գիտակցության այդ երկու մակարդակների միջև գոյություն ունի ներքին օրգանական հաղորդակցություն։

Վլադիմիր Իլյիչը մեծ նշանակություն էր տալիս իրականությունը վերափոխելու ուժով օժտված աբստրակտ մտածողությանը, քանի որ գիտական բո-

լոր աբստրակցիաները բնությունն արտացոլում են ավելի խոր, ավելի ճիշտ, ավելի լրիվ։ Աբստրակցիան տեսական հիմնարար գիտությունների նվաճումների զորեղ արագացուցիչ է, քանի որ համընդհանուր հասկացողություններն իրենց մեջ ընդգրկում են առանձնահատուկի, անհատականի, զգայական-առարկայական ողջ կոնկրետ հարստությունը։ Թե ինչպիսի նշանակություն էր տալիս Լենինը մարդու մտածողությանը, երևում է նրա հետևյալ արտահայտությունից. «Պատկերացումը չի կարող ըմբռնել շարժումն ամբողջությամբ վերցրած, օրինակ, այն չի ըմբռնում լույսի շարժումը մի վայրկյանում 300.000 կիլոմետր արագությամբ, իսկ մտածողությունն ըմբռնում է և պետք է ըմբռնի»։

Մտքի ու գիտակցության ստեղծագործական բնույթի վերաբերյալ Լենինի խոսքերը հնչում են որպես հիմն Մարդու Մտքի հզորության. Մարդու, որը լինելով բնության և հասարակական հարաբերությունների ծնունդ, ինքը (իր նմանների կոլեկտիվում) ստեղծում է պայմաններ, որոնք նպաստում են բնության և հասարակության ազատ վերափոխմանը։

Մարդկային մտքի՝ առանց նյութական աշխարհի օբյեկտների հետ անմիջական շփման ընթանալու ունակությունն ստեղծում է մտքի՝ բոլոր արգելքները հաղթահարելու ունակ բացարձակ ազատության պատրանք։ Այստեղ բարենպաստ հող է ստեղծվում երազանք ու ֆանտազիա ծնող երևակայության հարստության զարգացման համար, որը խիստ նպաստում է անձի նորարարական գործունեությանը գիտության և արվեստի բնագավառում։ Ֆանտազիայի այդ ձիրքը մեծագույն արժեք ներկայացնող երևույթ է,— գրել է Լենինը։ «Իզուր են կարծում, թե ֆանտազիան հարկավոր է միայն բանաստեղծին։ Նույնիսկ մաթեմատիկայում հարկավոր է այն, առանց ֆանտազիայի անհնար կլիներ նույնիսկ դիֆերենցիալ, ինտեգրալ հաշվի հայտնագործումը»։

Վլադիմիր Իլյիչը շատ մեծ նշանակություն էր տալիս մարդու պրակտիկ գործունեությանը։ Անձի գիտակցության սուբյեկտիվ գործունեությունն անխուսափելիորեն ավարտվում է օբյեկտիվացմամբ, այսինքն՝ շրջապատի գործուն վերափոխմանն ուղղված պրակտիկ աշխատանքի վերածմամբ։

Իր գործողություններում մարդը նախ և առաջ սովորում է տիրապետել սեփական մարմնական ֆունկցիաներին, այսինքն՝ նպատակահարմար ձևով ղեկավարել իր մարմինը։ Մարմնի շարժումների ղեկավարման պրոցեսում մարդու դեմքի մկանների միմիկական խաղի արտահայտությունը, մարմնի կեցվածքը, քայլվածքը, շարժուձևը, խոսելու տոնը և ձեռքերի շարժումները դրսևորվում են հոգեկան կնիքով։

Նախ և առաջ մարդը սովորում է ղեկավարել վերջավորությունների և ամբողջ մարմնի մկանային շարժումները։ Այդ բնագավառում նա կատարելության է հասնում։ Աշխատանքի պրոցեսում անձն իրականացնում է իր գիտակցական նպատակները՝ նախագծում և կառուցում է տիեզերքն ու նյութի տարրական մասնիկները հետազոտող ապարատները, հորինում է իր ուղեղին նմանվող մեքենաներ և իրեն տիեզերք տանող նավեր։

Արվեստի անգերազանց ստեղծագործություններում նա վարակվում է վեհ ու բարձր հույզերով և շնչավորում է անկենդան բնությունը։ Միքելանջելոն իր հուշերում նկարագրում է, թե ինչպես ինքը մարմարի տձև բեկորում տեսնելով արձանի իդեալական կերպարը, նետվում է այդ բեկորի վրա և իր ստեղծագործությունն ազատում մնացյալ քարի ավելորդ կտորներից։

Արվեստի ստեղծագործական հանճարով ստեղծված Բեթհովենի երաժըշ-



տությունը մեր մեջ առաջացնում, ոգեշնչում և պաշտպանում է վսեմ զգացմունքներ հանուն արդարության, բարու և ճշմարտության մղվող պայքարում։

Լենինը նշել է, որ սոցիալական երևույթների գնահատումն իր մեջ անխուսափելիորեն պարունակում է էմոցիոնալ վերաբերմունք իրականության նկատմամբ։ Էմոցիոնալ վերաբերմունքը օբյեկտիվ իմացականությանը խորթ ինչ-որ մի բան չէ։ «Առանց մարդկային զգացմունքների,— գրել է նա,— երբեք չի եղել, չկա և չի կարող լինել ճշմարտության մարդկային որոնում»։

Անձի ամենօրյա կյանքում առավել կարևոր են բանականության և զգացմունքի փոխհարաբերությունները։ Մարդկային արարքների այդ երկու զորեղ շարժիչները մշտապես դրսևորվում են մերթ ներքին ներդաշնակությամբ ու միասնությամբ, մերթ՝ սուր հակասություններով ու բախումներով։

Եթե մեր զերզգայնությունը, կրքերն ու հակումները չեն համապատասխանում գիտակցության ճանաչողական բովանդակությանը և հակառակ են մարդու հիմնական անձնական շահերին ու խելամիտ-սոցիալական նպատակայացությանը, ապա առաջանում են սուր հակասություն, հոգեբանական կոնֆլիկտ, որոնց վերջը կարող է ողբերգական լինել։ Ընդամին կարող է սնփական անզուսպ պահանջներին ու հակումներին՝ սեքսին, ալկոհոլին, թմրադեղերին, ստրուկ դառնալու ռեալ հնարավորություն ու վտանգ առաջանալ։

Օնորե Բալզակն իր վեպերում գեղարվեստորեն, պատկերավոր ստեղծել է կրքերով համակված նման տիպի մարդկանց։ Այսպես, Շագրենի կաշին վեպում հեղինակի մտահղացմամբ նրա երիտասարդ հերոսն ստանում է կենսական սուր հաճույքներին մասնակցելու մոգական հնարավորություն։ Ոտքից գլուխ ընկղմվելով արատավոր և անզուսպ հաճույքների ճահիճը, նա արագ մոտենում է իր կործանմանը, որի մասին ինքը կանխապես նախազգուշացված էր։

Վարքի խելամիտ բարձրագույն կարգավորման ոլորտում դրսևորված թուլությունը հաճախ հանգեցնում է գեղոնիստական, կատատիմային ապրելակերպի, որի նշանաբանը կարող է լինել հռոմեացի բանաստեղծ Օվիդիոս Նասոնի դիպուկ արտահայտությունը՝ «տեսնում և հավանություն եմ տալիս լավին, բայց հետևում եմ վատին»։

Սակայն, մարդկության համար բարեբախտաբար նորմալ առողջ անձը միշտ էլ ռեալ հնարավորություն ունի գիտակցության խելամիտ բարոյական իմացական բովանդակությանը համապատասխանեցնել իր հույզերը, աֆեկտներն ու կրքերը։ Այս դեպքում մեր զգացմունքներն ու կրքերը կդառնան զորեղ ազդակներ, ակտիվության, կայունության և եռանդի աղբյուր, որը կնպաստի անձի հետագա բանական ստեղծագործական զարգացմանը։

Մանկավարժական այդ կարևորագույն պրոբլեմի լուծումը հնարավորություն է տալիս ապագայում անձի ճիշտ դաստիարակության միջոցով հաղթահարելու մարդկանց հոգեբանության մեջ եղած բազմաթիվ ստվերոտ կողմերը։ Ջենք սխալվի, եթե ասենք, որ դարի բարոյա-էթիկական մարդասիրական այդ խնդիրների իրականացման երաշխիքն է մեր հասարակարգի առաջադիմության մեջ սուբյեկտիվ գիտակցական գործոնի դերի հարաճուն բարձրացումը։

Այստեղ ես ուզում եմ հիշատակել Մաքսիմ Գորկու խոսքերը նրա Մարդը փիլիսոփայական պոեմից։ «Կգա մի օր, երբ իմ կրծքում մեծ ու ստեղծագործական մի բոցի մեջ կմիաձուլվեն զգացմունքիս աշխարհը և իմ անմահ Միտքը, և այդ բոցով ես այրելով կոչնչացնեմ հոգումս եղած այն ամենը, ինչ խավար է, դաժան է ու չար, և կնմանվեմ աստվածներին, որոնց հորինել և հորինում է իմ Միտքը»։

Հասարակության պատմության մեջ, նրա սոցիալ-տնտեսական առանձին ֆորմացիաներում, որտեղ իշխում էր մասնավոր սեփականության սկզբունքը, դրվել են անձի գիտակցության ու վարքի ինչպես անհատապաշտական, այնպես էլ կոլեկտիվիստական ձևերի հիմքերը:

Ժամանակակից հասարակության մեջ այդ երկու ձևերն էլ գոյություն ունեն: Սոցիալիստական հասարակարգում այդ ձևերից առաջինը վերածվում է երկրորդի: Գիտակցության ու վարքի անհատապաշտական-եսակենտրոն ձևը հակասում է սոցիալիստական հասարակության կոլեկտիվների շահերին և դառնում է անբարոյական-ոճրագործ վարքի դրսևորումների աղբյուր:

Իսկ կոլեկտիվիստական ձևի գիտակցությամբ և վարքով օժտված անձի շահերն ու ձգտումները, որոնք համընկնում են ամբողջությամբ վերցրած սոցիալիստական հասարակության շահերին, անձին հասցնում են իր զարգացման ամենաբարձր աստիճանին: Բանական-էթիկական բնույթ է ընդունում նրա գիտակցության իմացական գործունեությունը: Եվ այդ դեպքում, հաղթահարելով զոոլոգիական անհատապաշտության տարրերը և քաղքենիական ապրելակերպը, մարդկային անձը դառնում է հասարակության բուն ստեղծողն ու իսկական տերը:

Կոլեկտիվը և այն գործունեությունը, որին իր անձն է նվիրաբերել անհատը, արդեն անբաժանելի է համարում իրենից: Ե՛վ սեփական երկիրն է հարազատ, և՛ աշխատավոր համայն մարդկության շահերն են հարազատ: Նրա անձնական շահերն ու ձգտումները լիովին ներդաշնակում են ընդհանուրի, կոլեկտիվի շահերին: Իհարկե, այստեղ խոսքը իսկական (բառի բուն իմաստով իսկական) մարդու մասին է, Լենինի գաղափարների իսկական հետևորդի և լուսավոր ապագայի համար մարտնչողի մասին:

Լենինի երկերում մենք գտնում ենք անձի անհատական բնավորության էության մեջ խորամուխ լինելու և դրա հիման վրա մարդու հետագա վարքագիծը կանխատեսելու իրենց ճշմարտությամբ զարմանալի ու ապշեցուցիչ նմուշներ:

Արարքների վերլուծությունից դեպի նրանց սինթեզն անձի բնավորության հոգեբանական կերպարի մեջ և հասկանալի բնավորությունից արդեն դեպի սպասվող արարքները— այս է Վլադիմիր Իլյիչի բնութագիտական դիտողությունների դիալեկտիկան (Պետրովսկի):

Լենինը իր աշխատություններում թողել է հոգեբանական դիպուկ մի շարք բնութագրումներ՝ շաղակրատների, որոնց նկատմամբ անողոք էր նա, մանիլովյան տիպի ֆանտազյորների, կարիերիստների, որոնք լիովին գաղափարազուրկ, անազնիվ են: Նրան վրդովմունք էր պատճառում բնավորության այնպիսի գիծը, ինչպիսին է ծուլությունը. Նրա երկերում հաճախ ենք կարդում «Օբլոմով» և «օբլոմովականություն» բառերը:

Մտքի լենինյան խորաթափանցությունը, Լենինի դիտումների ճշտությունը, մարդկանց շահերի, պահանջների, նվիրական ցանկությունների ըմբռնումը, ժողովրդի հոգևոր կյանքի խորքերին օրինակելի մոտեցման մի նմուշ է: Այդ կապակցությամբ առանձնապես կարևոր ու արժեքավոր են Վլադիմիր Իլյիչի ցուցումները. «Ապրել ժողովրդին մոտիկ: Գիտենալ մարդկանց տրամադրությունները: Գիտենալ ամեն ինչի մասին: Հասկանալ մասսային: Կարողանալ նրան մոտենալ: Նվաճել նրա բացարձակ վստահությունը»:

Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

# ԱՐԴԻ ԿԵՆՍԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՄԵԹՈԴՈԼՈԳԻԱԿԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Վերջին ժամանակներս պարբերական մամուլում, ամսագրերում և մենագրություններում հաճախ է նշվում, որ ժամանակակից կենսաբանությունը դարձել է բնության ճանաչողության ամենաբուռն զարգացող գիտություններից մեկը, որ այն դառնում է արդի բնագիտության «առաջնորդը»՝ անցնելով նույնիսկ միջուկային ֆիզիկայից: Այս պնդումները ռոմանտիկ ոգևորության կամ սիրած գիտությունը գովերգելու արդյունք չեն, այլ արտացոլում են օբյեկտիվ իրականությունը: Ժամանակակից կենսաբանությունը, իրոք, թևակոխել է մեծագույն որակական փոփոխությունների մի շրջան, որը նոր մակարդակի է բարձրացնում այդ գիտությունը:

Կենսաբանության զարգացման նոր փուլի ամենաբնորոշ առանձնահատկությունն այն է, որ հետազոտության մեթոդներով և ստացված արդյունքների հավաստիությամբ այն ընդհուպ մոտեցել է ճշգրիտ գիտությունների մակարդակին: Ուստի, պատահական չէ, որ կենսաբանության նորագույն հայտնագործությունները իրենց գիտական նշանակությամբ դասվում են միջուկային ֆիզիկայի, քվանտային մեխանիկայի, կիբեռնետիկայի և այլ ճշգրիտ գիտությունների բնագավառում ձեռք բերված նվաճումների շարքը:

Կենսաբանության մեջ տեղի ունեցող արմատական, բառիս բուն իմաստով, հեղափոխիչ տեղաշարժերն արդյունք են այն բանի, որ հետազոտություններն արդեն թափանցել են կյանքի ամենաինտիմ պրոցեսների ընդերքը և տարվում են մոլեկուլյար, անգամ ենթամոլեկուլյար մակարդակով, կոմպլեքսային մեթոդներով— ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի, կիբեռնետիկայի և այլ հարակից գիտությունների հետ համագործակցած, ժամանակակից ամենաճշգրիտ գիտական սարքերի օգնությամբ: Այսպիսով, դասական կենսաբանության հետազոտության մեթոդներն անասելի չափերով հարստացան, կատարելագործվեցին և նոր որակ ձեռք բերին շնորհիվ այն բանի, որ ժամանակակից ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի ու տեխնիկայի նվաճումները լայնորեն օգտագործվեցին ողջի քիմիայի և ֆիզիկայի՝ կյանքի ամենանուրբ պրոցեսների օբյեկտիվ ուսումնասիրության համար: Այս ամենի արդյունքը եղավ այն, որ առաջացավ մոլեկուլյար կենսաբանությունը, որն, իր հերթին, դարձավ ժառանգականության նյութական հիմունքների բացահայտման բանալին:

Դեռ 1944 թ. կատարվեց չափազանց կարևոր մի հայտնագործություն. քիմիական անալիզների միջոցով պարզվեց, որ բջջի կորիզում գտնվող քրոմոսոմները պարունակում են սպեցիֆիկ մի նյութ՝ դեզօքսիռիբոնուկլեինաթթու (ԴՆԹ), որն իր չորս ազոտային հիմքերի՝ տիմինի, ցիտոզինի, գուանինի ու ադենինի շնորհիվ ժառանգականության նյութական կրողն է: Այսպիսով պայմանականորեն օգտագործվող «գեն» հասկացությունը նյութական հիմք ստացավ: Այս հայտնագործությունը ո՛չ միայն մեր օրերի խոշորագույն նվաճումն էր կենսաբանության, մասնավորապես գենետիկայի և բջջաբանության բնագավառում, այլև աչքի ընկնող իրադարձություն բնագիտության պատմության մեջ: Ճիշտ է, ԴՆԹ-ի նշանակությունը՝ որպես ժառանգակիր նյութի,

էքսպերիմենտալ ճանապարհով հաստատված է հիմնականում միաբջիջ կենդանիների՝ վիրուսների և բակտերիաների վրա կատարված փորձերով, բայց բոլոր հիմքերը կան պնդելու, թե ժառանգականության նյութական հիմունքների սկզբունքը, որն արտահայտվում է մոլեկուլյար գենետիկական գաղտնագրի (կոդի) ձևով, փիքսում է ձևերի պատմությունը, իր մեջ կրում ապագայի հնարավորությունը, հանդիսանում համընդհանուր սկզբունք և ընդգրկում ողջ օրգանական աշխարհը՝ սկսած վիրուսներից, վերջացրած մարդկանցով: Բայց կան նաև այնպիսի կենսաբաններ, բիոքիմիկոսներ, որոնց կարծիքով չափազանցվում է նուկլեինաթթուների նշանակությունը «կյանքի գաղտնիքը» բացահայտելու գործում, դրանց վերագրելով բացառիկ դեր (այդ կարծիքին է, օրինակ, ամերիկացի բիոքիմիկոս Էրվին Չարգաֆը):

Այստեղ զարմանալի ոչինչ չկա, քանի որ հակասական տեսակետների և հիպոթեզների առկայությունը, դրանց բախումը և օբյեկտիվ, անկաշկանդ քննարկումը ստեղծագործական նորմալ մթնոլորտում, գիտության զարգացման գլխավոր պայմաններից մեկն է: Պետք է նկատի ունենալ, սակայն, որ ժամանակակից կենսաբանության ոլորտում տարբեր ուղղությունների պայքարը պայմանավորված է ինչպես օբյեկտիվ, այնպես էլ սուբյեկտիվ պատճառներով: Օբյեկտիվ պատճառներից են, ամենից առաջ, այնպիսիները, որոնք անհրաժեշտորեն բխում են տվյալ գիտության զարգացման ներքին բնույթից, նրա տրամաբանությունից, որպես նոր գաղափարների ու պատկերացումների առաջացման անխուսափելի արդյունք: Այդպիսի պայքարն ամեն մի գիտության զարգացման անհրաժեշտ պայմանն է, քանի որ այն կապված է գիտական իմացության նոր ուղիներ փնտրելու հետ և գիտության պրոգրեսիվ զարգացման հզոր գործոն է, նրա առաջընթացի ներքին օրինաչափություններից մեկը:

Բայց, դժբախտաբար, երբեմն կենսաբանության բնագավառում տարբեր ուղղությունների միջև պայքարը հրահրվում է արհեստականորեն և կրում սուբյեկտիվ բնույթ, որը ո՛չ միայն չի նպաստում գիտության զարգացմանը, այլև արգելակում է դրա առաջընթացը: Պետք է ասել, որ հենց այդ սուբյեկտիվ պատճառներն էին, որ վերջին տասնամյակների ընթացքում մեզ մոտ ստեղծեցին աննորմալ իրադրություն կենսաբանության, մասնավորապես նրա այնպիսի կարևոր ճյուղերի զարգացման համար, ինչպիսիք են՝ գենետիկան և մոլեկուլյար բիոլոգիան: Այդպիսի իրավիճակի առաջացումը անձի պաշտամունքի դրսևորման ձևերից մեկն էր գիտության բնագավառում, որի հետևանքով կենսաբանների մի մասի դրույթները համարվում էին անքննադատելի, նրանք ունեին մենաշնորհի իրավունք:

Այդ աննորմալ մթնոլորտը խիստ բացասաբար անդրադարձավ մեր երկրում կենսաբանական գիտությունների, մասնավորապես գենետիկայի զարգացման վրա: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերյան պլենումը (1964 թ.) վերջ դրեց դոգմատիզմին և վոլյունտարիզմին, նորմալ պայմաններ ստեղծվեցին նաև կենսաբանության նոր ուղղությունների, մասնավորապես ժամանակակից մոլեկուլյար գենետիկայի զարգացման, գիտական տարբեր կոնցեպցիաների ազատ քննարկման համար: Բայց, պետք է նկատի ունենալ, որ կենսաբանությունը, որպես բնական գիտություն, ունի իր մի շարք սպեցիֆիկ առանձնահատկությունները: Անհրաժեշտ է հատկապես ընդգծել, որ կենսաբանական տեսությունները սերտորեն առնչվում են հասարակական կյանքի հետ: Դեռ Մարքսը և Էնգելսն են նշել, որ կենսաբանությունը գիտական սոցիալիզմի նախապայմաններից մեկն է: Ո՞վ կարող է տարակուսել, որ **ի՞նչ է կյանքը** հարցը (կենսաբանական առումով) հուզում է ամենքին: Կենսաբանության պատմությունը վերին աստիճանի ուսանելի է նաև այն տեսակետից, որ հնարավորություն է ընձեռում՝ ընկալելու գիտությունը որպես հասարակական պայմանների արգասիք: Վերջապես, շատ լայն է կենսաբանության մեթոդոլոգիական, փիլիսոփայական ասպեկտը:

Արդի կենսաբանության հանգուցային պրոբլեմների սկզբունքային լուծման հասարակական նշանակությունը բացառիկ կարևորություն է ձեռք բերում շնորհիվ այն բանի, որ դրանք սերտորեն կապված են փիլիսոփայական ընդհանուր աշխարհայեցողական և մեթոդոլոգիական պրոբլեմների հետ, որոնք ունեն ո՛չ միայն հատուկ՝ նեղ մասնագիտական, այլև տարբեր սոցիալ-գաղափարական տեսանկյուններ: Հետևապես, ժամանակակից կենսաբանության մեթոդոլոգիական պրոբլեմների մշակումը և լուսաբանումն անհրաժեշտ են ո՛չ միայն գիտական հետազոտությունների առաջադիմության, այլև հասարակական կարծիքի ճիշտ կողմնորոշման համար:

Որո՞նք են արդի կենսաբանության մեթոդոլոգիական՝ փիլիսոփայական հիմնական պրոբլեմները:

Համընդհանուր է այն տեսակետը, որ արդի կենսաբանության մեթոդոլոգիական կարևոր պրոբլեմների շարքում, որոնց լուծման համար անհրաժեշտ է դիալեկտիկական մեթոդի կիրառումը, առաջնայինը **կյանքի էությունն** է, նրա որակական առանձնահատկությունը, սպեցիֆիկան և ֆիզիկո-քիմիական հիմունքների պրոբլեմը, որի լուծումը հանգուցային է, քանի



որ այդ հարցի մեջ են, վերջին հաշվով ինտեգրացվում կենսաբանության և, առհասարակ, բնական գիտությունների տարբեր ճյուղերի ողջ կոմպլեքսի հետազոտությունների արդյունքները:

Բայց կան նաև ավելի կոնկրետ հարցեր, որոնք նույնպես պահանջում են վերլուծում, պարզաբանում և ճիշտ կողմնորոշում՝ մատերիալիստական դիալեկտիկայի դիրքերից: Դրանցից են, օրինակ, «ժառանգական նյութի» գոյության, այսպես կոչված՝ կլասիկ և ժամանակակից կենսաբանության հետազոտության մեթոդների օբյեկտիվ գնահատման, դրանց փոխհարաբերության, համամասնության և կոորդինացման, կենդանի սիստեմների արտաքին ու ներքին փոխներգործության բնույթի կենսաբանական պրոցեսների դետերմինավորվածության սպեցիֆիկ հարցերը, հիպոթեզի դերի հարցը կենսաբանական հետազոտություններում, ձեռքբերովի հատկանիշների ժառանգման պրոբլեմը և այլն: Համառոտակի անդրադառնանք դրանցից մի քանիսին:

### 1. «ԺԱՌԱՆԳԱԿԱՆ ՆՅՈՒԹԻ» (գենի) ԳՈՅՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՅԱՆՔԻ ԷՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ:

Գոյություն ունի՞ «ժառանգական նյութ», թե՞ ոչ. այս հարցը վիճաբանության առարկա էր դեռ անցյալ դարի վերջերից: Որոշ կենսաբաններ այն կարծիքին են, որ ժառանգականությունը կենդանի մարմնի հատկությունն է՝ ամբողջությամբ վերցրած, որ նրա յուրաքանչյուր մասնիկ ժառանգականության կրող է և, հետևապես, օրգանիզմում չկա ինչ-որ հատուկ նյութ, որը կատարի ժառանգականության կրողի սպեցիֆիկ ֆունկցիա: Բայց վերջին տասնամյակի հետազոտությունների արդյունքների հիման վրա կենսաբանների մեծ մասը համարում է ապացուցված, որ բջիջը պարունակում է հատուկ ժառանգակիր նյութեր, որոնք կատարում են գենետիկական ֆունկցիա կրողի դեր: Դրանք բջջի կորիզում գտնվող քրոմոսոմների պարունակած դեզօքսիռիբոնուկլեինային (ԴՆԹ) և ռիբոնուկլեինային (ՌՆԹ) թթուների պոլիմերիզացված մոլեկուլներն են:

Քրոմոսոմները պարունակում են նաև երկու տիպի սպիտակուցներ՝ թթվային և հիմնային: Մոլեկուլյար և սուբմոլեկուլյար մակարդակով կատարվող հետազոտություններից պարզվեց, որ ԴՆԹ-ն ունի քիմիական բարդ կառուցվածք, գտնվում է բջջի կորիզում և կրում իր մեջ օրգանիզմի ժառանգական ինֆորմացիան (գաղտնագիրը): Ի տարբերություն ԴՆԹ-ի, ՌՆԹ-ն գտնվում է ինչպես կորիզի, այնպես էլ ցիտոպլազմայի մեջ: Ինչպես նշվեց վերևում, ԴՆԹ-ի հիմնական բաղադրիչ մասերից են չորս ազոտական հիմքերը՝ ադենինը, գուանինը (պուրիններ), տիմինը և ցիտոզինը (պիրիմիդներ):

Միաժամանակ պարզված է, թե ո՛րն է կորիզի կապող օղակը, որտեղ պահպանվում է ժառանգականության ինֆորմացիան: Այդ կապող շղթան՝ միջնորդը, հատուկ ՌՆԹ-ն է, որը կոչվում է ինֆորմացիոն ՌՆԹ, և որի միջոցով փոխանցվում է ժառանգական ինֆորմացիան. այլ կերպ ասած՝ ծնողների ժառանգական հատկությունները հաղորդվում են սերունդներին: Բայց, պետք է նկատի ունենալ, որ ԴՆԹ-ի մոլեկուլում ներփակված ժառանգական ինֆորմացիան կրում է միայն զարգացման հնարավորությունները, որոնց իրականացումը բջջի մեջ պահանջում է մի շարք բարդ պրոցեսներ և, առաջին հերթին՝ սպիտակուցների սինթեզ:

Չպետք է մոռանալ, որ բջիջը կյանքի հիմնական միավորն է: Ֆ. Էնգելսը գրել է, որ բջջի հայտնագործումը XIX դարի կեսերին հանդիսացավ երեք մեծագույն հայտնագործություններից մեկը, որոնք ցույց տվեցին աշխարհի կապերի, միասնության ու զարգացման ողջ նշանակությունը:

Այս հարցը դիտելով փիլիսոփայական տեսանկյունից, պետք է ընդգծել, որ օրգանական ամբողջականության փաստը դեռ հիմք չի տալիս ժխտելու սպեցիֆիկ ժառանգակիր նյութի առկայությունն օրգանիզմում, քանի որ ողջի օրգանական ամբողջականությունը և նրա մասնագիտացված մասերի ու տարրերի առանձնացումը հանդես են գալիս դիալեկտիկական միասնության մեջ: Հետևաբար ոչ փաստական և ոչ էլ տրամաբանական որևէ հիմք չկա ժխտելու օրգանիզմում դիսկրետ, մասնագիտացված միավորների և սպեցիֆիկ ժառանգակիր նյութի առկայության հնարավորությունը՝ գենի, ցիստրոնի կամ այլ մասնագիտացված սուբստրատի ձևով: Գենի մասին հին. տեսության հիմնական մեթոդոլոգիական արատը մեխանիզմն էր, որն արտահայտվում էր գենի անբաժանելիության գաղափարի, այն պատկերացման մեջ, թե **գենոտիպը** գեների մոզաիկան է, իսկ **ֆենոտիպը**՝ հատկանիշների: Գենը դիտվում էր օրգանիզմում տեղի ունեցող նյութափոխանակության պրոցեսներից կտրըված և արտաքին միջավայրի գործոններից անկախ, որը հող պատրաստեց ավտոգենեզի և արտաքինի ու ներքինի դիալեկտիկական կապերի անտեսման համար: Անցյալի այդ սխալները հիմնականում հաղթահարված են. ներկայումս իր ողջ հասակով ծառանում է արտաքինի ու ներքինի պրոբլեմը ժառանգականության երևույթների իմացության, զարգացման տեսության սկզբունքների դիալեկտիկամատերիալիստական ընդհանուր մշակման համար:

Եթե «գեն» տերմինը Իոգանսենի կողմից գրականության մեջ էր մտցվել անկախ նրա բնույթի մասին որևէ հիպոթեզի, լոկ որպես Գուգո Դե Ֆրիսի «պանգեն» տերմինի կրճատված ձև, ապա այդ հասկացության էությունը արմատապես փոխվեց գենետիկական պրոցեսների բնույթի գիտակցական իմացության խորացման շնորհիվ: Ներկայումս գենետիկների մեծ մասն արդեն ընդունում է գենի ռեալ գոյությունը: Գեները,— ըստ ժամանակակից առավել տարածված պատկերացումների,— նուկլեինաթթվի (ամենից հաճախ ԴՆԹ-ի) մակրոմոլեկուլի դիսկրետ մասերն են, որոնք օժտված են ինքնավերարտադրման հատկությամբ, բայց բացարձակ անբաժանելի միավորներ չեն: Հետազոտությունները ցույց տվին, որ գենը նույնպես ներքնապես մասնատվում է, իսկ միկրոօրգանիզմների վրա կատարված փորձերում ուղղակի բացահայտվեց գենի բաժանելիությունը: Բազմապիսի ու բազմատեսակ գենետիկական ինֆորմացիայի գրանցման մեջ հետազոտողները հանդիպում են զարմանալիորեն փոքրաթիվ ելակետային տարրերի՝ ազոտական հիմքերի, որոնք գենետիկական գաղտնագրի մեջ ծառայում են որպես տառեր: Վիրուսներից մինչև մարդը մենք ոչ մի այլ բանի չենք հանդիպում, բացի նույն չորս տառերի տարբեր փոխդասավորումից— երկու պիրիմիդների՝ ցիտոզինի (Ց) և տիմինի (Տ) և երկու պուրինների՝ ադենի (Ա) և գուանինի (Գ): Այսպիսով ժառանգականության երևույթների մեջ, իջնելով մոլեկուլային և ատոմային մակարդակի, մենք համոզվում ենք, թե փոքրաթիվ միատեսակ մասերի միջև որքան մեծ է քանակական հարաբերությունների դերը. հարաբերություններ, որոնց փոխադարձ կապն էլ հենց կազմում է ժառանգականության որակապես տարբեր երևույթների առանձնահատկության սպեցիֆիկայի հիմքը (Ն. Պ. Դուբինին, 1968): Գենի պրոբլեմում նոր հայտնագործությունների կարևոր նկրտումը Երկրագնդի վրա, ամբողջությամբ վերցրած, կյանքի համար ժառանգականության հիմունքների համընդհանրության հայտնագործումը և բնության որակական բազմապիսության հիմքում ընկած միասնության բացահայտումն է:

Վ. Ի. Լենինը գրել է. «...զարգացման համընդհանուր սկզբունքը պետք է միացնել, կապել, համատեղել **աշխարհի, միասնության,** բնության, շարժման, նյութի etc միասնության համընդհանուր սկզբունքի հետ» (Երկեր, հ. 38, 1962 թ., էջ 321):

**2. ԳԵՆԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ՎԻՃԱԿԸ:** Քիմիական, ցիտոքիմիական, ֆիզիկական, ցիտոգենետիկական և մաթեմատիկական մեթոդների լայն կիրառումը հնարավորություն է ընձեռում ավելի խորացնելու մեր իմացությունը ժառանգականության նյութական հիմունքների վերաբերյալ:

Վերջին տարիների հետազոտությունները պարզեցին, որ «ԴՆԿ»-ի (գենի) մոլեկուլների մասնիկներն այն նյութական սուբստրատն են, որի մեջ գրանցված է Երկրագնդի վրա եղած գրեթե բոլոր կենդանի էակների գենետիկական ինֆորմացիան: Դժվար է պատկերացնել կյանքի միասնության, նրա ծագման ընդհանրության և նրա պատմության փոխադարձ պայմանավորվածության ավելի խոր ապացույց, քան այս փաստը:

ԴՆԿ, ՌՆԿ և սպիտակուց— սրանք են այն երեք որոշիչ հիմնական նյութերը, որոնց կառուցվածքային և կենսաքիմիական փոխադարձ պայմանավորվածությունն ընկած է շարժման այն հատուկ ձևի հիմքում, որը կոչվում է կյանք: Սակայն չպետք է մոռանալ, որ սպիտակուցների, ԴՆԿ-ի և ՌՆԿ-ի փոխգործողության ձևը որոշվում է բջջի էվոլյուցիոն դիրքի սպեցիֆիկայով, քանի որ պատմական մեթոդն ունի իմացական խոշոր նշանակություն:

Չնայած այս ակնառու նվաճումներին, գենի տեսության մեջ դեռևս կան չլուծված շատ պրոբլեմներ: Որոշ կենսաբանների կարծիքով նուկլեինաթթուները միակ ժառանգակիր նյութերը չեն. դրանք բջջում լրացվում են գենետիկական ֆունկցիաների ավելի բարդ կրողներով (Կ. Խիշենվուդ և ուրիշներ):

Գենի տեսությունը վերջին տասնամյակներում նույնպես խորապես ստուգվեց, և ժառանգականության կորպուսկուլյար միավորին՝ գենին վերագրվող մի շարք հատկություններ գիտության կողմից ժխտվեցին և փոխարինվեցին նոր, ավելի դինամիկ հատկություններով: Մոլեկուլյար կենսաբանությունը, հատկապես գենետիկան, նոր ուղիներ են հարթում ժառանգականության տեսության հետագա զարգացման և դեռ չլուծված առեղծվածները բացահայտելու համար:

Շատ կարևոր սկզբունքային նշանակություն ունի այս պրոբլեմի փիլիսոփայական ասպեկտը: Որոշ կենսաբաններ փորձում են համոզել, թե իբր ժառանգական հատկանիշներ կրող հատուկ նյութի գոյության ընդունումն արդեն իդեալիզմ է, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է Վեյսմանի «սաղմնային պլազմային», թե՞ ԴՆԹ-ին, իբր այդպիսի նյութի գոյության ընդունումը նշանակում է ժառանգականությունը համարել նյութ:

Նման պնդումները զուրկ են թե՛ կենսաբանական, թե՛ փիլիսոփայական հիմքից: Ներկայումս ոչ մի լրջախոհ մարդ, առավել ևս կենսաբան, չի կարող կենսաբանական հատկությունը, ներկա դեպքում՝ ժառանգականությունը, նույնացնել նրա կրողի հետ:



Ճշմարտությունն այն է, որ ժառանգականության քրոմոսոմային տեսության կողմնակիցները երկար ժամանակ անտեսում էին ողջի ամբողջականությունը, օրգանիզմի տարբեր մասերի և կենդանի նյութի տարբեր գոյացությունների միասնությունն ու փոխներգործությունը, երբեմն էլ խիստ հակադրելով ժառանգական նյութը ոչ ժառանգականին: Իսկ նրանց հակառակորդները, ընկնելով մյուս ծայրահեղության մեջ, ողջը դիտում էին որպես միատարր՝ չշերտավորված զանգված: Մոլեկուլյար կենսաբանության և գենետիկայի վերջին տարիների նվաճումներն զգալիորեն կոնկրետացրին մեր պատկերացումները ժառանգակիր նյութի, նրա էության, կառուցվածքի և նշանակության վերաբերյալ: Բայց դա չի նշանակում, թե գոյություն ունի հատուկ, օրգանիզմի կենսագործունեությունից անկախ ժառանգական նյութ (որը վերագրում են ԴՆԹ մոլեկուլին): Պետք է նկատի ունենալ, որ ԴՆԹ-ն ինքնըստինքյան, ռիբոնուկլեինաթթվի, սպիտակուցի, ռիբոսոմի և կենդանի մարմնի բջջի մյուս գոյացությունների փոխներգործությունից դուրս, զուրկ է ողջի հատկություններից ճիշտ այնպես, ինչպես վիրուսները. ֆագերը կենդանի օրգանիզմից դուրս օժտված չեն ողջի հատկանիշներով և միայն օրգանիզմի ներսում են ձեռք բերում դրանք:

Պետք է ասել, որ արդի կենսաբանության շատ ներկայացուցիչներ արդեն հանգում են այն եզրակացության, որ ժառանգականության երևույթը բարդ, ամբողջական պրոցես է, որը տեղի է ունենում բջջում, իսկ ԴՆԹ-ն իր գենետիկական ֆունկցիաները կատարում է բջջի մյուս քիմիական կոմպոնենտների միասնությամբ, հետևաբար այն չի կարող դիտվել որպես ժառանգականության անկախ՝ մենաշնորհ կրող:

Գենի պրոբլեմը,— գրում է Ն. Պ. Դուբինինը,— դեռ հեռու է իր լուծումից: Նրա կառուցվածքի և ֆունկցիայի առավել ծածուկ, անշոշափելի կողմերը մեզ հայտնի չեն: Դեռ երկար ճանապարհ պետք է կտրել կյանքի դիսկրետ հիմունքների մեջ խորանալու համար: Գենն օժտված է անվերջ ներքին բարդությամբ, սակայն բջջի համակարգում այն հանդես է գալիս որպես ժառանգականության տարրական միավոր: Ամեն մի գեն, որպես մասնիկ, մտնում է գենոտիպի ինտեգրալ էֆեկտի մեջ, որն ապահովում է անհատի կենսագործունեությունն ու զարգացումը՝ ամբողջությամբ վերցրած

(Н. П. Дубинин. — Некоторые методологические проблемы генетики, 1968).

**3. ՁԵՌՔԲԵՐՈՎԻ ՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԺԱՌԱՆԳՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ:** Գենետիկայի մյուս վիճելի պրոբլեմներից է անհատական կյանքի ընթացքում ձեռք բերած հատկությունների ժառանգումը: Դասական գենետիկան ժխտում է այդ կոնցեպցիան, որակելով այն մեխանոլամարկիզմ, քանի որ Լամարկն առաջին անգամ ձևակերպեց ձեռքբերովի հատկությունների ժառանգման օրենքը: Իսկ ի՞նչ օրինաչափություններով է այդ տեղի ունենում, որո՞նք են օրգանիզմի և միջավայրի փոխներգործության գլխավոր ձևերը, որ ապահովում են միջավայրի ներգործությունը կյանքի շարժման սպեցիֆիկայի, նրա պատմության վրա: Այս հարցերին Լամարկը հիմնավորված պատասխան չի տալիս, որովհետև նա չէր ընկալել այն կարևոր դրույթը, որ **կյանքը նյութի շարժման հատուկ ձևն է:** Լինելով ամբողջական էվոլյուցիոն տեսության առաջին ստեղծողներից մեկը՝ Լամարկը չտվեց միջավայրի պայմաններին օրգանիզմների հարմարվողությունը բացատրող միանական մատերիալիստական տեսություն: Դրա պատճառն այն էր, որ նրա էվոլյուցիոն տեսությունը հետևողական մատերիալիստական չէր, իր փիլիսոփայական հայացքներով Լամարկը դեիստ էր, այսինքն՝ կողմնակից էր այն փիլիսոփայական ուղղությանը, որն աստծուն ընդունում էր որպես աշխարհի անդեմ սկզբնապատճառ:

Անհամեմատ ավելի հիմնավորված բացահայտեց միջավայրի նշանակությունն օրգանիզմների էվոլյուցիայի պրոցեսում Չ. Դարվինը, նշելով, թե էվոլյուցիոն պրոցեսը պայմանավորված է այն օրենքով, որի համաձայն ժառանգաբար հաղորդվում է նախորդող սերունդների ձեռք բերած նորը: Նույն տեսակետն են բաժանում շատ ականավոր կենսաբաններ, ինչպիսիք են՝ Է. Հեկելը, Կ. Տիմիրյազևը, Ի. Միչուրինը, Լ. Բերբանկը, Ի. Պավլովը, Ի. Մեչնիկովը և ուրիշներ:

Կորպուսկուլյար գենետիկայի հիմնադիրները՝ Ա. Վեյսմանը, Թ. Մորգանը, Վ. Իոգանսենը, Գ. Լոտցեն, Բետսոնը և նրանց հետևորդները կտրականապես ժխտում էին մարմնական փոփոխությունների ժառանգման սկզբունքը, պնդելով, թե օրգանիզմի վրա կյանքի պայմանների ներգործության միջոցով չի կարելի փոխել կենդանիների ցեղերը և բույսերի տեսակները (սորտերը):

Ինչպես տեսնում ենք, ձեռքբերովի հատկությունների ժառանգման հարցում տրամագծորեն երկու հակադիր տեսակետներ գոյություն ունեն: Բնականորեն հարց է ծագում, իսկ ո՞րն է ճշմարտությունը: Բանն այն է, որ դժվար է պատկերացնել տրամաբանող մի մարդ, որը ժխտի միջավայրի ազդեցությամբ օրգանիզմի այս կամ այն աստիճանի փոփոխման փաստը

անհատական կյանքի՝ օնտոգենեզի ընթացքում: Բայց միանմա՞ն են արդյոք այդ փոփոխությունները իրենց կենսաբանական էությամբ, արդյոք բոլո՞րն էլ ժառանգվում են՝ անկախ առաջացած հատկության բնույթից: Անշուշտ, ո՛չ: Վաղուց է հայտնի, որ օրգանիզմում առաջացած ոչ բոլոր փոփոխություններն են ժառանգական: Բուծարանային գործի գիտակներին քաջ հայտնի է, որ բազում օրինակներ կարելի է բերել, երբ հոտում շատ բարձր մթերատվությամբ օժտված կենդանուց ստացվում է միջակ սերունդ: Այդ դեպքում ծնողների մոտ փոփոխությունը կրել է ֆենոտիպիկ բնույթ, անդրադարձել օրգանիզմի միայն մարմնական հատկությունների վրա, չշոշափելով նրա վերարտադրական սիստեմը, սեռական բջիջները, քրոմոսոմային ապարատը՝ ժառանգականության հիմքը, այլ կերպ ասած՝ գենոտիպը: Այս օրինաչափությունը բազմիցս ընդգծել է Ի. Վ. Միչուրինը: Հենց իր սեփական փորձերով նա ցույց տվեց, որ ժառանգվում են օնտոգենեզում ձեռք բերված միայն այն հատկություններն ու հատկանիշները, որոնք շոշափել են վերարտադրական սիստեմը՝ գենետիկական ապարատը, գենոտիպը, նյութափոխանակության բնույթը:

Կարելի է բերել այսպիսի օրինակ: Քիստավոր ցորենի որևէ սորտի վրա ազդելով արտաքին միջավայրի այնպիսի հզոր գործոնով, ինչպիսին է սնունդը՝ հարուստ պարարտացումը, կարելի է նկատելի չափերով մեծացնել հասկը, հատիկների քաշը և դրանով իսկ բարձրացնել բերքատվությունը, այսինքն՝ առաջացնել ֆենոտիպական փոփոխություն, սակայն քիստավորության ժառանգական հատկանիշը չի փոխվի, այդ սորտը չի դառնա անքիստ: Բայց որոշակի պայմաններում արտաքին միջավայրի ներգործությունը կարող է խորանալ և շոշափել օրգանիզմի ժառանգական հիմքը՝ գենետիկական ապարատը, առաջացնելով նոր ժառանգական հատկանիշ՝ գենոտիպական փոփոխություն, ներկա դեպքում՝ անքիստություն, որի հետ կարող են կապված լինել նաև բարձր բերքատվության, չորադիմացկունության, ամուր ցողունի և այլ ժառանգական հատկանիշներ, որոնք ամրապնդվում են հետագա սերունդներում ընտրության՝ սելեկցիայի միջոցով:

Տրամախաչման արդյունքները համոզիչ ցույց են տալիս, որ, իրոք, ժառանգական են այն փոփոխությունները, որոնք արդյունք են վերարտադրական սիստեմի փոփոխման: Նըրբագեղմ և կոպտաբուրդ ոչխարների տրամախաչման ժամանակ հենց առաջին սերնդում ստացվում են մեծ թվով կիսանրբագեղմ և նրբագեղմ խառնածիններ. սրանք ձեռքբերովի այդ նոր հատկանիշները հաղորդում են ժառանգներին: Եվ դա հասկանալի է, քանի որ տրամախաչման ժամանակ ձուլվում են ելակետային ցեղերի սեռական գամետները, որոնք գենետիկական ապարատի՝ ժառանգական հիմքի կրողներն են, իսկ առաջացած սաղմը և սաղմնային շրջանն ավարտած օրգանիզմն արդեն ձեռք են բերել ժառանգական նոր հատկանիշ՝ նրբագեղմություն:

Այժմ ձեռքբերովի հատկությունների ժառանգման հնարավորության հարցը քննենք մոլեկուլյար գենետիկայի դիրքերից: Հայտնի է, որ արտաքին գործոնների ազդեցությամբ կենդանի մարմիններում առաջանում է «էտներգործություն» (կամ «գրգռման հետքեր»), որը պայմանավորված է սպիտակուցային մարմինների կառուցվածքային և ֆունկցիոնալ փոփոխություններով: Բնականորեն հարց է ծագում. նյութափոխանակության պրոցեսների և սպիտակուցային մարմինների այդպիսի վերակառուցումը չի՞ անդրադառնում արդյոք ԴՆԹ-ի և ՌՆԹ-ի մոլեկուլների վրա, չի՞ կարող հարուցել օրգանիզմի ժառանգական փոփոխություն: Կիբեռնետիկայի լեզվով ասած՝ գոյություն չունի՞ արդյոք հակադարձ կապ նուկլեինաթթուների և սպիտակուցի միջև, թե՞ այդ կապը խիստ միակողմանի է և իրականացվում է միայն մի ուղղությամբ ԴՆԹ ⟶ ՌՆԹ սպիտակուց: Չե՞ն կարող արդյոք կենդանի մարմնում առաջացած էտներգործությունները այն աստիճան փոփոխվել, որ դառնան ժառանգական և հաղորդվեն հետագա սերունդներին: Քրոմոսոմային տեսության հիմնադիրները բացասական պատասխան էին տալիս այդ հարցին, պնդելով, թե ժառանգակիր նյութը՝ սաղմնային պլազման, անընդհատելի, անմահ է. այն միայն մի սերնդի օրգանիզմից ծնում է հաջորդի օրգանիզմը, թե ժառանգակիր նյութն ավտոնոմ է մարմնի և արտաքին միջավայրի պայմանների նկատմամբ: Բայց ժամանակակից գենետիկական հետազոտությունները, հատկապես արհեստական մուտագենեզի բնագավառում կատարված ուսումնասիրությունները, լիովին հաստատում են ժառանգակիր նյութի փոփոխումը արտաքին գործոնների ազդեցությամբ:

Ինչպես տեսնում ենք, ձեռքբերովի հատկությունների ժառանգման հարցում դեռևս իրարամերժ տեսակետներ գոյություն ունեն: Միայն հետագա էքսպերիմենտալ հետազոտությունների միջոցով կկուտակվեն ավելի ու ավելի ստույգ փաստեր, և հնարավոր կլինի վեճի վերջնական գիտական լուծումը: Այստեղ շատ կարևոր նշանակություն ունի հարցադրման և դրա լուծման մեթոդոլոգիական կողմը: Ամենից առաջ, պետք է անհիմն համարել բոլոր այն փորձերը, որոնց նպատակն է ձեռքբերովի հատկությունների ժառանգման պրոբլեմը կապել փիլիսոփայության հիմնական հարցի հետ—



ո՛րն է առաջնայինը. մատերիա՞ն, բնությո՞ւնը, թե՞ գիտակցությունը (ոգին): Օրգանիզմի՝ ձեռքբերովի հատկությունների հաջորդական վերարտադրումը օնտոգենեզում, այսինքն՝ ժառանգումը, ոչ մի տրամաբանական կապ չունի փիլիսոփայության հիմնական հարցի հետ: Ուստի, ձեռքբերովի հատկությունների ժառանգման ո՛չ մերժումը և ոչ ընդունումն ինքնըստինքյան չեն կարող հանգեցնել իդեալիզմի:

**4. ԷՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵԹՈԴՈԼՈԳԻԱԿԱՆ ՀԱՐՑԵՐԸ:** Կենդանի մարմինների ուսումնասիրությունը մոլեկուլյար մակարդակով նպաստում է հաղթահարելու շատ հակասություններ, որոնք լրջորեն խոչընդոտում էին կենսաբանության զարգացմանը: Խոսքը վերաբերում է դարվինյան-միչուրինյան և վեյսմանյան-մորգանյան ուղղությունների միջև եղած հակասություններին: Ոմանց դուր չի գալիս, երբ գիտական ուղղությունը կոչվում է նրանց հիմնադիրների անունով, բայց երբեմն գրեթե անհնար է լինում այլ կերպ վարվել:

Հաշվի առնելով, սակայն, որ գիտական ուղղությունները նրանց հիմնադիրների անունով կոչելը (մասնավորապես կենսաբանության բնագավառում) վերջին ժամանակներս ստացել է ինչ-որ վատառողջ երանգ, փորձեր են արվում կենսաբանության մեջ գոյություն ունեցող երկու ուղղություններին տալ այլ անվանում, ելնելով տարվող հետազոտությունների մեթոդական և, մասամբ՝ մեթոդոլոգիական սկզբունքներից: Այսպես, մի քանի տարի առաջ Ն. Վ. Տուրբինը դարվինյան-միչուրինյան ուղղությունը բնութագրել է որպես էկոլոգոֆիզիոլոգիական: Գ. Վ. Պլատոնովը առաջարկում է այդ ուղղությունը կոչել սինթետիկ, քանի որ նրան բնորոշ է, ամենից առաջ՝ ամբողջական օրգանիզմի ուսումնասիրությունը արտաքին միջավայրի հետ ունեցած միասնության մեջ, իսկ, այսպես կոչված՝ վեյսմանյանմորգանյան ուղղությունը կոչել անալիտիկ կամ ցիտոգենետիկ, քանի որ դրան բնորոշ է, հիմնականում օրգանիզմի ժառանգականության ուսումնասիրման անալիտիկ եղանակը:

Որոշ հեղինակներ նպատակահարմար են գտնում դարվինյան-միչուրինյան ուղղությունը կոչել էվոլյուցիոն-պատմական մեթոդ, իսկ հետազոտությունների այն նոր եղանակները, որոնք մեզ մոտ միայն վերջին տարիներս են մշակվում մոլեկուլյար մակարդակով, կոչել ստրուկտուրա-սիստեմային:

Թվարկած առաջարկությունները, անշուշտ, ուշագրավ են, բայց առավել կարևոր է այս հարցադրման մյուս տեսանկյունը: Բանն այն է, որ հարցը հաճախ դրվում է ալտերնատիվի ձևով, ո՞ր մեթոդը ներկայումս պետք է լինի առաջատար-էվոլյուցիոն-պատմակա՞ն, թե՞ ստրուկտուրա-սիստեմային, այլ կերպ ասած՝ սինթետի՞կ, թե՞ անալիտիկ: Այսպիսի հարցադրումը սուր վիճաբանություններ է հարուցում և դա, մեր կարծիքով, օրինաչափ է, քանի որ ներկա դեպքում «կա՛մ, կա՛մ» տրամաբանական բանաձևն անընդունելի է և շատ է պարզեցնում ուղղությունների իրական հարաբերությունները:

Ամենից առաջ պետք է նշել, որ ստրուկտուրա-սիստեմային կամ անալիտիկ մեթոդը բոլորովին չի հակադրվում էվոլյուցիոն տեսությանը: Ընդհակառակը, կենսաբանական կառուցվածքների հետազոտությունը, անհրաժեշտաբար պահանջում է ուսումնասիրել նրանց զարգացման պատմությունը, իսկ, մյուս կողմից՝ էվոլյուցիայի պրոցեսների ուսումնասիրությունն անհնար է առանց պարզ պատկերացում ունենալու կենդանի նյութի ստրուկտուրականության դերի և կազմակերպվածության աստիճանների մասին: Այսպիսով, անալիտիկ և սինթետիկ մեթոդները ո՛չ միայն միմյանց չեն բացառում, այլ, ընդհակառակը, անհրաժեշտորեն լրացնում են իրար: Դժվար չէ նկատել, որ այս հարցում ճիշտ դիրքավորումը կարող է բնորոշվել որպես դիալեկտիկական սինթեզ, որը, իհարկե, բնավ չի բացառում այդ երկու կողմերի հատուկ ուսումնասիրությունների նպատակահարմարությունն առանձին վերցրած:

Ուստի, անհրաժեշտ է ոչ թե խոչընդոտել, այլ ամեն կերպ նպաստել դրանց մոտեցման ու փոխադարձ ներթափանցման բնական պրոցեսին: Այս գիծը, ամենայն հետևողականությամբ, պաշտպանում են սինթետիկ և անալիտիկ ուղղությունների նշանակությունը ճիշտ գնահատող շատ գենետիկներ, կենսաբաններ ու փիլիսոփաներ: Տրամաբանական է այն պահանջը, որ չպետք է կրկնել 1948 թ. սխալները, երբ կենսաբանության մեջ «միակ գիտականը», «մինչև վերջ ճշմարիտը» համարվում էր միայն միչուրինյան ուղղությունը: Ի միջի այլոց, նման վտանգավոր տենդենց նկատվում է և այժմ, միայն այն տարբերությամբ, որ այս անգամ «միակ գիտական» ուղղությունը համարում են դասական կամ մոլեկուլյար գենետիկան: Ընդորում, հաճախ անուշադրության է մատնվում այն կարևոր փաստը, որ, չնայած ժառանգականության ուսումնասիրության անալիտիկ մեթոդների շատ կարևոր նշանակությանը, այնուամենայնիվ, անվիճելի է, որ ընտանի կենդանիների ցեղերի և կուլտուրական բույսերի սորտերի ճնշող մեծամասնությունն ստեղծվել և շարունակում է ստեղծվել առայժմ հիմնականում սինթետիկ, այլ կերպ ասած՝ սելեկցիայի դարվինյան-միչուրինյան մեթոդներով: Այդ է վկայում այնպիսի ականա-

վոր սելեկցիոներների բեղմնավոր աշխատանքը, ինչպիսիք են՝ Ֆ. Գ. Կիրիչենկոն, Վ. Ի. Կուզմինը, Պ. Պ. Լուկյանենկոն, («Բեզոստայա 1» հանրահռչակ ցորենի սորտի հեղինակը), Վ. Ս. Պուստովոյտը, Վ. Ի. Ռեմեսլոն, Մ. Ֆ. Իվանովը, Լ. Ա. Ժդանովը, Ն. Խ. Օռլովսկին, Մ. Ի. Խաջինովը, Ա. Պ. Շեխուրդինը և շատ ուրիշներ: Հրաժարվել նրանց կողմից կիրառվող մեթոդներից և ուշադրությունը բևեռել միայն օրգանիզմի վրա ռադիացիոն և քիմիական միջոցների օգնությամբ կատարվող սելեկցիային, կնշանակեր անխուսափելի վնաս հասցնել գյուղատնտեսությանը: Օբյեկտիվությունը, միաժամանակ, պահանջում է նշել, որ ձևաբանական ուղղության կողմնակիցներից ոմանք մինչև օրս փորձում են գիտության մեջ համառորեն կառչել իրենց նախկին միակողմանի դիրքին և անտեսել մոլեկուլյար կենսաբանության նվաճումները: Անալիտիկ մեթոդներով աշխատող սովետական գենետիկները լուրջ նվաճումների են հասել, հատկապես, միկրոօրգանիզմների ժառանգականությունը փոխելու և նրանց արդյունավետությունը բարձրացնելու ուղղությամբ: Օրինակ, ուլտրամանուշակագույն ճառագայթների և քիմիական գործոնների ազդեցությամբ ստացվել է պենիցիլիում սնկի մի նոր մուտանտ, որն արտադրում է մոտ 500 անգամ ավելի պենիցիլիում, քան ելակետային հանրահայտ ձևերը: Միկրոօրգանիզմների մի այլ մուտանտ, որն օգտագործվում է անփոխարինելի լիզին ամինաթթվի արտադրության համար, ունի 300 անգամ ավելի բարձր արտադրողականություն, քան ելակետային շտամները:

Այս նվաճումները լուրջ ներդրում են միկրոբիոլոգիական արդյունաբերության զարգացման ասպարեզում: Վերջին տարիներում սովետական գիտնական Բ. Աստաուրովին հաջողվեց ջերմաստիճանի և իոնացվող ճառագայթների ներգործությամբ կարգավորել սեռի գոյացման պրոցեսը և շերամի որդի օրինակի վրա ստանալ ցանկացած սեռը և, առաջին հերթին՝ արուներ (քանի որ նրանց արտադրողականությունը մոտ 25 տոկոսով ավելի բարձր է, քան էգերինը):

Այս փաստերը մի անգամ ևս վկայում են, որ հետազոտության երկու ուղղություններն էլ գոյության լիակատար իրավունք ունեն, և մեր երկրում կենսաբանության հետագա զարգացումը պետք է ընթանա հետազոտությունների սինթետիկ և անալիտիկ մեթոդների ստեղծագործական զուգորդման, ամեն տեսակ դոգմաների և ծայրահեղությունների հաղթահարման ճանապարհով:

Սովետական կենսաբանների, գիտնականների և մանկավարժների առաջ շատ կարևոր խնդիրներ են ծառացած:

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ փիլիսոփայությունը պետք է ուշադիր հետևի այն հարցերին, որոնք առաջ է քաշում նորագույն հեղափոխությունը բնագիտության բնագավառում, որ փիլիսոփաները պետք է համատեղ աշխատանքի ներգրավեն բնագետներին: Լենինի այս իմաստուն փիլիսոփայական պատվիրանը կարմիր թելի պես անցնում է նրա **Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին** հոդվածում: Դա այնպիսի մի խնդիր է,— ընդգծել է Լենինը,— առանց որի մարտնչող մատերիալիզմը չի կարող լինել ո՛չ մարտնչող, ոչ էլ մատերիալիզմ: Ծարունակելով այդ միտքը՝ նա, միաժամանակ, նշում է, որ բնագիտությունն առանց փիլիսոփայության չի կարող յոլա գնալ, բնագետը պետք է լինի ժամանակակից մատերիալիստ, գիտակից կողմնակիցը այն մատերիալիզմի, որը ներկայացրել է Մարքսը, այսինքն դիալեկտիկ-մատերիալիստ:

Լենինյան այս դրույթն այն ամբողջ աշխատանքի հիմքն է, որ ներկայումս տարվում է ժամանակակից բնագիտության, ինչպես և կենսաբանության պրոբլեմների հետազոտության և փիլիսոփայական ընդհանրացումների բնագավառում:

Ինչ վերաբերում է արդի կենսաբանության մեջ գոյություն ունեցող երկու ուղղությունների գոյակցությանը, ապա մեր խոր համոզմամբ դա ո՛չ միայն հնարավոր է, այլև կենսականորեն անհրաժեշտ: Այդ ուղղությունների համադրումը ստեղծագործական առողջ հիմքի վրա, բարեկամական, սկզբունքային բանավեճերի մթնոլորտում, կհանգեցնի ուժերի հզոր միավորման, հին ու նոր դոգմաների հաղթահարման և արդի կենսաբանությունը կբարձրացնի զարգացման նոր, առավել բարձր աստիճանի:



Ի. ԲՐԱԳԻՆՍԿԻ

# ՍԻՈՆԻԶՄԻ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

*Վ. Ի. Լենինն իր* Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին *կլասիկ աշխատության մեջ մշակեց ազգային հարցի թեորիական հիմունքներն ու նացիոնալիստական (այդ թվում և սիոնիստական) գաղափարախոսության գնահատականը: Ազգային կյանքի փաստերը կարելի է ճիշտ ըմբռնել միայն այն դեպքում, «...եթե նայենք նրան մարքսիստորեն, այսինքն՝ դասակարգային պայքարի տեսակետից, եթե բաղդատելու լինենք լոզունգները դասակարգերի շահերի ու քաղաքականության և ոչ թե դատարկ «ընդհանուր սկզբունքների» դեկլամացիաների ու ֆրազների հետ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 20, էջ 8): Լենինյան այս դրույթները լիովին պահպանել են իրենց նշանակությունն ու այժմեականությունը: Ավելին, վերջին տասնամյակների պատմության դասերն առավել համոզիչ ապացուցեցին, որ երբ ռեակցիոն բուրժուազիան ջանում է իր գաղափարախոսությունը պարտադրել լայն մասսաներին, նա երբեք հանդես չի գալիս բացեիբաց, չիտակորեն չի պաշտպանում իր դասակարգային նպատակները, այլ կիրառում է սոցիալական հարմարվողականություն և դեմագոգիայի գործելակերպ, իր շահերը ներկայացնում իբրև համաժողովրդական, քողարկվելով «ընդհանուր սկզբունքներով», դեկլարացիաներով ու ֆրազներով:*

*Սա պետք է նկատի ունենալ նաև սիոնիզմի գաղափարախոսության և քաղաքականության էությունն ու դասակարգային բնույթը պարզաբանելիս: Նման պարզաբանումն այնքան գիտականորեն օբյեկտիվ ու հիմնավորված կլինի, որքան ավելի պատմականորեն է դիտվում դրա ծագումը, էվոլյուցիան, վերածումը նրան, ինչ իրենից ներկայացնում է սիոնիզմն այսօր:*

*I*

*Սիոնիզմը հասարակական-քաղաքական ասպարեզ մտավ անցյալ դարի վերջին «հրեական հարցը» վերջնականապես լուծելու, Պաղեստինում,— ուր մեր թվականությունից առաջ զարգացել էին հին եբրայական հասարակությունն ու նրա դասակարգային պետությունը,— իր ազգային պետությունն ստեղծելու բազմախոստում ծրագրով: Այս ըմբռնումն ակներև էր իր ուտոպիստական և ռեակցիոն-ռոմանտիկական գծերով (իդեալականացված անցյալին վերադառնալու կոչը), որում հարություն էր առնում մեսիանականության կրոնական գաղափարը (աստծու առաքյալի՝ մեսիայի հրաշագործ գալուստը հրեաներին «ավետյաց երկիրը» վերադարձնելու համար): Սիոնիզմի գաղափարախոսության բուրժուական բնույթը մեկից չերևաց: Դրա դասակարգային կերպարանքն ուրվագծվեց հետզհետե, այն բանին համընթաց, երբ վերջինս փորձեց գտնել «իր պետությունն» ստեղծելու մտադրության իրագործման եղանակը:*

*Սիոնիստական գաղափարախոսության ելակետը դարձավ հրեաների*

պատմական ճակատագրի «բացառիկության» կեղծ դրույթը, որից նրանք իրենց «անդասակարգ հանրության» վերաբերյալ պրոպագանդիստական հետևություններ էին անում։ Այդ պնդումը, սակայն, հակասում է պատմական ճշմարտությանը։ Անվիճելի է, որ ինչպես մյուս բոլոր ժողովուրդների, այնպես և հրեաների պատմական զարգացումն ուներ առանձնահատուկ գծեր։ Այն բանից հետո, երբ հրեաները զրկվեցին ինքնուրույն պետականությունից և տարաբնակվեցին զանազան երկրներում, հալածանքները հաճախ էին նրանց ֆիզիկական բնաջնջման առաջ կանգնեցնում։ Ժամանակի առումով վերջին և մարդկության խղճի տեսակետից առավել զայրացուցիչը վեց միլիոն հրեաների ոչնչացումն էր հիտլերյան ֆաշիզմի կողմից։

Դրա հետ մեկտեղ չի կարելի մոռանալ, որ մարդու կողմից մարդու շահագործման վրա հիմնված հասարակության մեջ նման ողբերգական բախտ է վիճակվել նաև այլ ժողովուրդների։ Նույնքան հինավուրց տաջիկ ժողովուրդը XI դարից մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը նմանապես զուրկ էր ինքնուրույն պետականությունից։ Հրեաների պատմության ողբերգական դրվագները էական շատ բանով են համընկնում այն բազմաչարչար ժողովուրդների ճակատագրին, որպիսիք ասորիներն են, հայերը, քրդերը։ Ոչ պակաս ցնցող են երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին հիտլերյան ֆաշիզմի կողմից տարբեր ազգությունների հսկայական թվով մարդկանց ոչնչացումը և ժամանակակից իմպերիալիզմի գազանությունների— գենոցիդի, ապարտհեյդի զոհերը դարձած ժողովուրդներին պատճառած արհավիրքները։ Գլխավորը, սակայն, այն է, որ հրեաների, ինչպես և բոլոր ժողովուրդների պատմությունը զարգանում էր պատմական պրոցեսի ընդհանուր օրինաչափությամբ, կեղեքիչների և կեղեքվողների միջև մղվող դասակարգային պայքարի օրենքներով։

Այդ իսկ պատճառով հրեաների, ինչպես և բոլոր ժողովուրդների պատմությունը հագեցած է հարուստների ու աղքատների միջև մղվող դասակարգային պայքարով։ Ուստի, հրեական հասարակության իշխող, շահագործող վերնախավը միշտ ջանում է դասակարգային հակասությունները քողարկել նահապետական-հայրապաշտական, ռասայական-կրոնական, երեսպաշտական-ֆիլանտրոպիկ ու այլ հանդերձանքներով, ինչպես և այն պնդումներով, թե իբր հրեաների մոտ գոյություն չունի դասակարգային բաժանում։ Այսպիսով, հրեական բուրժուական վերնախավը միշտ այնպես է վարվել, ինչպես վարվում է յուրաքանչյուր շահագործող վերնախավ։

Ինչպես միշտ, այդ մասին պարզ ու համոզիչ արտահայտվել է Վ. Ի. Լենինը։ 1919 թ. մարտի վերջերին արտասանած իր ճառում, նա ասաց. «Հրեաների մեջ կան բանվորներ, աշխատավորներ,— նրանք մեծամասնություն են։ Նրանք մեր եղբայրներն են որպես կապիտալի կողմից կեղեքվածներ, մեր ընկերները սոցիալիզմի համար մղվող պայքարում։ Հրեաների մեջ կան կուլակներ, շահագործողներ, կապիտալիստներ, ինչպես ռուսների մեջ, ինչպես բոլոր ազգերի մեջ... Հարուստ հրեաները, ինչպես և հարուստ ռուսները, ինչպես և բոլոր երկրների հարուստները, իրար հետ դաշնակցած, ճնշում, ճմլում, կողոպտում, անջատում են բանվորներին» (Երկեր, հ. 29, էջ 300)։

Հրեաների պատմության մի քանի առանձնահատուկ գծերը պայմանավորված են նրանց ապատերիտորիալությամբ, որի հետևանքով անցյալի մի ժողովրդից նրանք վերածվեցին լեզվով, կենցաղով և կուլտուր-հոգեկան կերտվածքով միմյանցից խիստ զատված էթնիկական խմբերի։ Իրենց ապրած երկրներում նրանք ազգային փոքրամասնություն են կազմել, լեզվով ու կրոնով տարբերվել բնակչության մեծամասնությունից։ Դրա հետ է կապված եվրոպական երկրներում հրեաների և՛ տնտեսական, և՛ քաղաքական դրությունը։

Տնտեսական առումով դա հանգեցրեց էկոնոմիկայի միակողմանի զարգացման, որն ընթանում էր գրեթե բացառապես քաղաքային բնակավայրերում (միջնադարյան, ապա և կապիտալիստական քաղաքներում), քաղաքային օկուպում՝ գյուղատնտեսական աշխատանքից զերծ «բնակավայրերում»։ Հրեա աշխատավորներն զբաղված էին գերազանցապես սպասարկման ոլորտում, մանր արհեստով։ Զգալի մասը ստիպված ձգտում էր մանր առևտուր անել. մեծ էր կրոնական ընկերության ողորմածությամբ ապրող կիսաքաղց թշվառների, նվաստացածների ու անարգվածների տոկոսը։ Մինչդեռ, հրեական բնակչության շահագործողական տարրերը ներգրավվում էին միջնորդական, խոշոր առևտրի, վաշխառության զանազան ոլորտները, հարստանում, կազմելով ձևավորվող բուրժուազիայի զգալի և ազդեցիկ խավը։

Քաղաքական առումով հրեական աշխատավորությունը զրկված էր տարրական իրավունքներից, ենթարկվում էր կրոնական հալածանքների, խտրականության։ Նա ստիպված էր ապրել գետտոյում, «նստակեցության գծում»։

«Օտար մարմնի» տնտեսական ու քաղաքական նման վիճակը հող էր ստեղծում այնպիսի այլանդակ երևույթների համար, ինչպես հակասեմիտիզմն է, հրեակերությունը (ատելությունը հրեաների հանդեպ)։ Շատ երկրներում կալվածատիրոջ և ճորտ գյուղացու միջև հրեա-միջնորդն էր կանգնած—կալվածքի կառավարիչը, գնորդը, որն այս ամենով հանդերձ, այլ հավատի մարդ էր։ Եվ գյուղացու կուտակված զայրույթը հաճախ ուղղվում էր նրա և ոչ թե ինչ-որ հեռավոր, շատ անգամ գյուղացուն անծանոթ բարինի դեմ։ Կապիտալիստական հասարակարգին հատուկ մրցակցության և «ամենքի պատերազմը բոլորի դեմ» ոգին, իշխող ազգի շահագործող վերնախավի կողմից «իր» իսկ աշխատավորների սաստկացող ցասումն իրենից հեռացնելու նպատակով միտումնավոր, հակասեմիտական տրամադրություններ հրահրելը, այդ ամենը նպաստում էին այն բանին, որպեսզի հրեական բուրժուազիայի վերնախավի ներկայացուցիչների նկատմամբ տածած զայրույթի զգացմունքը փոխանցվեր բնակչության հետամնաց խավերին՝ հրեական անմեղ չքավորությանը։

Ամենից առաջ, հարկ է նշել հրեա բնակչության զարգացման երկու՝ մեկուսացածության և երկրի ազգային մեծամասնության հետ միավորվելու տենդենց։ Այդ երկու նկրտումները միշտ համագոյակցել են միմյանց հետ, նրանց փոխգործողությունը չի դադարել ոչ միջին դարերում, և ոչ էլ նոր ժամանակներում։ Միավորման տենդենցը, այս կամ այն պետության կյանքին օրգանական միացումը արտահայտվում էին, մասնավորապես, կուլտուրայի ոլորտում։ Դա էլ հանգեցնում էր նրանց լիակատար ձուլման՝ (ասիմիլյացիայի) բնակչության մեծամասնությանը, գերիշխող ժողովուրդներին։

Ինչ վերաբերում է մեկուսացածության տենդենցին, ապա այն երևան է եկել ինչպես արտաքին, բռնի գործոնների ներգործությամբ (օրինակ, բնակեցումը գետտոյում) և խտրականության միջոցներով, այնպես և պահպանողական շրջանների հրեաների՝ «բացառիկությամբ» և «աստվածընտրյալությամբ» հիմնավորված ինքնամեկուսացման ձգտմամբ։ Սիոնիզմը հենց այդ պահպանողական տենդենցը դրեց հրեական հարցի իր «լուծման» ուղիների հիմքում։ Հրեաբնակ երկրներում հասարակական-քաղաքական տարբեր խմբեր դրա լուծման տարբեր մոտեցում ունեին։ Դեմոկրատական գաղափարախոսների համար հրեական հարցի լուծումը նշանակում էր՝ հրեական ազգային փոքրամասնությանը, տնտեսական և քաղաքական առումով, ողջ բնակչությանը հավասար իրավունքներ տալ։ Հրեական հարցի լուծման պրոգրեսիվ-դեմոկրատական շրջանների մղած վճռական պայքարի ցայտուն օրինակներ են «Դրեյֆուսի գործի» առթիվ է. Զոլայի գլխավորությամբ կազմակերպված ֆրանսիական ինտելիգենցիայի և «Բեյլիսի գործի» առթիվ ռուսական առաջադեմ հասարակայնության ելույթները։

Ոչ մի քաղաքական կուսակցություն, ոչ մի երևելի քաղաքական ղեկավար այնպես հետևողական ու ակտիվ չեն պայքարել ազգային ամեն տեսակ ճնշումների, այդ թվում նաև կապիտալիստական հասարակարգում հրեաների հարստահարման դեմ, ինչպես ռուսական սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցությունը, ինչպես Վ. Ի. Լենինը։ 1914 թվականին, Լենինի նախաձեռնությամբ, IV դումա մտցնելու համար սոցիալ-դեմոկրատական բանվորական ֆրակցիայի նախապատրաստած օրինագծերից մեկում նա անձամբ գրել է. «Օրենքի նախագիծ հրեաների իրավունքների բոլոր սահմանափակումները և առհասարակ բոլոր այն սահմանափակումները վերացնելու մասին, որոնք կապված են ծագման կամ որևէ ազգության պատկանելու հետ»։ Այս առընչությամբ Վ. Ի. Լենինը գրել է. «...Առանձնապես բարձր պետք է հնչի ռուս բանվորի ձայնն ընդդեմ ազգային ճնշման» (Նույն տեղը, հ. 20, էջ 206)։ Ցա-

րական Ռուսաստանում հենց միայն ռուսաստանյան պրոլետարիատն էր, և ոչ սիոնիստները, որ պաշտպանեց հրեա աշխատավորությանը։

Բավական որոշակի կարելի է հավաստել, որ մեկուսացվածության տենդենցը գերիշխում էր իրավազրկության և խտրականության սրման, հակասեմիտիզմի աճի, իսկ միանալու և ձուլվելու տենդենցը՝ ազատագրության և հակասեմիտիզմի հաղթահարման պայմաններում։ Խոսելով հրեական ծագում ունեցող կուլտուրական բնագավառի գործիչների ստեղծագործության վրա այս կամ այն տենդենցի ներգործության մասին, նույնպես կարելի է որոշակի օրինաչափություն սահմանել։ Այն գործիչները, որոնք ստիպված էին կամ իրենք էին որոշում սահմանափակվել միայն հրեական միջավայրով և եբրայերենով, թեև բավական շատ երկեր էին ստեղծում, բայց երբեք չէին հասնում համաշխարհային այն մեծ բարձունքներին, որոնց կարողանում էին հասնել ողջ երկրի, նրա ազգային մեծամասնության, գիտության ու արվեստի ոլորտը ներգրավված գործիչները։ Ապացույցի համար բավարարվենք միայն չորս անուններով. Սպինոզա, Հայնե, Լևիտան, Էյնշտեյն։ Կամավոր, բնական ասիմիլյացիայի ճանապարհով հրեական հարցի հետևողական-դեմոկրատական լուծման համար հանդես եկան ողջ իսկական առաջադեմ, ինչպես հրեա, այնպես և ոչ հրեա ժողովուրդների գործիչները։

Հրեական բուրժուազիայի և նրա «ապադասակարգային» տակտիկայի բնույթը դեռևս XIX դարում ըմբռնեց հրեական ձևավորվող պրոլետարիատը, որը, ռուսական բանվոր դասակարգի հետ մեկտեղ, մասնակցեց դասակարգային մարտերին։ Հրեական առաջադեմ մտավորականությունը ևս հասկանում էր «իր» բուրժուազիայի երեսպաշտ ու շահամոլ էությունը։ XIX—XX դարերի հրեական դեմոկրատական գրականությունը ռուսական կլասիկ գրականության ազդեցությամբ, եբրայերեն (իդիշ) հանդես եկան այնպիսի գրողներ, որպիսիք են՝ Մենդելե-Մոյհեր-Սֆորիմը, Շոլոմ-Ալեյխեմը, Ի. Պերեցը, Դ. Բերգելսոնը և ուրիշներ, որոնց ստեղծագործություններում վեր են հանվել հրեական բուրժուական միջավայրից սերած սուտ-ճգնավոր հարուստի («գվիր»), կարիերիստ-ֆիլանտրոպի և նողկալի ու այլանդակ այլ զանազանակերպ տիպերի մի ամբողջ շարան։ Եվ, համենայն դեպս, կարիքից ու աղքատությունից, տգիտությունից ու իրավազրկությունից նկած հրեա չքավորության զգալի մասը դեռևս չէր կարողանում ազատագրվել ռեակցիոն հոգևորականության հետ կապված «իր» բուրժուազիայի գաղափարական գերիշխանությունից։

XX դարի սկզբներին Ռուսաստանի բանվոր դասակարգի շարժման վերելքը հեղափոխականացրեց հասարակության ողջ աշխատավոր շերտերին, մասնավորապես, կեղեքվող ժողովուրդներին։ Այդ պրոցեսն ընդգրկեց նաև հրեական աշխատավորական մասսաներին, որոնց միջավայրից դուրս եկան այնպիսի մարտիկներ, որոնք դեմ էին ինքնակալությանը և պատրաստ՝ պայքարելու հանուն սոցիալիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի։

Ռուսաստանի հարստահարված ժողովուրդների աշխատավորական մասսաներին ռուսական պրոլետարիատի գլխավորած հեղափոխական շարժման ոլորտն ընդգրկելն ահաբեկեց այդ ժողովուրդների ազգային, ինչպես և հրեական բուրժուազիային։ Նա և իր դասակարգային գործակիցը նացիոնալիստական տրամադրություններ էր բորբոքում, աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխությանը հակադրում բուրժուական մարտնչող նացիոնալիզմը... «որը բթացնում, հիմարացնում էր, բաժանում բանվորներին, որպեսզի նրանց բուրժուազիայի ձեռքում սանձած պահի» (նույն տեղը, էջ 11)։ Այդ իսկ նպատակին էր ծառայում սիոնիզմը։

## II

Սիոնիզմը, ինչպես արդեն ասվեց վերը, հրեա ժողովրդին զինեց «աստվածընտրյալության» և «մեսիայի գալստյան» վերաբերյալ առասպելներով, որոնցով ընչազուրկ մարդկանց գլուխն է լցնում հրեական կրոնը։ Սիոնիզմի պարագլուխներն այդ փորձված զենքն օգտագործում էին՝ նպատակ ունենալով իրենց լիակատար ազդեցությանը ենթարկել լայն մասսաներին, ստիպել նրանց աջակցելու մեկ կամ մի խումբ եվրոպական տերությունների օգնությամբ



Պաղեստինում հրեական պետություն ստեղծելու իրենց առաջ քաշած պլանը։ Սիոնիզմն այդ աջակցությունն առավել ակտիվացնելու համար մի երրորդ դրույթ ևս հորինեց, որը Վ. Ի. Լենինը «հակասեմիտիզմի հավերժականության վերաբերյալ սիոնիստների» հեքիաթներ անվանեց (նույն տեղը, հ. 6, էջ 418), որն իբր հատուկ է բոլոր ժողովուրդներին և կարող է հաղթահարվել միայն հրեաներին իրենց երկրում բնակեցնելով։

Աստվածընտրյալության վերաբերյալ առասպելը, մի կողմից՝ հրեա ժողովրդի «բացառիկության» հռչակումն է, մյուս բոլոր ժողովուրդների նկատմամբ, ներդասակարգային նրա հակասությունների ժխտումը, բոլոր հրեաներին, անկախ գույքային վիճակից և քաղաքացիությունից, եղբայրներ համարելը, մյուս կողմից՝ այդպիսով, այլ ժողովուրդներին թերարժեք, ցածր ռասայի կարգը դասելը, նրանց հանդեպ, որպես, իբր, հակասեմիտների, անբարյացակամություն ներշնչելը։ Այդ թեզիսը քաղաքական տեսակետից վնասակար է, որովհետև ստիպում է շահագործվողին ենթարկվել իր շահագործող «եղբորը»։ Այն ուղղված է պրոլետարական համերաշխության և բոլոր աշխատավորների ինտերնացիոնալ համագործակցության դեմ և, ինչպես ամեն մի նացիոնալ-շովինիզմ, մարդատյաց բարոյականություն է պատվաստում. «Ինչ ուրիշներին չի կարելի իմ նկատմամբ, ինձ կարելի է այլոց նկատմամբ»։

Պաղեստինում եվրոպական տերությունների օգնությամբ հրեական պետություն ստեղծելու լոզունգը հրեաբնակ երկրներում աշխատավոր հրեաներին շեղում էր ինտերնացիոնալ հեղափոխական պայքարից։ Այդ լոզունգի կենսագործումն սպառնում էր նորաստեղծ պետությունը կիսագաղութային, կախյալ վիճակի մեջ դնել եվրոպական կապիտալիստական տերություններից։

Այդ են վկայում սիոնիստական լիդերների ասույթներն իսկ։ Սիոնիզմի հիմնադիր, ավստրիացի հրեա, լրագրող Թեոդոր Հերցլը պնդում էր, թե սիոնիստները Եվրոպայի համար Պաղեստինում առաջավոր ամրոց կստեղծեն ընդդեմ Ասիայի և իր սիոնիստական նախագծի կապակցությամբ բանակցություններ էր վարում Վիլհելմ II կայսեր և հրեական կոտորածների կազմակերպիչ ցարական ռեակցիոն մինիստր Պլեեի հետ։ Հերցլի գործակալ Մաքս Նորդաուն դեռևս մեր դարի 20-ական թվականներին, դիմելով անգլիական կառավարությանը, ոչ պակաս անկեղծությամբ հայտնեց գաղութարարներին ծառայելու իր պատրաստակամությունը։ «Մենք գիտենք, որ դուք սպասում եք, ուզում եք, որ մենք պահպանենք Սուեզի ջրանցքը... Մենք պատրաստ ենք կատարելու այդ դժվարին խնդիրը, սակայն, անհրաժեշտ է, որ դուք թույլատրեք մեզ ուժեղանալ մեր պարտքը կատարելու համար»։

Հակասեմիտիզմի հանրահայտության վերաբերյալ երրորդ թեզիսը սիոնիզմի սիրած հաղթաձին է։ Հարկ է ասել, որ ոչինչ այնքան չբարձրացրեց սիոնիզմի ազդեցությունը, որքան հակասեմիտիզմը։ Թեև արտաքուստ նրանք հանդես են գալիս իբրև հակոտնյաներ—հրեասերներ և հրեակերներ, բայց նրանց ելակետի և բուն էության մեջ ընդհանուր շատ բան կա։ Ե՛վ մեկը, և՛ մյուսը հրեական հարցի դասակարգային մոտեցումը նենգափոխում են ռասայական մոտեցմամբ, հրեա ժողովրդին համարում «բացառիկ». սիոնիստները՝ «գերազանցության» և «ընտրյալության», հակասեմիտները՝ ամեն բան ժխտելու իմաստով։ Թե՛ մեկը, թե՛ մյուսը հանդես են գալիս հրեաներին հրեաբնակ երկրներից գաղթեցնելու օգտին։ Ե՛վ մեկի, և՛ մյուսի գաղափարախոսությունն ու հոգեբանությունը նացիոնալ-շովինիստական է. հակասեմիտականները հակված են բոլոր հրեաներին սիոնիստներ համարելու։ Սիոնիստները՝ բոլոր ոչ-հրեաներին՝ հակասեմիտականներ։

Սիոնիզմի և հակասեմիտիզմի միասնությունը, որպես միևնույն մեդալի երկու կողմերի՝ ռասիզմի, նշվեց 1969 թ. կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցության հանրագումարային փաստաթղթում։ Այնտեղ պայքարի կոչ է արվում «ընդդեմ մարդատյաց գաղափարախոսության ու ռասիզմի պրակտիկայի», «ընդդեմ օկուպացված տերիտորիաներում և Իսրայելում արաբ բնակչության հալածանքների, ռասայական և ազգային խտրականության, սիոնիզմի և հակասեմիտիզմի, որոնք հրահրում են կապիտալիստական ռեակցիոն ուժերը...»։

Հակասեմիտիզմը պատմական երևույթ է, հետևաբար և անցողիկ։ Սոցիալիստական հասարակարգում արմատախիլ է արվում հակասեմիտիզմը, վերացվում նրա գոյատևման պայմանները։ Մինչև սոցիալիզմի հաղթանակը, ինչպես ցույց տվեց պատմական փորձը, ոչ թե հրեաների վերաբնակեցումը, այլ հասարակության դեմոկրատացումը նպաստեց հակասեմիտիզմի վարկաբեկմանն ու ոչնչացմանը։

Այսպիսով, սիոնիզմի թվարկած ողջ դրույթներն ու լոզունգները հակասում են աշխատավորության շահերին և ձեռնտու են միայն բուրժուազիային։

Քանի որ ցարական Ռուսաստանի հրեա բնակչության մարդկային վիրավորված արժանապատվության զգացմունքներն արհամարհող սիոնիզմին հաջողվեց մինչհեղափոխությունն իր համար համեմատաբար լայն բազա ստեղծել, ապա սիոնիստական կազմակերպությունների շարքերում քիչ չէին ազնիվ, մոլորված մարդիկ, աշխատավորներ, երիտասարդ երազողներ ու մոլեռանդներ, որոնք, խորամուխ չլինելով սիոնիզմի դասակարգային էության մեջ, իրենց չէին համարում բուրժուական գաղափարների կողմնակիցներ։ Այդպիսով, սիոնիզմի ներսում կային և «հոգևոր սիոնիզմի», և «երիտասիոնիզմի», և «սոցիալիստական սիոնիզմի» զանազան հոսանքներ ու երանգներ։ Թեև այդ բոլոր սխեմաներում տարօրինակ կերպով միահյուսվում էին և պարզամիտ մանրբուրժուական ուտոպիզմի, և սոցիալական դեմագոգիայի, և սոցիալ-ռեֆորմիզմի, և ռեակցիոն ռոմանտիզմի գծերը, որ սովորաբար լինում է բուրժուական նացիոնալիզմի տարբեր ըմբռնումներում, դրանք բոլորն էլ, վերջ ի վերջո, հետապնդում էին սիոնիստական ընդհանուր նպատակներ։

Սիոնիզմի լիդերների շրջանում կային նաև կորպորատիվ ֆաշիզմի առավել ուշացած գաղափարախոսությունը «կանխամտորող» բացահայտ ռասիստներ (օրինակ, Ժաբոտինսկին) և իրենք իրենց «առաջադիմությունը» հավաստող էկլեկտիկ մանրբուրժուական սխեմաներ «հորինողներ»։ Սակայն, սիոնիզմի էությունը, գաղափարական հիմունքները նրա ստեղծման օրից իսկ միասնական են և արտահայտում են բուրժուազիայի և ո՛չ ժողովրդի շահերը։ Սիոնիստների ակտիվ հակագործողություններն ուղղված ցարիզմի դեմ մասսաների մղած հեղափոխական պայքարի, իսկ հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո՝ ընդդեմ սոցիալիստական հասարակարգի կառուցման, դիմակազերծ արին սիոնիզմը՝ որպես ռեակցիոն, հակաժողովրդական բուրժուա–նացիոնալիստական գաղափարախոսություն։ Կյանքը հաստատեց այն գնահատականի ողջ ճշմարտացիությունը, որ տվել էր Լենինը։

Ժամանակակից սիոնիզմի բոլոր ռեակցիոն դրսևորումները, ինչպես և սիոնիստական «սակռերի» գաղանությունները, սկզբից ևեթ «կանխածրագրված էին» նրա գաղափարախոսության կողմից և սիոնիզմի զարգացման հետ մեկտեղ ավելի ու ավելի ակնբախ էին դառնում։

## III

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամն ավելի ուժգնացրեց ողջ բուրժուական գաղափարախոսության ռեակցիոն գծերը։ Երկու սիստեմների պայքարի պայմաններում— կապիտալիստական և սոցիալիստական— այդ գծերն իրենց արտահայտությունն են գտնում իմպերիալիստական բուրժուազիայի կողմից հակակոմունիզմ և հակասովետիզմ, ռազմական պսիխոզ և ռասիզմ հրահրելու, գաղափարական դիվերսիաներ կիրառելու մեջ։ Այդ ամենը որպես բուրժուական գաղափարախոսություն հատուկ է նաև ժամանակակից սիոնիզմին։ Հրեական բուրժուազիայի առավել գիշատիչ ու հաջողակ մասը, ամենից առաջ, խոշոր գործարանատերերը, առևտրականներն ու բանկիրները, կարողացավ վերածվել (ամերիկյան մոնոպոլիստներ Կունի, Լեբի և Ընկ. ինչպես և Ռոտշիլդների ու սիոնիզմի այլ ֆինանսական հովանավորողների տիպի), միջազգային մոնոպոլիստական կապիտալին սերտորեն կապված մոնոպոլիստական բուրժուազիայի։ Զնայած ժամանակակից սիոնիզմի բազմերանգությանը, նրա դասակարգային աղբյուրները սկիզբ են առնում նաև միջազգային կապիտալին, մասնավորապես ԱՄՆ-ի կապիտալին, սերտորեն զոդված՝ հրեական ծագում ունեցող մոնոպոլիստական բուրժուազիային։



Ագրեսիվ նեոգաղութարարական քաղաքականություն վարելիս, սիոնիզմն իմպերիալիստական, հատկապես, ամերիկյան բուրժուազիայի որոշակի շրջանների համար ուղղակի գյուտ էր։ Այդ ցայտուն կերպով երևում է Իսրայելի կառավարող շրջանների օրինակով, որոնք միացան միջազգային, առաջին հերթին, ԱՄՆ-ի իմպերիալիզմի ուժերին և հանդես են գալիս իբրև նրանց ռազմական մահակ՝ ընդդեմ արաբ ժողովրդի հեղափոխական-ազատագրական շարժման, ի պաշտպանություն ԱՄՆ-ի ռազմական և տնտեսական, մասնավորապես, նավթային շահերի Մերձավոր Արևելքում։ Այստեղից և այն քաղաքական-բարոյական ու նյութական օժանդակությունը, որը ցույց են տալիս իմպերիալիստները արաբական երկրների նկատմամբ ագրեսիվ, էքսպանսիոնիստական պլաններ իրագործող Իսրայելի սիոնիստական կառավարողներին։

Ահա թե ինչու ժամանակակից սիոնիզմի մասին կարելի է ասել, որ այն կապված է ոչ այնքան «հրեական հարցի», որքան իմպերիալիզմի նեոգաղութարար քաղաքականության, ԱՄՆ-ի մոնոպոլիստական կապիտալի այն շրջանների հետ (հրեական ծագում ունեցող մոնոպոլիստները նրա օրգանական մասն են և ոչ ինչ-որ «առանձին» մղվող թևը կամ ֆրակցիան), որոնք ոգեշնչում և ֆինանսավորում են Վիետնամում հանցավոր պատերազմը, հարստանում են այդ պատերազմում և հովանավորում Իսրայելի էքստրեմիստական, սիոնիստական լիդերներին։ Այդ ակնառու վկայում են, մասնավորապես, այնպիսի հանրահայտ փաստեր, ինչպես Իսրայելի գործողությունները վարկավորող հրեա միլիոնատերերի խառնաժողովը Իսրայելում և ԱՄՆ-ում, նմանապես Թել-Ավիվի հովանավորումը՝ ամերիկյան ագրեսիվ շրջանների և ԳՖՀ ռևանշիզմի կողմից։ 1948—1968 թթ. ընթացքում Արևմուտքի մոնոպոլիստներն Իսրայելին 8 միլիարդ դոլարի վարկ են տվել։ 1967—1975 թթ. նախատեսվում է ֆինանսներն ավելացնել 9 միլիարդ դոլարով։ Ո՞վ, բացի կույրերից, կարող է լրջորեն հավատալ, որ ֆինանսների տնօրեններն իրոք հոգում են ժողովրդի բարեկեցության և ոչ թե նրա կյանքի ձեռք բերվող գերշահույթի մասին։

Այդ իսկ պատճառով սխալ կլիներ թերագնահատել ժամանակակից սիոնիզմի և միջազգային սիոնիստական կազմակերպության դերը միջազգային իմպերիալիզմի քաղաքականության ասպարեզում։ Այժմ սիոնիզմը ոչ այնքան նախկին հրեական բուրժուա-նացիոնալիստական շարժումն է, որքան «հրեական հարցով» քողարկվող նեոգաղութարարական քաղաքականության և գաղափարական դիվերսիայի միջազգային (ամենից առաջ ամերիկյան) իմպերիալիստական ապարատի օրգանական մասը։ Ահա թե ինչու հակաիմպերիալիստական պայքարի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից՝ սիոնիզմի, նրա ռեակցիոն, իմպերիալիստական պրակտիկայի հետևողական մերկացումը համաշխարհային կոմունիստական շարժման, խաղաղության և դեմոկրատիայի ջատագով բոլոր մարտիկների էական խնդիրներից մեկն է։ «Միջազգային ռեակցիայի և ներքին ռեակցիոն ուժերի մնացորդների կողմից սոցիալիստական երկրների միասնության դեմ օգտագործվող քաղաքական ու գաղափարական հիմնական զենքը նացիոնալիզմն է... Նացիոնալիստական նախապաշարմունքները և երբեմնի ազգային երկպառակության մնացորդները կազմում են այն բնագավառը, որտեղ սոցիալական առաջադիմությանը ցույց տրվող դիմադրությունը կարող է լինել առավել տևական ու համառ, կատաղի և ճկուն» ասված է ՍՄԿԿ ծրագրում։

Իմպերիալիզմի գաղափարական դիվերսիաների սիստեմում սիոնիզմն իր առանձնահատուկ դերն ունի։ Իր զարգացման պրոցեսում այն կարծես դարձել է ռասիզմի և հակակոմունիզմի ռեակցիոն գաղափարների կոնցենտրատը։ Սրբապղծորեն չարաշահելով հիտլերյան ֆաշիզմի կողմից միլիոնավոր հրեաների ոչնչացման ողբերգությունը, սիոնիզմը միաժամանակ չի խորշում ֆաշիստական կազմակերպություններից, օրինակ, բերչիստներից ԱՄՆ-ում։ Քողարկվելով «հրեական հարցի» վերաբերյալ կեղծ հոգածությամբ, սիոնիզմը կատարում է սոցիալիստական համերաշխության աճող ազդեցության դեմ մղվող պայքարի առաջադրանքը, ՍՍՀՄ և սոցիալիզմի այլ երկրներում «հրեաների վիճակի» վերաբերյալ սուտ հերյուրանքներ տարածելով։ Այդ առաջադրանքը կենսագործվում է համաշխարհային սիոնիստական կազմակերպու-

գաղափարական հիմունքներով, մասնավորապես ուրիշ ժողովուրդների նկատմամբ շովինիստական հարաբերություններով և իմպերիալիստական պետությունների հովանավորության հույսով։ Ելնելով դրանից, սիոնիստական վերնախավն անցյալում ևս լոզունգներ էր հրամցնում և ազգային կոտորածներ բորբոքող քաղաքականություն վարում։ Իսրայելի այժմյան էքստրեմիստական ղեկավարության ագրեսիվ միջոցառումներն ամենևին պայմանավորված չեն ստեղծված իրադրությամբ, այլ բխում են դասակարգային դիրքորոշումից։

Իսրայելի պետության ստեղծումից դեռ շատ առաջ, նույնիսկ սիոնիստական միջավայրից, արաբների նկատմամբ սիոնիստական պարագլուխների ռասայական վերաբերմունքը մերկացնող ձայներ էին լսվում։ «Իսկապես, ի՞նչ են անում մեր եղբայրները Պաղեստինում,— հարցնում է «հոգևոր սիոնիզմի» լիդեր Ահադ Համը։— Հրեաներն արաբների հետ դաժան են վարվում, զրկում են նրանց օրինական իրավունքներից, վիրավորում առանց որևէ պատճառի և նույնիսկ պարծենում են իրենց արարքներով։ Մինչդեռ, մեր մեջ չկա մեկը, որ հանդես գար այդ նողկալի ու վտանգավոր հակումների դեմ»։

Իսրայելի ստեղծումից հետո սիոնիստական լիդերների գիծը չփոխվեց։ Սիոնիստական ռեակցիոն կուսակցության ղեկավար «Հերուտ» Բեգինը լկտիորեն հորջորջում էր. «Մենք զարգանալու հնարավորություններ չենք ունենա, քանի դեռ ուժի դիրքերից չենք կարգավորել մեր տերիտորիալ պրոբլեմները— մենք կհարկադրենք արաբներին հնազանդվել»։ Այս ոգով արտահայտվեց Իսրայելի արտաքին գործերի մինիստր Ա. Էբանը, որը բացահայտ հայտարարեց, թե «խաղաղությունն Իսրայելի գոյության անհրաժեշտ պայմանը չէ»։

Արաբ բնակչության տերիտորիալ էքսպանսիայի և արտաքսման սիոնիստական քաղաքականությունը Իսրայելի պետության պաշտոնական քաղաքականությունն է։ Իսրայելի պետության ղեկավարի տեղակալ Իգալ Ալոնը հայտարարեց. ««Մեծ Իսրայելի» բնակեցումը մեր ոչ պակաս կարևոր պարտքն է, քան անցյալի պարտքը, մանդատի օրերին— բնակեցնել Հորդանանի և Բետ-Շանի հովիտները. Նա, ով կասկածի տակ կառնի այս ճշմարտությունը, հարցականի տակ կդնի սիոնիստական ողջ կոնցեպցիան»։ Օկուպացված տերիտորիայում խաղաղ արաբ բնակչության նկատմամբ զինվորականների կատարած բռնություններն ու գազանությունները, խաղաղ օբյեկտների բարբարոս ռմբակոծությունները, ֆաշիստական վայրագությունները կրկնող գործողությունները մերկացրին սիոնիստական պարագլուխների իսկական կերպարը։

Սակայն աշխատավորական մասսաները, վերջին հաշվով, չեն կարող չըմբռնել, որ իսրայելյան էքստրեմիստների քաղաքականությունը շահավետ է միայն նրա իմպերիալիստ ոգեշնչողներին։ Իսրայելի առաջավոր ուժերին ղեկավարում է Իսրայելի կոմունիստական կուսակցությունը։ Նա մատնանշում է պետության խաղաղ զարգացման պրակտիկ ուղիները. «Ոչ թե իմպերիալիզմի հետ՝ ընդդեմ արաբ ժողովրդի, այլ արաբ ժողովրդի հետ՝ ընդդեմ իմպերիալիզմի»։ Հատկանշական է, որ Իսրայելի կոմկուսակցությունը վերջին պառլամենտական ընտրություններին, նախընթաց ընտրությունների համեմատությամբ, 41,6 տոկոսով ավելի ձայն ստացավ։ Չնայած բոլոր դժվարություններին ու ռեպրեսիաներին, Իսրայելի կոմկուսակցության ինտերնացիոնալիստական դիրքերն ավելի ու ավելի են պաշտպանում երկրի առաջադեմ շրջանները։ Դա մասնավորապես հաստատում են 1970 թ. ապրիլին Իսրայելում տեղի ունեցած բուռն ցույցերը, որոնց լոզունգներն էին. «Պատերազմի կառավարությունը պետք է հեռանա։ Մեզ հարկավոր է խաղաղության կառավարություն»։ Ոստիկանությունը դաժանորեն պատժեց ցուցարարներին, բայց ժողովրդի ցասումն ընդդեմ Թել-ավիվյան էքստրեմիստների, սաստկանում է։ Իսրայելի հասարակայնության շրջանում ամրապնդվում են տրամադրությունները մերձավոր արևելյան կոնֆլիկտի քաղաքական կարգավորման, ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի 1967 թ. նոյեմբերի 22-ի բանաձևի հիման վրա Պաղեստինի արաբ ժողովրդի ազգային իրավունքների ճանաչման ու իրականացման օգտին։

Համաշխարհային առաջադեմ հասարակայնությունն անարգանքով է նշավակում Իսրայելի սիոնիստական կառավարողների զավթողական քաղաքականությունը։ Բոլոր մայրցամաքներում զայրույթի ու բողոքի ձայնն է հնչում արաբական երկրների նկատմամբ իսրայելյան զինվորականության բարբարոսական գործողությունների դեմ։ Թել-Ավիվի կառավարող շրջաններին արժանի պատասխան են տալիս տարբեր երկրների՝ ազգությամբ հրեա բարի կամքի տեր մարդիկ, ընդ որում, ամենատարբեր շրջաններում, այդ թվում և կրոնական։ Չանդրադառնալով Մոսկվայի պրես-կոնֆերանսին, ՍՍՀՄ-ում հրապարակված բազմաթիվ նամակներին ու դիմումներին, կարելի է հիշատակել Եվրոպայի և Ամերիկայի բոլոր երկրների, ինչպես և Իսրայելի հրեա հասարակական գործիչների ասույթները սիոնիզմի դեմ։ Պրոֆեսոր Արիելին «Մեծ Իսրայելի» գաղափարախոսությունը պարզապես համեմատեց ֆաշիստական գաղափարախոսության հետ։ Գիտնական-պատմաբան Տալմոնը գրել է. «ռասայական լկտիության սիրտխառնող հոտի» մասին, որն առաջանում է մյուս ժողովուրդների համեմատ «բացառիկ ու մեծ իրավունք ունենալու ոտնձգություններից»։

Իսրայելցի գրող Ամոս Օզը հանդես եկավ արաբ բնակչության պաշտպանությամբ. «Պաղեստինի արաբները,— ընդգծեց նա,— այստեղ են, որովհետև Պաղեստինը պաղեստինցիների հայրենիքն է, ճիշտ այնպես, ինչպես Հոլանդիան՝ հոլանդացիների, իսկ Իրաքը՝ իրաքցիների հայրենիքն է»։ Իսրայելի նշանավոր հասարակական գործիչ Ուրի Ավներին իր Իսրայելն առանց սիոնիզմի գրքում մերկացնում է միջնադարյան ժամանակների կյանքի կոչված ֆանատիզմն ու դաժանությունը՝ իսրայելյան վերնախավի ագրեսիվ քաղաքականության ողջ կործանարարությունը։ «Քանի որ խաչակիրների երուսաղեմյան թագավորությունը,— զուգահեռ է անցկացնում նա,— հենվում էր միայն իր ռազմական գերազանցության վրա, իրեն կորստյան դատապարտեց»։

Հատկանշական է ֆրանսիական հրեա պրոֆեսոր Ռոժե Կոենի «Մոնդ» թերթի էջերում կատարած սիոնիզմի գաղափարախոսության վերլուծությունը։ Կոենը մոլորություն է համարում այն կարծիքը, թե ամեն մի հրեա սիոնիզմի կողմնակից է։ Նա քննադատում է սիոնիզմը իբրև մի դոկտրինա, որը «հրեայի միակ օրինական նպատակն է՝ առանց միջոցների խտրության պայքարը հանուն հրեական հայրենիքի նվաճման, վերստեղծման, հաստատման, ծաղկման, հեղինակության և, ըստ անհրաժեշտության, էքսպանսիա և տիրապետություն այնտեղ, ուր այդ «ռասայի» օրանն է եղել։ Կոենը ժամանակակից սիոնիզմն է համարում Իսրայելի ռազմական գործողություններին այլ երկրներում ապրող հրեաներին մասնակից դարձնելու միջոցը։

Բացի այդ, պրոգրեսիվ հասարակայնությունը վաղուց ի վեր բացահայտել է սիոնիստական լիդերների կապերը նացիոնալիստների հետ։ Իսրայելի կոմկուսակցության թեզիսներում այդ մասին խոսվում է, մասնավորապես, սիոնիստական լիդեր Ռ. Կաստների գործի կապակցությամբ։ «Այն բանից հետո, երբ Հիտլերը Գերմանիայում իշխանության գլուխ անցավ, սերտ աշխատակցություն ու կապեր հաստատվեցին սիոնիստական ղեկավարների և հիտլերյան իշխանության միջև։ 1952 թ. Երուսաղեմում տեղի ունեցած Ռ. Կաստների դատավարությունը հայտաբերեց, որ նացիստական դահիճ Էյհմանը և հունգարական սիոնիստների ղեկավար Ռ. Կաստները երկրորդ համաշխարհային պատերազմի օրերին համագործակցել են միմյանց հետ։ Կաստներն ու նրա մեղսակիցները շատ լավ գիտեին, որ նացիստները պատրաստվում են հունգարացի հրեաներին մահվան ճամբարներ, գազախցեր ուղարկել, բայց գերադասեցին թաքցնել այդ, փոխարենը նացիստական դահիճ Էյհմանը խոստացավ մի քանի հարյուր հրեաների, գլխավորապես սիոնիստների և մերձսիոնիստական հարուստների, արտագաղթեցնել Պաղեստին։ Դատավարության ընթացքում վկաների տված ցուցմունքներն ապացուցեցին, որ Կաստներն ու նրա մեղսակիցները հոգացել են «հրեական մասսաների «հանգստյան»» մասին։

Յուրաքանչյուր հումանիստորեն մտածող մարդ չի կարող չդատապարտել և՛ սիոնիզմը, և՛ հակասեմիտիզմը, չի կարող դատապարտելով նրանց, չտեսնել, որ միայն պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերից է հնարավոր գիտա-քաղաքական և բարոյական տեսանկյունից ճիշտ դիտել և լուծել ազգային հարցը, դրա յուրաքանչյուր կողմն ու պարագան։

журнал «Коммунист», № 9, 1970 г.

Մ. Ի. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ

# ԱՖՐԻԿՅԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Մեր օրերում սոցիալական գրեթե բոլոր տեսություններն այս կամ այն չափով, ուղղակի թե անուղղակի, իրենց վերաբերմունքն են արտահայտում մարքսիզմի նկատմամբ։ Այդ երևույթը պայմանավորված է նրանով, որ մարքսիզմը վաղուց է դարձել մեր դարաշրջանի սոցիալ-քաղաքական և գաղափարական զարգացման ընդհանուր մթնոլորտը։ Այդ է պատճառը, որ վերջին տասնամյակում համաշխարհային ասպարեզում կատարվող հասարակական բոլոր տեղաշարժերը հիմնականում ուղեկցվում են սոցիալիստական լոզունգներով։ Սոցիալական այդ նոր օրինաչափությունը ցայտուն կերպով հաստատվեց երիտասարդ, քաղաքականապես ազատ Աֆրիկայի երկրներում, որտեղ սոցիալիզմի գաղափարները մեծ ժողովրդականություն են նվաճել։

Աֆրիկյան ժողովուրդների համար սոցիալիզմը դարձել է ընդհանուր առաջադիմության, սոցիալական արդարացիության խորհրդանիշ և մեր դարաշրջանի հիմնական սոցիալական չարիքի՝ մարդու կողմից մարդու շահագործման վերացման գործուն միջոց։ Եվ դա բնական է ու հասկանալի։ Աֆրիկացիներն այժմ իսկ ցանկանում են տեսնել իրենց երկրների երջանիկ ապագան։ Դրա համար սոցիալիզմի և գաղութատիրությունից ժառանգություն մնացած հասարակության սոցիալ-տնտեսական կառուցվածքի սոցիալիստական վերափոխությունների վերաբերյալ խոսում և գրում են աֆրիկյան շատ գաղափարախոսներ, քաղաքական ու հասարակական գործիչներ, ազգային լիդերներ— տարբեր համոզմունքների ու քաղաքական սկզբունքների տեր, երբեմն մարքսիզմից շատ հեռու կանգնած մարդիկ։ Այդ պատճառով նրանցից շատերը սխալ են մեկնաբանում հասարակական զարգացման օրինաչափությունները, պնդում են, թե Աֆրիկայի երկրների սոցիալ-տնտեսական, գաղափարական առաջադիմությունը յուրահատուկ է և պետք է որակապես տարբերվի ինչպես Արևելյան սոցիալիզմից, ամենից առաջ՝ Սովետական Միության սոցիալ-քաղաքական սիստեմից, այնպես և արդի կապիտալիզմից։ Դա, իբր, հասարակական զարգացման պրոբլեմների նոր լուծում կլինի. «Մենք,— հայտարարում է Ջոմո Քենիարան,— արևմտյան կապիտալիզմի և արևելյան սոցիալիզմի ստրուկները չենք։ Մենք պետք է մշակենք կյանքի ու իդեալների մեր սեփական նորմերը»։ «Կոմունիստական կոլեկտիվիզմի և ամերիկյան ազատ ձեռնարկատիրության խիստ ընտրությունը,— գրում է հանիական գաղափարախոս Քվեսի Արման,— արդեն միակ ընտրությունը չէ»։ Հասարակական զարգացման այդ նոր ուղին նրանք բնորոշում են որպես հասարակության նոր սոցիալ-քաղաքական կազմակերպություն, որն ստացել է «աֆրիկյան սոցիալիզմ» անունը։ Այդ առումով Քենիայի կառավարության Սպիտակ գրքում ասվում է. «Քենիայի ընտրած սիստեմը կոչվում է «աֆրիկյան սոցիալիզմ»։



Բնութագրելով սոցիալիստական այդ կոնցեպցիան, դրա ներկայացուցիչները պնդում են, թե վերջինս բացասում է գիտական սոցիալիզմի հիմնական սկզբունքները, դրանք անընդունելի համարում արդի աֆրիկյան սոցիալ-տնտեսական իրականության համար։ «Մեր սոցիալիզմը, —գրում է դագոմեյան քաղաքական գործիչ Էմիլ Զինզուն,— ամենևին մարքսիստական չէ»։ Նացիոնալիստական այդ կոնցեպցիան, որը որոշակի սնուցող սոցիալական միջավայր ունի Աֆրիկայում, լայնորեն տարածվեց։ Դրա համար էլ այն նշանակալի ազդեցություն է գործում ինչպես շատ ազգային լիդերների ու հասարակայնության լայն խավերի, այնպես էլ Աֆրիկայի երկրների հասարակության սոցիալ-տնտեսական կյանքի վրա, մեծ չափով սահմանափակելով այդ երկրների հետագա զարգացումը։ Բացի այդ, «աֆրիկյան սոցիալիզմ» կոնցեպցիան, ըստ էության, անհարիր է գիտական սոցիալիզմին և խոչընդոտում է Աֆրիկայում մարքսիստական գաղափարախոսության տարածմանը։

Բնորոշելով «աֆրիկյան սոցիալիզմի» տնտեսական հիմքը, «Աֆրիկ Նուվել» հանդեսը 1965 թ. հոկտեմբերի № 21—27-ում նշում է, օրինակ, թե «աֆրիկյան սոցիալիզմը հասարակական սեփականությունն իր գլխավոր գործնական հիմքը չի դարձնում։ Ընդհակառակը, նա փորձում է համակցել սեփականության տարբեր տեսակները, որպեսզի դրանք առավել համապատասխանեն արտադրության պահանջմունքներին»։ «Մեր պլանը,— գրում է Լ. Սենգորը,— ընդգրկում է երեք սեկտոր. 1. հանրային— դա գյուղատնտեսությունն է. 2. խառը— կոմունալ ձեռնարկություններն ու ընկերությունները՝ պետության մասնակցությամբ. 3. ազատ— այսինքն՝ մասնավոր կապիտալիստական սեկտոր— բանկեր, առևտուր, արդյունաբերություն, որոնք պլանի սահմաններում իրենք իսկ կկողմնորոշեն իրենց զարգացումը և որոշակի առումով կվերահսկեն»։ Թվում էր, թե պրոբլեմի այդպիսի դրվածքը չի հակասում ողջամտությանը և նույնիսկ համապատասխանում է Սովետական Միությունում սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի ստեղծման պատմական ընթացքին։

Չէ՞ որ Վ. Ի. Լենինը, բնութագրելով երիտասարդ սովետական հանրապետության անցման շրջանի տնտեսական կյանքը, ընդգծում էր, որ այնտեղ համատեղ գոյակցում էին հինգ կացութաձև։ Ընդ որում, Լենինը մատնանշում էր, որ կուսակցությունը, թեև իր տնտեսական քաղաքականության մեջ չի կարող անտեսել իրականությունը, այնուամենայնիվ, պետք է ամեն կերպ նպաստի ազգային էկոնոմիկայի սոցիալիստական սեկտորի զարգացմանը, այսինքն՝ այն սեկտորի, որը խարսխվում է արտադրության գործիքների ու միջոցների հանրային սեփականության վրա։

Սակայն, «աֆրիկյան սոցիալիզմի» կոնցեպցիան պաշտոնապես ճանաչած երկրների տնտեսական կյանքի վերլուծությունը վկայում է, որ արդեն վաղուց է սկսվել Աֆրիկայի շատ երկրների ազգային էկոնոմիկայի հանրային սեկտորի քայքայման պրոցեսը։ Ճիշտ է, վերջին տարիներս Աֆրիկայի շատ երկրներում ստեղծվել են գյուղատնտեսական զանազան կոոպերատիվներ, բայց դրանք, նախ՝ վաճառահանման բնույթի են, որոնց հիմնական նպատակը միջնորդ-վաշխառուներից ազատվելն է։ Ուստի, իրենց նշանակությամբ դրանք

չեն կարող սոցիալական հիմք դառնալ ազգային էկոնոմիկայի հանրային սեկտորը նոր, զարգացման առավել բարձր մակարդակի հասցնելու համար: Հանրային սեկտորի քայքայման պրոցեսն այստեղ զուգակցվում է մասնավոր կապիտալի զարգացման արագ տեմպերով:

Իհարկե, Աֆրիկայի քաղաքականապես անկախ երիտասարդ երկրների տնտեսական կյանքը բնութագրելիս չի կարելի անտեսել այն ակնհայտ փաստը, որ այստեղ բավական արագ է զարգանում ազգային էկոնոմիկայի պետական սեկտորը: Սակայն, շատ երկրներում դրա զարգացման ընթացքը վկայում է, որ հետագայում այն կընդունի պետական-մոնոպոլիստական կապիտալի ձև: Այդ պատճառով սեփականության բազմաձևության սկզբունքի կիրառումը գործնականում, նախ՝ կհասցնի սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի ձևավորման հնարավորությունների սահմանափակմանը, նեղացմանը. երկրորդ՝ կնպաստի մասնավոր սեկտորի գործունեության ոլորտի ընդարձակմանը, ուստի և կապիտալիստական արտադրահարաբերությունների արագ զարգացմանը. երրորդ, դա նշանակում է հանդես գալ տեղական և մոնոպոլիստական խոշոր կապիտալի ազգայնացման դեմ:

Իր Աֆրիկայի սոցիալիզմի տարրերը աշխատության մեջ Նիգերիայի կաթոլիկ-գաղափարախոս Բեդե Օնուխանը պնդում է, թե Աֆրիկայում «անհրաժեշտ է ազգայնացնել ողջ արդյունաբերությունը», քանի որ «մասնավոր ձեռնարկատիրությունը կարող է բարգավաճել և միաժամանակ սոցիալապես էական դեր խաղալ»: Թոմ Մբոյան «Աֆրիկա ռիպորտ» ամերիկյան հանդեսի 1967 թ. մարտյան համարում հրապարակած իր Ինչպես խուսափել լճացումից հոդվածում, անդրադառնալով Աֆրիկայի քաղաքականապես անկախ նոր երկրներին, պնդում է, որ այդ պրոբլեմի լուծման հիմքում պետք է ընկած լինի «խառն էկոնոմիկան՝ ինչպես պետականը, այնպես էլ մասնավոր կապիտալիստականը՝ նրանց զարգացման հնարավորությունների առկայությամբ»:

Աֆրիկայի քաղաքականապես անկախ երիտասարդ երկրներում արտադրամիջոցների ազգայնացման պրոբլեմն իր բնույթով խիստ բարդ է: Դա բացատրվում է նրանով, որ ազատագրված երկրների մեծամասնության տնտեսական կյանքը շարունակում է սերտորեն կապված մնալ համաշխարհային կապիտալիստական տնտեսության հետ: Այդ պատճառով օտարերկրյա մոնոպոլիստական խոշոր կապիտալի շահերին որևէ ձևով դիպչելու ամեն մի փորձ ո՛չ միայն տնտեսական բնույթի հակամիջոցներ է առաջացնում, որոնք երկիրը տնտեսական քայքայման են հասցնում, այլև երբեմն ուղեկցվում է նույնիսկ ռազմական ինտերվենցիայով: Հիշենք իմպերիալիստական երկրների հակազդեցությունը ԱՄՀ կառավարության որոշմամբ Սուեզի ջրանցքի ազգայնացման կամ բելգիական մոնոպոլիստական ընկերությունների գործունեությունը վերահսկելու մասին Կոնգոյի կառավարության որոշման նկատմամբ՝ ընկերություններ, որոնք իրենց ձեռքն էին վերցրել այդ երկրների էկոնոմիկան:

Մոնոպոլիստական կապիտալի հետ համագործակցության քաղաքականությունն արդարացնելու և հիմնական արտադրամիջոցների ազգայնացման անհրաժեշտությունը ժխտելու նպատակով, նացիոնալիստական գաղափարախոսները փորձում են ապացուցել, թե քանի որ կապիտալիստները սովորեցնում և իրենց մոտ ծառայության են վերցնում աֆրիկացի անձնակազմ, շահույթների մի մասը վերաներդրում են, հարկեր վճարում, ուստի, դրանով իսկ զանազան գործնական նպատակների համար կապիտալը ազգայնացվում է: Ազգայնացման պրոբլեմի այդպիսի լուծումը ձեռնտու է ամեն մի կապիտալիստի:



Հարկ է նշել, որ այն երկրների լիդերները, որտեղ «աֆրիկյան սոցիալիզմի» տնտեսական սկզբունքները պրակտիկ գոյության ծրագիր են դարձել, հանդես են գալիս ո՛չ միայն հիմնական արտադրամիջոցների ազգայնացման դեմ, այլև ինքնաբավ են դարձնում մասնավոր սեփականությունը, այն օրենքի աստիճանի բարձրացնում: Այսպես, 1964 թ. մայիսին Սենեգալում ընդունվեց «Հողօգտագործման նոր սիստեմի վերաբերյալ օրենքը», որը փաստորեն օրինականացրեց հողի մասնավոր սեփականության սկզբունքը: Քենիայի ազգային էկոնոմիկայի զարգացման 1966—1970 թթ. հնգամյա պլանում ասված է. կառավարությունը կիրառում է մասնավոր ձեռնարկատիրության ըստ ամենայնի խրախուսման քաղաքականություն. այդ նպատակով նա մտադիր է զգալի միջոցներ տրամադրել մասնավոր սեկտորի վարկավորման համար:

Հանդես գալով սեփականության բազմաձևության օգտին, «աֆրիկյան սոցիալիզմի» կոնցեպցիայի կողմնակիցները հաշվի չեն առնում այն հանգամանքը, որ սոցիալիզմն անպայման ամբողջ ազգային էկոնոմիկայի կենտրոնացված պետական ղեկավարություն է ենթադրում, որի իրականացումը հնարավոր կլինի միայն այն ժամանակ, երբ հիմնական արտադրամիջոցները կպատկանեն ո՛չ թե առանձին անձանց, այլ ողջ հասարակությանը, այսինքն՝ երբ ազգային էկոնոմիկան մասնատված չի լինի, չի պատկանի մասնավոր ձեռնարկատերերին: Այս հանգամանքը խիստ կարևոր նշանակություն ունի արդի Աֆրիկայի երկրների համար, որովհետև աֆրիկյան ժողովուրդները, ըստ էության, անկախություն նվաճելուց հետո միայն ձեռնամուխ եղան ազգային էկոնոմիկայի գլխավոր ճյուղերի ստեղծմանը, որի հաջողությունը հիմնականում կախված է նրանից, թե պետությունն ի՛նչ չափով է կարգավորում այդ պրոցեսը: Սակայն, «աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցները հանդես են գալիս ազգային էկոնոմիկայի մասնատման, նրա տարերային զարգացման, ազգային էկոնոմիկայի կարգավորման բնագավառում պետական մարմինների գործունեության սահմանափակման և նեղացման օգտին: Այդպիսի մոտեցումը խաթարում է գիտատեխնիկական առաջադիմությունը:

Քաղաքական անկախություն ձեռք բերելուց հետո շատ երկրներում զանազան միջոցներ են ձեռնարկվում տնտեսական ռեսուրսների ուսումնասիրման համար և դրան համապատասխան փորձեր արվում ինչ-որ չափով պլանավորելու ազգային էկոնոմիկայի զարգացումը: Սենեգալում, Քենիայում, Տանզանիայում, Ուգանդայում, Զամբիայում, Գվինեայում, Մալիում, ԱՄՀ-ում և Աֆրիկայի շատ այլ երկրներում ընդունված են ազգային էկոնոմիկայի զարգացման հնգամյա պլաններ: Սենեգալում, օրինակ, երկու ինստիտուտ է ստեղծվել, ուր խնամքով հետազոտել են երկրի էկոնոմիկայի և պոտենցիալ ռեսուրսների վիճակը, որից հետո 1961 թ. ընդունվեց ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլան: Այդպիսի պլան է մշակված նաև Քենիայում, Ուգանդայում և աֆրիկյան այլ երկրներում:

Բացի այդ, քաղաքական անկախություն նվաճելուց հետո երիտասարդ երկրների մեծամասնությունում բավական կարճ ժամկետում ստեղծվեց ազգային էկոնոմիկայի պետական սեկտոր: Դրա համար այդ երկրների կառավարություններն սկսեցին լայն մասշտաբներով պլանավորել ազգային էկոնոմիկայի զարգացումը, ժողովրդական կրթության, առողջապահության, ազգային կադրերի պատրաստման գործը և այլն: Պլանավորման սովետական փորձն օրինակ է ծառայում Աֆրիկայի երկրների համար: Աֆրիկյան ազգային շատ

լիդերներ համապատասխան պետական մարմիններին խորհուրդ են տալիս ուսումնասիրել սոցիալիստական երկրների պլանավորման փորձը։

Իսկ ո՞րն է ազգային էկոնոմիկայի պլանավորման ասպարեզում այն միջոցառումների սոցիալ-տնտեսական բնույթը, որի մասին խոսում են «աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցները։ Պնդելով, թե «աֆրիկյան սոցիալիզմի» տնտեսական հիմքը սեփականության բազմաձևությունն է, նրանք դրանով իսկ, ըստ էության, սահմանափակում են պետական մարմինների դերը ազգային էկոնոմիկայի պլանավորման գործում։ Բացի այդ, պաշտպանելով մասնավոր կապիտալի շահերը, նրանք, հանդես են գալիս հօգուտ մասնավոր ձեռնարկատերերի լիակատար ինքնուրույնության՝ արտադրության կառավարման բնագավառում, որոնց արտադրական գործունեությունը կանոնավորվում է շուկայի տարերային և ոչ թե ազգային էկոնոմիկայի առանձին ճյուղերի պահանջներով։ Այդպիսով, պետական մարմինները չեն զբաղվում պլանավորմամբ. այն ենթարկվում է շուկայի պահանջներին և սրանք էլ դառնում են ազգային էկոնոմիկայի զարգացման հիմնական շարժիչ ուժ, կարգավորող սկզբունքը։

Պլանավորման վերաբերյալ իրենց դատողություններում «աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցներն ինքնատիպ չեն։ Եթե պլանավորման գործնական հարցերում նրանք ինչ-որ չափով ընդօրինակում են Սովետական Միության ու սոցիալիստական մյուս երկրների փորձը, ապա նրանց համար տեսական աղբյուր են հանդիսանում արդի բուրժուական տնտեսական մտքի զանազան հոսանքները և սոցիալիստ-ուտոպիստների ուսմունքը։

Աֆրիկյան որոշ գաղափարախոսներ, սկզբունքային տարբերություն չեն գտնում սոցիալիստական պլանավորման և կապիտալիստական պլանավորման միջև։ Այստեղ «աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցների հայացքների վրա պարզորոշ դրսևորվում է ո՛չ այնքան սոցիալիստ-ուտոպիստների ազդեցությունը, որքան արդի արևմտյան շատ գաղափարախոսների, որոնք գտնում են, թե տնտեսական պլանավորումը դարձել է կապիտալիստական հասարակության զարգացման արդի էտապի էական առանձնահատկություններից մեկը։

Արդի բուրժուական տնտեսագիտական մտքի հենց այդ սկզբունքի էությունն արտահայտվում է ազգային էկոնոմիկայի պլանավորման այն սկզբունքում, որն առաջարկում են աֆրիկյան նացիոնալիզմի գաղափարախոսները։

«Աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցները չեն ուզում հասկանալ, թե ինչպես տնտեսական պլանավորման պահանջի իրականացումը, այնպես և դրա նպատակը որոշվում են գոյություն ունեցող հասարակական-տնտեսական հարաբերություններով։ Տվյալ հարցի վերաբերյալ աֆրիկյան նացիոնալիզմի գաղափարախոսների դատողությունների ուտոպիզմն այն է, որ նրանց առաջարկած սկզբունքի հիմքում ընկած է սխալ և, ընդմին, աֆրիկյան երկրների սոցիալ-տնտեսական գործունեության փաստերը հակասող պատկերացում հասարակության զարգացման պրոցեսի վերաբերյալ, մի պրոցես, որը, իբր, իրականացվում է ըստ նախապես տրված սխեմայի։

Ազգային էկոնոմիկայի պետական սեկտորի առաջացումը, մի հանգամանք, որ հատուկ չէր կապիտալիզմի զարգացման վաղ էտապին, առանձնահատուկ օրինաչափություն է Աֆրիկայի քաղաքականապես անկախ երիտասարդ երկրների համար և նրա հիմքում ընկած է, նախ՝ տնտեսական գործոնը։ Սակայն անկախության նվաճումից հետո աֆրիկյան ազգային շատ լիդերներ, որոնք պաշտպանում էին տնտեսական լիբերալիզմի քաղաքականության



սկզբունքները, կարծում էին, թե այդ սկզբունքը կնպաստի տեղական և օտարերկրյա մասնավոր կապիտալի ներդրմանը (լայն մասշտաբներով) արդյունաբերության, գյուղատնտեսության արտադրության մեջ, տրանսպորտում, թե դրա շնորհիվ արագ վերելքի կհասնի ազգային էկոնոմիկան։ Սակայն ծառացած տնտեսական դժվարություններն այդ լիդերներին ստիպեցին շատ շուտով հրաժարվել տնտեսական լիբերալիզմի քաղաքականությունից և երկրի տնտեսական զարգացման խնդիրն զգալի չափով դրվեց պետական մարմինների վրա, թեպետ տնտեսական լիբերալիզմը մնաց նրանց տնտեսական քաղաքականության հեռանկարային հիմնական գիծը։

«Աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցների սոցիալ-տնտեսական կոնցեպցիաներում գլխավորն ազգային եկամտի «արդարացի բաշխման» սկզբունքն է։ Այդ սոցիալական դոկտրինայի հեղինակների կարծիքով այս կամ այն հասարակական սիստեմի տնտեսական հիմքը ոչ թե արտադրամիջոցների սեփականության այս կամ այն ձևն է, այլ հասարակական հարստության բաշխման որոշակի սկզբունքը։ Ուստի, կապիտալիզմի սոցիալական բոլոր արատները նրանք համարում են անարդարացի բաշխման սկզբունքի հետևանք և սոցիալիստական հասարակությունը դիտում որպես ազգային եկամտի արդարացի բաշխման արդյունք։ Այդ իսկ պատճառով աֆրիկյան իրականության պայմաններում սոցիալիզմի հիմնական խնդիրը դիտվում է ոչ թե իսկական դեմոկրատական սկզբունքներով գաղութատիրությունից ժառանգած հասարակության սոցիալ-տնտեսական կառուցվածքի արմատական վերափոխումը, մարդու կողմից մարդու շահագործման սոցիալական արմատների ոչնչացումը, այլ ներդրված աշխատանքի բաժնին համապատասխան եկամուտների սոսկ բաշխումը։ Այս գաղափարը զանազան ձևերով արտահայտում են «աֆրիկյան սոցիալիզմի» բոլոր տեսաբանները։ 1968 թ. փետրվարի 2-ին Սենեգալի պրեզիդենտի գրասենյակը հրապարակեց նախընտրական մի մանիֆեստ, ըստ որի Սենեգալի կառավարության ծրագրի վերջնական նպատակն է՝ կառուցել դեմոկրատական սոցիալիզմ, որտեղ «ազգային եկամուտը պետք է բաշխվի արդարացի սկզբունքով՝ ներդրված աշխատանքի համեմատ»։

«Աֆրիկյան սոցիալիզմի» սկզբունքի կողմնակիցները չեն ուզում հասկանալ, որ ազգային եկամտի բաշխման սկզբունքի բովանդակությունն ամեն մի սոցիալական սիստեմում լիովին որոշվում է սեփականության իշխող ձևով և ողջ հասարակական արտադրության սոցիալական վիճակով։

Քենիայի կառավարության Սպիտակ գրքում ասված է. բանվորները, բաժնետիրական սկզբունքներով մասնակցելով ձեռնարկությունների շահույթի բաշխմանը, իրենք աստիճանաբար դառնում են կապիտալի տերեր և այդ եղանակով, իբր, ժամանակի ընթացքում կվերանան ձեռնարկատերերի և բանվորների միջև գոյություն ունեցող սոցիալական տարբերությունները, կհավասարակշռվեն նրանց եկամուտները և, ինքնաբերաբար, հնարավոր կդառնա ազգային եկամտի իրավացի բաշխման սկզբունքի իրականացումը։ Նրանք այն հետևությունն են անում, թե այդ եղանակով կստեղծվի միանգամայն նոր հասարակություն՝ «սոցիալիստական կապիտալիզմ»։

«Աֆրիկյան սոցիալիզմի» կողմնակիցները հենց դա են համարում, այսպես կոչված, «նոր», արևելյան սոցիալիզմից և արևմտյան կապիտալիզմից տարբերվող մոտեցումը արդի աֆրիկյան իրականության պայմաններում՝ սոցիալ-տնտեսական արմատական պրոբլեմները լուծելիս։ Դժվար չէ նկատել, որ աֆրիկյան նացիոնալիստական երանգով գունազարդված այդ դատողու-

թյուններն էկլեկտիկ կերպով զուգորդվում են սոցիալ-տնտեսական սկզբունքների, Արևմուտքում լայնորեն տարփողվող «հիբրիդ-հասարակության», «համընդհանուր բարօրության պետության» կոնցեպցիաների, արդի բուրժուական ռեֆորմիզմի և սոցիալիստ-ուտոպիստների ուսմունքների տարրերի հետ։

Աֆրիկյան նացիոնալիզմի գաղափարախոսները, որոնք ջանում են նացիոնալիստական երանգներով վերափոխել կապիտալիզմից ժառանգած արտադրության ու բաշխման օրենքները, անփոփոխ թողնելով այդ օրենքների հիմքերը, հասարակությունը սոցիալական արդարացիության չեն հասցնի։

Իհարկե, նացիոնալիստ գաղափարախոսները հասկանում են, որ իրենք, ըստ էության, կառչում են այն արմատական սոցիալ-տնտեսական հակասություններից, որոնք հատուկ են կապիտալիզմին, քանի որ այդ հակասությունները բնորոշ են այն սոցիալական սիստեմին, որը նրանք կոչում են «աֆրիկյան սոցիալիզմ»։ Այդ իսկ պատճառով «աֆրիկյան սոցիալիզմի» ջատագովները, խեղաթյուրելով «սոցիալիզմ» հասկացության սոցիալ-քաղաքական էությունը, փորձում են ապացուցել, թե արդի աֆրիկյան իրականության պայմաններում սոցիալիզմի խնդիրը գոյություն ունեցող ներքին սոցիալական հակամարտությունների վերացումը չէ, ոչ էլ գաղութատիրությունից ժառանգած հասարակության սոցիալ-տնտեսական կառուցվածքի՝ իսկական դեմոկրատական սկզբունքներով արմատական վերափոխումը, այլ, մի կողմից, տնտեսապես զարգացած երկրների և, մյուս կողմից, Աֆրիկայի նախկին կախյալ երկրների արտադրաուժերի զարգացման մակարդակում եղած էական ճեղքվածքները։

Այդ է հավաստում Լեոպոլդ Սենգորի 1968 թ. մարտի 8-ի ելույթը Սենեգալի ազգային ժողովում։ Շարադրելով երկրի հեռանկարային զարգացման վերաբերյալ իր կառավարության ծրագիրը, նա հայտարարեց. «Մեր ծրագիրը հանգում է մի բանի՝ երկրի տնտեսական զարգացմանը... Սենեգալի վերջնական նպատակն է 30 տարի անց, այսինքն՝ 2000 թվականի մոտերքին ստեղծել ինդուստրիալ հասարակություն։ Դա նշանակում է, մասնավորապես, բնակչության մեկ շնչին ընկնող տարեկան եկամուտն ավելացնել երեք անգամ (մինչև 600 դոլար) և երկրի համախառն արտադրանքը՝ 400 տոկոսով։

Կանգնած լինելով արդի անհետևողական ռեֆորմիզմի դիրքերում՝ «աֆրիկյան սոցիալիզմի» տեսաբանները սոցիալ-տնտեսական ռեֆորմը դիտում են ոչ թե որպես հասարակական կյանքի արմատական վերափոխման, այլ ընդհանուր տնտեսական զարգացման միջոց։ Ազգային սոցիալիզմի տեսության այդ տարատեսակի կողմնակիցները, փորձելով որոշ սոցիալ-տնտեսական ռեֆորմների միջոցով կատարելագործել արտադրության ու բաշխման հակամարդասիրական օրենքները, որոշ չափով բարելավել աշխատանքի պայմանները, առողջապահությունը, ժողովրդական կրթությունը, բարձրացնել արտադրաուժերի զարգացման տեմպերը, ըստ էության չեն շոշափում հասարակական սիստեմի սոցիալ-տնտեսական հիմքերը, ուր արագ տեմպերով տեղի է ունենում հասարակության հակամարտ դասակարգերի սոցիալական շերտավորումը, որտեղ նույնպիսի տեմպերով հասունանում են սոցիալական հակասություններն ու դասակարգային պայքարը։

Ա. Ա. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

# ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԿՈՂՄՆՈՐՈՇՄԱՆ ԱՅԺՄԵԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Մեր սոցիալիստական հայրենիքում, տեխնիկայի և արտադրության աննախընթաց զարգացման պայմաններում, երևան են գալիս գիտության ու արտադրության նոր, հարակից ճյուղեր, գիտությունը վեր է ածվում արտադրաուժի։ Դրա արգասիքն են վերջին տասնամյակում կյանքի կոչված նորանոր մասնագիտությունները, որոնք խիստ անհրաժեշտ են ժողովրդական տնտեսության բնագավառում։ Այդ մասնագիտություններին տիրապետող կադրերի պատրաստման գործը կարևոր նշանակություն ունի, մեր օրերի առաջնահերթ խնդիրներից մեկն է, որը և գտնվում է մեր կուսակցության ու կառավարության ուշադրության կենտրոնում։ Դրա լուծման հիմնական ուղիներից մեկը երիտասարդության, պատանիների ու աղջիկների ներգրավումն է կոմունիստական շինարարության մեջ՝ նրանց մասնագիտական պատրաստության ու ճիշտ կողմնորոշման միջոցով։ Ինչպես հայտնի է, երիտասարդությունն այդպիսի պատրաստություն է ստանում, հատկապես, տեխնիկումներում, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում և բուհերում։ Իսկ հանրակրթական դպրոցը տալիս է գիտելիքներ, որոնք պետք է հիմք հանդիսանան հետագայում բարդ մասնագիտությունների տիրապետելու համար, օգնեն ճիշտ կողմնորոշվելու։ Դպրոցն է գիտական, ուսումնական հիմնարկությունների, տնտեսության բազմազան ճյուղերի կադրերի ռեզերվը։

Սակայն, պետք է ասել, որ հանրակրթական դպրոցներում անբավարար է կազմակերպված պատանիների ու աղջիկների մասնագիտական կողմնորոշման գործը։

Ճիշտ է, մեր դպրոցն աշխատանքային ու պոլիտեխնիկական է, այն ջանում է ապահովել ուսուցման և աշխատանքային դաստիարակության կապը, պոլիտեխնիկական կրթությունը, օգնել մասնագիտական կողմնորոշմանը։ Դասերի և ֆակուլտատիվ պարապմունքների ընթացքում, տեխնիկական խմբակներում, արտադպրոցական հիմնարկություններում սովորողները մասնագիտական տեղեկություններ են ստանում ավանդվող գիտություններից։ Բայց արդյո՞ք բավարար է այդքանը։ Կարծում ենք՝ ո՛չ։ Մեր հանրակրթական դպրոցներում պոլիտեխնիկական ուսուցումը մեծ մասամբ կտրված է արտադրողական հանրօգուտ, գործնական աշխատանքներից։ Աշխատանք ուսուցող դասատուների 90 տոկոսից ավելին չունի մասնագիտական պատրաստություն։ Բացասաբար է անդրադառնում նաև այն հանգամանքը, որ ուսումնական պլանից արտադրական ուսուցումը հանելը սխալ հասկանալու պատճառով վերացվել են ուսումնական արհեստանոցները, տեխնիկական կաբինետները կամ երկրորդական նշանակություն է տրվում գործարանների ուսումնական արտադրամասերին։

Այդ ամենի հետևանքը եղավ այն, որ աշակերտները հոգեբանորեն չեն նախապատրաստվում գործնական աշխատանքի և չեն կարողանում ինքնուրույն ընտրել իրենց ապագա մասնագիտությունը։

Ամեն տարի հանրակրթական ութամյա դպրոցներն ավարտում են մոտ 35, իսկ միջնակարգը՝ մոտ 25 հազար աշակերտ։ Վերջինի մի մասն է (մոտ 5—6 հազարը) ընդունվում բուհերը։ Բնականաբար, մնացած մասը պետք է աշխատի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։ Սակայն նրանց մի մասն էլ ո՛չ աշխատում է, ո՛չ սովորում, այլ ծանր բեռ է դառնում ծնողների ու հասարակության ուսերին։ Ութամյա դպրոցն ավարտողները ևս չեն կարողանում ճիշտ կողմնորոշվել, այլապես նրանց զգալի մասը կընդունվեր պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարան, ուր ձեռք կբերեր և՛ հանրակրթական միջնակարգ, և՛ պրոֆեսիոնալ կրթություն, ապա աշխատանքի կանցներ ժողովրդական տնտեսության համապատասխան բնագավառում։

Օգնել պատանուն, աղջկան՝ իր հակումներին, ունակություններին համապատասխան մասնագիտություն ընտրելու, նշանակում է օգնել նրան՝ հասնելու իր նպատակին, գտնելու անձնական երջանկությունը։ Տեղին է ասել մեծ մանկավարժ Կ. Դ. Ուշինսկին՝ բավարարե՛ք մարդու բոլոր ցանկությունները, բայց խլեք նրանից կյանքի նպատակը և տեսեք՝ որքա՜ն դժբախտ, ողորմելի էակ կդառնա նա։

Ե՛վ իր, և՛ շրջապատի համար որքա՜ն տհաճ, աննախանձելի է իր տեղը չգտած աշխատողի վիճակը։

Այսպես. ամեն օր Արամը տուն է գալիս ծանրացած գլխով, հոգնած... Աշխատանքը հոգեկան բավականություն չի պատճառում նրան, չնայած շատերը հաճույքով կկատարեին այն։ Նա դատական քննիչ է— հետաքրքրական աշխատանք... Բայց Արամը կուզենար գործարանում լինել, լսել մեքենաների աղմուկը, կտրել, ծռել, ձև տալ մետաղին։ Այդ մասին նա երազում էր մանկուց, հաճախում պատանի տեխնիկների կայան։ Բայց ծնողներն ստիպեցին իրենց միակ որդուն՝ բարձրագույն կրթություն ստանալ, իրավաբան դառնալ։ Այսպես, նա ապակողմնորոշվեց. ընդունվեց, ավարտեց, բայց աշխատանքում չգտավ իր երջանկությունը. «...դա իմ ամենամեծ սխալն էր», հաճախ ասում է նա։

Մի այլ օրինակ. Ասյայի մասին բոլորը միաբերան ասում էին՝ բժշկուհու տեսք ունի։ Աղջիկը չէր ուզում։ Նա երազում էր մանկավարժ դառնալ։ Շատ ստիպեցին, դժկամությամբ ընդունվեց բժշկական ինստիտուտ։ Բայց մինչև II կուրս հասնելը հոգեկան ծանր ապրումներից հավասարակշռությունը կորցրեց։ Հանեցին ինստիտուտից, մի կերպ փրկեցին, բայց այլևս չիրականացավ մանկավարժ դառնալու նրա երազանքը, կորցրեց առողջությունը։

Այսպիսի օրինակները շատ են։ Ստիպում են պատանուն քիմիկոս դառնալ, բայց նա ձգտում է այլ բանի. ստիպում են երգիչ դառնալ, թեև ձայն ու լսողություն չունի։ Ուզում է ֆրեզերող լինել, տանում են անասնաբուժական ինստիտուտ... Հաճախ իրենք՝ երիտասարդները ևս չեն կարողանում ճիշտ կողմնորոշվել. համարձակ չէ, ձգտում է օդաչու դառնալ, համբերություն չունի՝ մանկավարժ։ Իսկ ծնողները մտածում են՝ հարևանի տղան գիտնական դառավ, իմն էլ պետք է դառնա և անում են ամեն բան, որ դառնա։

Բուհերն էլ իրենց հերթին սխալ են պլանավորում ընդունելության գործը։ Շատ մասնագիտությունների առումով բավական փոքրացել է կադրերի պահանջը, սակայն բուհերը դեռ շարունակում են նույն թվով պատմաբաններ, բանասերներ պատրաստել։ Հետևանքը լինում է այն, որ ավարտողներն աշխատանքի տեղ չգտնելով, գործի են անցնում առևտրի ցանցում, մանկապարտեզում, հաշվետարություն, քարտուղարություն անում տարբեր հիմնարկություններում, մոռանալով իրենց մասնագիտությունը։ Կամ քաղաքում ապրող անասնաբուժական-անասնաբուծական, գյուղատնտեսական ինստիտուտներն ավարտած երիտասարդները մի կերպ ընդունվում և ավարտում են նաև հեռակա մանկավարժական ինստիտուտը՝ քաղաքում աշխատանք ունենալու համար։ Հապա այս երևույթի ժողովրդա-տնտեսական վնա՞սը...

Զգացվում է երիտասարդության ուժեղ հոսք գյուղից քաղաք։ Բուհ, անպայման՝ բուհ։ Բայց չէ՛ որ ժողովրդական տնտեսությունն ունի նաև որակյալ



բանվորների, գյուղատնտեսական մեխանիզատորների պահանջ։ Ինչո՞ւ երիտասարդությանը չկողմնորոշել այնպես, որ նրանք սիրեն հասարակության համար պիտանի ամեն աշխատանք, չբացատրել նրանց, որ էլեկտրոնիկայի, կիբեռնետիկայի մուտքը ժամանակակից արդյունաբերության մեջ, գյուղատնտեսության կոմպլեքսային մեքենայացումը, քիմիացումը, մելիորացիան պահանջում են բանիմաց մարդիկ, որոնք հենց աշխատանքում կպահովվեն ստեղծագործելու, բարձրագույն կրթություն ստանալու, առաջ գնալու հնարավորություններով։ Մեծ ու փոքր աշխատանք չկա։ Բոլոր գործերում էլ կարելի է հերոսություն անել, հրաշքներ գործել։ Իսկ եթե բոլորն էլ դառնան գիտնական, կամ միայն մտավորական, թղթի ու գրասենյակի մարդ, հապա մեր աղունն ո՞վ աղա...

Այս հարցը պետք է անհանգստացնի ամենքին— ինչպես դպրոցին, այնպես էլ քաղաքային ու շրջանային կուսակցական, կոմերիտական կազմակերպություններին, քաղաքային ու շրջանային սովետներին, արտադրական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների ղեկավարներին, բուհերի, տեխնիկումների, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների աշխատողներին, ծնողներին և ողջ հասարակայնությանը, որովհետև խոսքը հասարակության ապագա անդամների համակողմանի դաստիարակությանը, բախտին ու երջանկությանն է վերաբերում։

Աճող սերնդի մասնագիտական պատրաստության գիտական հիմքը ժողովրդական տնտեսության զարգացման պահանջների, մասնագիտությունների բնույթի և առանձնահատկությունների, մարդկանց հոգեբանա-ֆիզիոլոգիական վիճակի ու հնարավորությունների խիստ համապատասխանեցումն է։ Ժողովրդական կրթության օրգանները պատանիներին ու աղջիկներին մասնագիտական կողմնորոշում տալիս պետք է հաշվի առնեն երեք հիմնական պահանջ.

ա) **Սոցիալ-տնտեսական**. ինչպիսի՞ մասնագետներ են անհրաժեշտ ժողովրդական տնտեսությանը։ Արտադրության ո՛ր ճյուղերն են զարգանում և որոնք են հատուկ ու հեռանկարային տվյալ քաղաքում, շրջանում, հանրապետությունում։

բ) **Նեղ մասնագիտական՝ կապված ընտրելիք մասնագիտության հետ.** հաշվի են առնվում տվյալ մասնագիտությունների բնույթը, առանձնահատկությունները, դրանց տիրապետելու և ապա՝ աշխատելու համար մարդուց պահանջվող գիտելիքները, հմտությունն ու ունակությունները։

գ) **Անհատական, հոգեբանա-ֆիզիոլոգիական**. տվյալ մասնագիտությունն ընտրողի հետաքրքրասիրությունները, հակումները. ո՞րն է նրա նպատակը, հոգեպես ու ֆիզիկապես համապատասխանո՞ւմ է նա տվյալ մասնագիտությանը։

Որքան ճիշտ են համապատասխանեցվում այս երեք պահանջները, այնքան ճիշտ ու գիտական է պրոֆեսիայի ընտրությունը։ Չէ՛ որ մասնագիտություններն իրարից տարբերվում են կոնկրետ բովանդակությամբ, բնույթով. պահանջմունքներով։ Մարդիկ ևս իրարից տարբերվում են անհատականությամբ, հոգեբանա-ֆիզիոլոգիական բնութագրով, նպատակներով, ձգտումներով, ընդունակություններով, հակումներով։

Ցավոք, երիտասարդությանը մասնագիտական կողմնորոշում տալիս այս հարցերը գրեթե ուշադրության չեն արժանանում։ Մեր հանրապետության դպրոցներում չի անցկացվում պատշաճ բժշկամասնագիտական քննություն, որի նպատակն է՝ ուսումնասիրել երեխաների հոգեբանա-ֆիզիոլոգիական վիճակը՝ կապված նրանց շրջանում տարվող անհատական աշխատանքների կազմակերպման և մասնագիտական կողմնորոշման հետ։ Մոսկվայի, Լենինգրադի և այլ քաղաքների դպրոցներում կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել երեխաների մասնագիտական հակումների, երազանքների և առողջական վիճակի անհամապատասխանությունը։ Այսպիսի քննություններ պետք է կազմակերպել նաև մեր հանրապետության դպրոցներում, ստուգել երեխաների առողջական վիճակը։ Մասնագիտական կողմնորոշման նպատակով ծավալվող աշխատանքների հիմքում կդրվեն այդ քննությունների տվյալ-

ները։ Այս գործով պետք է զբաղվեն լուսավորության և առողջապահության օրգանները։

Դպրոցական շատ աշխատողներ կարծում են, թե աշակերտին մասնագիտական կողմնորոշում պետք է տրվի IX—X դասարաններում, որովհետև ուսումնական ծրագրերի բացատրագրերում միշտ հիշատակվում է՝ միջնակարգ դպրոցն ավարտող երիտասարդը պետք է կարողանա կողմնորոշվել մասնագիտություն ընտրելիս։ Իրականում պատանիների ու աղջիկների մեծ մասը մասնագիտական կողմնորոշում պետք է ստանա 8-ամյա դպրոցն ավարտելիս, որպեսզի միջնակարգ կրթության հետ միասին ձեռք բերի նաև մասնագիտական կարգ։ Այս դեպքում մենք կկարողանանք արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը որոշ չափով ապահովել որակյալ, բանիմաց, կուլտուրական բանվորներով, որոնց կարիքը մեծ է։

Մասնագիտական կողմնորոշման կուռ սիստեմ ստեղծելու համար անհրաժեշտ է հանրապետությունում ունենալ մի կենտրոն, որը մեթոդական ղեկավարություն ցույց տա այն բոլոր օղակներին, որոնք կոչված են մասնագիտորեն կողմնորոշելու երիտասարդությանը։ Այս առումով որոշակի քայլեր են արվում ՌՍՖՍՀ-ում, Ուկրաինական, Բելոռուսական ՍՍՀ-ներում և մյուս հանրապետություններում։ Ուշագրավ է նաև սոցիալիստական երկրների փորձը։ Բուլղարիայի լուսավորության մինիստրությանը կից գործում է երիտասարդության մասնագիտական կողմնորոշման խորհուրդ, կազմված պետական գործիչներից, հոգեբաններից, մանկավարժներից, իրավաբաններից, բժիշկներից, ձեռնարկությունների ղեկավարներից և այլ մասնագետներից։ Չեխոսլովակիայում, Լեհաստանում կան մասնագիտական կողմնորոշման շատ կենտրոններ։ Հունգարիայի դպրոցների ուսումնական պլանում հատուկ առարկա է մտցված— մասնագիտական կողմնորոշում։

Այդ հարցերին լուրջ ուշադրություն է նվիրվում նաև բուրժուական շատ երկրներում։ Օրինակ, Ֆրանսիայում ազգային լուսավորության մինիստրությանը կից գործում է մասնագիտական կողմնորոշման գլխավոր հրահանգչություն, որի մասնաճյուղերը տարածված են մոտ 170 մունիցիպալ կենտրոններում։ Գործում են նաև այդպիսի 14 մասնավոր կենտրոններ, մասնագիտական կողմնորոշման 4 ինստիտուտ կադրեր են տալիս այդ հիմնարկություններին։ Շատ երկրներում այդ նպատակին ծառայում են ռադիոն, հեռուստատեսությունը, թերթերը, բյուլետենները։

Իսկ Հայաստանում... Միայն վերջին ամիսներին մասնագիտական կողմնորոշման «կետ» է ստեղծված Երևանի քաղժողկրթբաժնում, այն էլ սակավահաստիք։ Մեր կարծիքով, այդպիսի կենտրոն, առաջին հերթին, պետք է ստեղծվեր հանրապետության մասշտաբով, որի կազմում լինեին՝ մանկավարժ, հոգեբան, ֆիզիոլոգ, բժիշկ, իրավաբան. այն կհրատարակեր իր շաբաթական բյուլետենը, կունենար հասարակական կարգով գործող հանձնաժողովներ ու կոնսուլտացիոն կետեր բոլոր քաղաքներում, շրջաններում ու գյուղերում։ Նման կոնսուլտացիոն կետեր պետք է բացվեն նաև ժողկրթբաժիններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, արտադրական խոշոր ձեռնարկություններում։ Այս ասպարեզում մեծ են նաև թերթերի, ամսագրերի, ռադիոյի, հեռուստատեսության անելիքները։ Մասնագիտական կողմնորոշման հարցը պետք է հաճախակի քննարկվի կուսակցության շրջանային, քաղաքային պլենումներում, սովետների սեսիաներում։ Դրանով պետք է զբաղվեն գյուղատնտեսության, գյուղական և քաղաքային շինարարության, արդյունաբերության տարբեր բնագավառների մինիստրություններն ու գերատեսչությունները. բնագավառներ, ուր պետք է գործեն մեր ապագա մասնագետները։

Այս կարևոր գործն արժանի է համընդհանուր հոգատարության և ուշադրության։

Մասնագիտական կողմնորոշման կուռ սիստեմ ստեղծելու դեպքում հնարավոր կլինի ժամանակին ուսումնասիրել և լուծել նաև ժողովրդա-տնտեսական կարևոր նշանակություն ունեցող հեռանկարային շատ խնդիրներ։

Այժմ մեթոդական մի քանի հարցեր։ Մասնագիտական կողմնորոշման աշխատանքները կարելի է բաժանել երկու շրջանի։ Առաջին շրջանում պատա-



նիներին ու աղջիկներին տեղեկություններ կհաղորդվեն տարբեր մասնագիտությունների մասին։ Արտադրության կազմակերպման, մասնագիտությունների բնույթի, որոշ մասնագիտությունների տեխնիկայի ու տեխնոլոգիայի մասին նախնական տեղեկություններ երեխաներն ստանում են դասագրքերից, ռադիոյից, հեռուստատեսությունից, թերթերից, ծնողների զրույցներից։ Կան այնպիսի մասնագիտություններ, որոնց մասին երեխաներն ավելի շուտ են իմանում (թերևս՝ մակերեսորեն), հրապուրվում են դրանցով, իսկ շատ հետաքրքրական, գործնական ու կենսական մասնագիտությունների մնում են անիրազեկ։ Մինչդեռ դպրոցը, մասնագիտական կողմնորոշման կենտրոններն ու կոնսուլտացիոն կետերը, թերթերը, ռադիոն, հեռուստատեսությունը բավարար տեղեկություններ պետք է հաղորդեն տարբեր մասնագիտությունների վերաբերյալ, բացահայտելով դրանցից յուրաքանչյուրի առավելությունը, առանձնահատկությունը, դերը ժողովրդական տնտեսության մեջ, հետաքրքրասիրություն հարուցեն դրանց հանդեպ։

Մասնագիտության մասին աշակերտներին բազմակողմանի տեղեկություններ հաղորդելու համար պետք է կազմակերպել էքսկուրսիաներ արտադրական ձեռնարկությունները, հանդիպումներ տարբեր մասնագետների, սոցիալիստական աշխատանքի հերոսների, կոմունիստական բրիգադաների անդամների հետ։ Գործարանների, շինարարական կազմակերպությունների ակումբներում կարելի է ստեղծել կոնսուլտացիոն կետեր, ուր երեխաները կստանան տվյալ մասնագիտության հետ կապված իրենց հուզող հարցերի պատասխանը։ Պետք է ջանալ, որ հաղորդվող տեղեկությունները մակերեսային չլինեն, ամբողջական պատկերացում տան տվյալ աշխատանքի մասին։

Մասնագիտական կողմնորոշման նպատակով ծավալվող աշխատանքի երկրորդ շրջանում տեղեկություններ հաղորդելուց պետք է անցնել մասնագիտությունների պրոպագանդմանը։

Լավագույն ձևով կազմակերպված ինֆորմացիան պրոպագանդայի հիմք է դառնում, որի նպատակն է՝ պատանիներին ու աղջիկներին հանգամանորեն ծանոթացնել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի աշխատանքին, արտադրության կազմակերպման գիտական սկզբունքներին, լայնորեն պրոպագանդել այն մասնագիտությունները, որոնք ամենից ավելի անհրաժեշտ են ժողովրդական տնտեսությանը, բացահայտել մասնագիտությունների սոցիալական, հոգեբանա-ֆիզիոլոգիական պահանջները, պրոֆեսիոնալ հետաքրքրասիրություն հարուցել երիտասարդության շրջանում, հասնել այն բանին, որ նրանք գիտակցորեն ընտրեն իրենց ապագա մասնագիտությունը։

Այս գործում արդեն պետք է ընդգրկվեն ո՛չ միայն մանկավարժական կոլեկտիվները՝ դպրոցում ունեցած իրենց հնարավորություններով (առաջին հերթին՝ ուսումնական արհեստանոցներով ու լաբորատորիաներով), այլև կուսակցական, կոմերիտական, հասարակական կազմակերպությունները, ակումբները, արտադրական ձեռնարկությունները, կոլտնտեսությունները, սովխոզները, ամբողջ հասարակությունը։ Այս ասպարեզում զգալի անելիքներ ունի «Գիտելիք» ընկերությունը։

Պրոպագանդայի ձևերը բազմազան են— դասախոսություններ, զրույցներ, կոնսուլտացիաներ, էքսկուրսիաներ, հանդիպումներ, արտադրական պրակտիկա, հանրօգուտ աշխատանք, ցուցադրական միջոցներ՝ թանգարաններ, ցուցահանդեսներ, ստենդներ, մամուլ, ռադիո, հեռուստատեսություն։ Այստեղ, անշուշտ, վերանում են մասնագիտական կողմնորոշման նպատակով տարվող աշխատանքների առաջին և երկրորդ շրջանների սահմանները։ Մասնագիտությունների պրոպագանդմանը մեծ չափով կարող են օգնել հրատարակչական մարմինները՝ հրատարակելով մասսայական բրոշյուրներ տարբեր մասնագիտությունների վերաբերյալ։

Մասնագիտական կողմնորոշման հարցերի գիտական մշակմամբ պետք է զբաղվեն նաև բուհերի մանկավարժական ամբիոնները, մանկավարժական գիտությունների գիտահետազոտական ինստիտուտը, ակադեմիայի համապատասխան ինստիտուտները։

Մի քանի խոսք գյուղական վայրերում այս ուղղությամբ տարվելիք աշ-

խատանքների մասին։ ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումը նշեց, որ գյուղատնտեսությունն ավելի ու ավելի է հագենալու տեխնիկայով։ Գյուղատնտեսության բոլոր ճյուղերի կոմպլեքսային մեքենայացմամբ գյուղատնտեսական աշխատանքը դառնում է արդյունաբերական աշխատանքի տարատեսակը, աստիճանաբար վերանում են քաղաքի ու գյուղի տարբերությունները։ Ուստի, փոխվում են գյուղական մասնագետների պատրաստման եղանակները։ Գյուղական կադրերի պատրաստման հիմքերը դրվում են դպրոցում, ուր ձևավորվում է երեխայի կոմունիստական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։ Դպրոցի լավ աշխատանքը պետք է նպաստի այն բանին, որ երիտասարդությունը սիրի գյուղատնտեսությունը։ Սակայն, չպետք է բավարարվել միայն դպրոցով։ Գյուղական կազմակերպությունները պետք է կիրառեն մասնագիտական կողմնորոշմանը նպաստող բոլոր ձևերը։ Կոլտնտեսականների համամիութենական III համագումարին տված իր զեկուցման մեջ ընկ. Դ. Ս. Պոլյանսկին ասաց. «Հարկավոր է փոքր տարիքից գյուղական դպրոցականներին սեր պատվաստել գյուղատնտեսության նկատմամբ, պարզաբանել նրանց գյուղատնտեսական աշխատանքի վիթխարի նշանակությունը, սովորեցնել ուրախանալ այդ աշխատանքով... չէ՞ որ հայրենասիրությունը, հայրենիքի սերը յուրաքանչյուրի մեջ սկսվում է իր հարազատ վայրերից...»։

Հարկավոր է գործադրել նաև խրախուսական միջոցներ։ Բազմաթիվ խոշոր սովխոզներում, երբ միջնակարգն ավարտած երիտասարդն անցնում է մշտական աշխատանքի, միանվագ, անվերադարձ նրան տրվում է երեքից չորս հարյուր ռուբլի։ Ուշագրավ է Կուրգանի մարզի «Восход» կոլտնտեսության փորձը։ Նախագահը դպրոցի դիրեկտորի հետ ծրագրել է անելիքները երիտասարդության շրջանում տարվող մասնագիտական կողմնորոշման նպատակով։ Գյուղատնտեսության ոլորտում աշխատանքի անցնող շրջանավարտները վարձատրվում են նորմայից 15 տոկոսով ավելի։

Գյուղում լայնորեն պետք է տարածել ուսումնա-արտադրական բրիգադների փորձը, դրանց համար ստեղծել կուլտուր-կենցաղային լավագույն պայմաններ, դրանք ապահովել նյութերով, մեքենաներով, հող տրամադրել դպրոցականներին գործնական աշխատանքների համար, որը կօգնի նրանց՝ կապվելու հողին, գյուղին, գյուղատնտեսությանը։ Մինչդեռ մեր հանրապետությունում այս գործի դրվածքն անբավարար է։ Գյուղական դպրոցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում լավ կլինի ստեղծել մասնագիտական կոնսուլտացիոն կետեր։

Բավական է, որքան հայտարարեցինք պատանիներին ու աղջիկներին, թե՝ ձեր առջև բաց են բոլոր դռները։ Պետք է ցույց տալ այդ բաց դռները և, եթե դեռ կան փակ դռներ, տալ դրանց բանալին։





Բ. Խ. ԱՄԻՐԽԱՆՅԱՆ

# ԻՐԱՎՈՒՆՔՆ ՈՒ ՕՐԻՆԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ

Անչափ մեծ են իրավունքի դերն ու նշանակությունը հասարակական կյանքում։ Մարքսիզմի հիմնադիրներն իրավունքը բնութագրել են որպես տիրող դասակարգի օրինականացված կամք, որի բովանդակությունը որոշվում է նույն դասակարգի կյանքի նյութական պայմաններով (տե՛ս Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, 1960, էջ 56)։

Բուրժուական իրավագետները ճգնում են հիմնավորել, թե իբր պետության սահմանած իրավանորմերը ոչ մի առնչություն չունեն իշխող դասակարգի կամքի հետ, ժողովրդի կամքի արդյունքն են։ Նման մոտեցման նպատակն է՝ քողարկել իրավանորմերի, իրավունքի դասակարգային էությունը։

Ակներև է, որ միևնույն դասակարգի բոլոր ներկայացուցիչները միատեսակ մտածել ու գործել չեն կարող։ Առանձին անհատներ հաճախ արտահայտում ու պաշտպանում են տարբեր, իսկ երբեմն նույնիսկ հակասական հասկացություններ։ Այստեղից պարզ է, որ առանձին ցանկությունները չեն կարող դրվել իրավունքի, իրավանորմերի հիմքում, քանի որ դրանք ոչ թե ողջ դասակարգի, այլ դրա առանձին ներկայացուցիչների ցանկություններն են։ Դրանք կարող են դրվել դասակարգային քաղաքականության հիմքում միայն այն դեպքում, երբ ունեն ընդհանուր նշանակություն, արտահայտում են ողջ դասակարգի կամ վերջինիս հիմնական մասի կամքը։

Իրավունքն ու պետությունը կոչված են պահպանելու և ամրապնդելու գոյություն ունեցող կարգը, այն ամենը, ինչ անհրաժեշտ է իշխող դասակարգին։ Վլադիմիր Իլյիչը նկատել է, որ կեղեքման վրա հիմնված հասարակության մեջ իրավունքը մի գործիք է իշխող դասակարգի ձեռքին, իր դասակարգային շահերն ու ձգտումներն իրագործելու, աշխատավորների ենթակայությունն ապահովելու, իր տիրապետությունը հավերժացնելու համար։ Անտագոնիստական բոլոր հասարակարգերում իրավունքը պաշտպանել է մասնավոր սեփականատիրական հարաբերությունները։ Ստրկատիրական, ֆեոդալական և արդի բուրժուական իրավունքների հիմնական նպատակը շահագործվող դասակարգերին հնազանդ վիճակում պահելն է, շահագործման օրինականացումը։ Բացահայտելով ֆեոդալական ու բուրժուական իրավունքների ընդհանրությունն ու տարբերությունը, Լենինը գրել է. «Ճորտ գյուղացիներն աշխատում էին կալվածատերերի համար, և կալվածատերերը նրանց պատժում

էին։— Բանվորներն աշխատում են կապիտալիստների համար, և կապիտալիստները նրանց պատժում են։— Ամբողջ տարբերությունը միմիայն այն է, որ առաջ անազատ մարդուն խփում էին մահակով, իսկ հիմա նրան խփում են ռուբլով» (Երկեր, հ. 2, էջ 24)։

Կապիտալիստական աշխարհում քաղաքական տիրապետության ձգտող պրոլետարիատը բացասում է բուրժուական իրավունքը, մերկացնում նրա շահագործողական էությունը։

Պատմությունից հայտնի է, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո, որոշ տեսաբաններ այն թեզն էին առաջ քաշում, թե սոցիալիստական հասարակարգում նոր իրավունք ստեղծելու անհրաժեշտություն չկա, իբր իրավունքն անհամատեղելի է սոցիալիստական հասարակարգի հետ, այն հատուկ է միայն շահագործողական հասարակարգերին։

Նման դիրքի վտանգավորությունն ակնհայտ էր։ Անհնարին էր, որ տապալված հին հասարակարգի բոլոր անդամներն անվերապահորեն ղեկավարվեին սոցիալիստական պետության օրենքներով, անթերի կատարեին իրենց քաղաքացիական պարտականությունները։

Նոր իրավունքի, նոր իրավական նորմերի անհրաժեշտության բացասումը նշանակում էր քաղաքական տիրապետության հասած պրոլետարիատին զրկել ամենակարևոր զենքից, թշնամական տարրերի, հանցագործների նկատմամբ հարկադրանք կիրառելու հնարավորությունից և, դրանով իսկ, տեղիք տալ անօրինականության, կամայականության, որոնք չէին կարող բացասական նշանակություն չունենալ հեղափոխության գործի համար։

«Պետություն և հեղափոխություն» աշխատության մեջ Լենինը հանգամանորեն պարզաբանեց, որ «...առանց ուտոպիզմի մեջ ընկնելու չի կարելի կարծել, թե տապալելով կապիտալիզմը, մարդիկ միանգամից կսովորեն աշխատել հասարակության համար առանց իրավունքի որևէ նորմի...» (Երկեր, հ. 25, էջ 608)։ «Մենք ծիծաղելի ուտոպիստներ կլինեինք, եթե երևակայեինք, որ նման մի խնդիր իրագործելի է բուրժուազիայի իշխանության անկման հաջորդ օրը, այսինքն՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու առաջին ստադիայում... Առանց հարկադրանքի այդպիսի խնդիրը միանգամայն անիրագործելի է» (Երկեր, հ. 27, էջ 257—258)։

Լենինյան այս ցուցումը մեծ նշանակություն ունեցավ երիտասարդ սովետական պետության համար։ Դա հնարավորություն ընձեռեց ճիշտ կողմնորոշվելու, ընտրելու առաջընթացի խելացի ուղի, մերկացնելու իրավունքի անհրաժեշտությունը ժխտողներին, ջախջախելու նրանց կազմալուծիչ փորձերը, անվերապահորեն ստեղծելու իրավական նոր նորմեր՝ սոցիալիստական իրավունք, այն ի սպաս դնելու երկրի սոցիալիստական վերակառուցմանը, խափանելու տապալված դասակարգերի մնացորդների դիմադրությունը, ուղղելու անկարգապահ անձանց և հանցագործ տարրերին, ուղի հարթելու նոր հարաբերությունների անարգել զարգացման համար։

Ինքնըստինքյան պարզ է, որ իշխանությունը նվաճելուց հետո, անհնար էր անմիջապես ստեղծել ծավալուն օրենսդրություն։ Ուստի, հասարակական կյանքի հրատապ հարցերը կարգավորվում էին առանձին դեկրետներով։ Սակայն դեկրետներով կարող էին կարգավորվել միայն հանգուցային, առավել կարևոր հարցերը։ Հարկավոր էր անցնել օրենսդրական գործունեության և «այն էլ յոթ անգամ չափելով և նոր կտրելով»։ Այն ժամանակաշրջանում օրենսդրություն ստեղծելու գործի կազմակերպումն ու ղեկավարումը վերա-



պահված էին ՌՍՖՍՀ ժողկոմսովետին առընթեր բարձրագույն տնտեսական հանձնաժողովին և արդարադատության ժողովրդական կոմիսարիատին, ուր ստեղծված էր հատուկ օրենսդրական բաժին։ Դրանց հանձնարարված էր մշակել և ըստ պատկանելության համաձայնեցնել օրինագծերը։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո, երկրի էկոնոմիկայում առկա էին տարբեր կացութաձևեր։ Այս հանգամանքը ոմանց առիթ էր տալիս եզրակացնելու, թե կացութաձևերից բխող հարաբերությունները պետք է կարգավորվեն տարբեր իրավունքներով։ Օրինակ, սոցիալիստական կազմակերպությունների հարաբերությունները՝ վարչատնտեսական իրավունքով, մասնավոր հարաբերությունները՝ քաղաքացիականով և այլն։ Այդպիսի կուրսն, ամենայն հավանականությամբ, կմասնատեր, կհակադրեր տարբեր հարաբերությունները կարգավորող սովետական իրավունքի այդ երկու ճյուղերը։

Սովետական իրավունքն ի սկզբանե իր բովանդակությամբ ու նպատակներով սոցիալիստական իրավանորմերի ամբողջական համակարգ է։ Այնտեղ արտացոլված են նոր հասարակարգի սոցիալական իրականության բոլոր կողմերը, մարդկային հարաբերությունները։ Սոցիալիստական օրենսդրությունը հասարակական ու անձնական շահերի ներդաշնակության արտահայտությունն է, աշխատավոր դասակարգերի շահերի պաշտպանը։ Լենինը պահանջում էր ուշի-ուշով ուսումնասիրել, բազմակողմանի քննարկել օրինագծերը՝ մասնակից դարձնելով գիտակ, գործիմաց անձանց և հասնել այն բանին, որ օրինագծերը խելացի մշակվեն։

Այդ տեսակետից առանձնապես ուշագրավ է ՌՍՖՍՀ առաջին քրեական օրենսգիրքը կազմելու գործում Իլյիչի իմաստուն վերաբերմունքը և անչափ զգույշ մոտեցումը։ Նա հանգամանորեն ուսումնասիրել էր այդ օրենսգրքի նախագծի բոլոր հոդվածները, սկզբունքային դիտողություններ արել դրանցից շատերի վերաբերյալ, իսկ մի շարք հոդվածներ շարադրել նոր ձևով։

Հետաքրքրական է նկատել, որ միայն քաղաքացիական օրենսգրքի մշակման ու ընդունման կապակցությամբ Լենինն այն ժամանակվա արդժողկոմ Դ. Ի. Կուրսկուն հղել է տասնյակ նամակներ։ «1. Արդժողկոմատը պետք է հետևի և ա ն ձ ա մ բ հսկի, թե հատկապես ո՛վ է պատասխանատու քաղաքացիական օրենսգրքի յուրաքանչյուր կարևոր բաժնի համար։

2. Անպայման վերցնել այն բոլորը, ինչ Արևմտաեվրոպական երկրների գրականության ու փորձի մեջ գոյություն ունի ի պաշտպանություն աշխատավորների։

3. Ջահմանափակվել դրանով (դա ամենագլխավորն է)։ Կուրորեն չհետևել արդգործժողկոմատին։ Չ հ ա ճ ո յ ա ն ա լ «Ե վ ր ո պ ա յ ի ն», այլ ավելի առաջ գնալ՝ «մ ա ս ն ա վ ո ր ի ր ա վ ա կ ա ն հ ա ր ա բ ե ր ու թ յ ու ն ն ե ր ի ն», ք ա ղ ա ք ա ց ի ա կ ա ն գ ո ր ծ ե ր ի ն պ ե տ ու թ յ ա ն մ ի ջ ա մ տ ու թ յ ու ն ն ու ժ ե ղ ա ց ն ե լ ու գործում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 233)։

Ինչպես հայտնի է, չնայած պարտության, իմպերիալիստական տերությունները չէին հրաժարվում երիտասարդ սովետական պետության դեմ դավեր լարելու իրենց թշնամական մտադրություններից։ Ուստի, ավելի ու ավելի հոխորտում էին չլատել նոր, սոցիալիստական պետության ուժերը, նրա նկատմամբ քայքայիչ գործունեություն ծավալել։ Դա, հատկապես, սուր արտահայտվեց Ջենովայի միջազգային կոնֆերանսում, որը գումարվել էր 1922 թ. ապ-

րիլին, երբ մեր երկիրն արդեն ձեռնամուխ էր եղել խաղաղ շինարարության, ինչպես նաև նոր օրենսդրության ստեղծման։

Այդ ժամանակ Սովետական Ռուսաստանը գտնվում էր տնտեսական ծանր վիճակում։ Օտարերկրյա իմպերիալիստական տերությունները փորձում էին օգտագործել ստեղծված իրադրությունը և սոցիալիստական պետությանը պարտադրել ստրկացուցիչ համաձայնության պայմաններ։ Այդ նպատակով նրանք պահանջում էին վճարել ցարական Ռուսաստանի, ինչպես պատերազմի ընթացքում, այնպես էլ դրանից շատ առաջ ունեցած պարտքերը, օտարերկրյա տերերին վերադարձնել ազգայնացված ձեռնարկությունները և այլն։ Դրանով միտում էին ավելի սրել երկրի տնտեսական դժվարությունները և հասնել մասնավոր հարաբերությունների աշխուժացմանը, սոցիալիզմի մեջ կապիտալիզմի ներածմանը։

Բուրժուական ազդեցության ներթափանցման վտանգը լիովին հաղթահարելու համար Լենինը համապատասխան միջոցներ էր գործադրում նաև ներպետական կյանքի ոլորտում։ Օրինակ, քաղաքացիական օրենսգիրք կազմողներին նա պարտավորեցնում էր աչալուրջ լինել, «Հատկապես Ճենովայի նախօրյակին չկեղծել, փոքրոգություն չանել, ձեռքից բաց չթողնել «քաղաքացիական» հարաբերություններին պետության միջամտությունն ը ն դ լ ա յ ն ե լ ո ւ ամենափոքր հնարավորություններն անգամ» (Երկեր, հ. 33, էջ 233)։

Լենինի այս դիտողության մեջ վերստին ընդգծվել է նրա բացասական վերաբերմունքը մասնավոր սեփականության նկատմամբ, հասարակականն օրինականացնելու անհրաժեշտությունը։

Քաղաքացիական օրենսդրություն ստեղծելու գործում առանձնապես կարևոր է Լենինի այն ցուցումը, որ մեր օրենսգիրքը չդառնա արևմտաեվրոպական բուրժուական օրենսգրքերի պատճենը։ Օրենսգիրք կազմողներին նա խորհուրդ էր տալիս ու պահանջում՝ մշակել իրավունքի այնպիսի նորմեր, որոնք պաշտպանեն ու ամրապնդեն բանվոր դասակարգի, աշխատավորության շահերը։

Հեշտ չէր խորտակել անցյալի արտադրահարաբերությունները, պետական-կառավարման ապարատը, օրենսդրությունը և ստեղծել նորը։ Նախասոցիալիստական հեղաշրջումների պայմաններում դա լուրջ արգելքներ չէր հարուցում, որովհետև, որպես կանոն, շահագործման մի ձևը փոխարինվում էր մեկ ուրիշով։ Չնայած դրան, ֆեոդալական կարգերը Ֆրանսիայում տապալելուց հետո բուրժուական առաջին օրենսգիրքը հրապարակ եկավ 15 տարի անց։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ոչ մի բանով նման չէր նախորդ հեղաշրջումներին, քանի որ այն ոչ թե կատարելագործեց, այլ առհասարակ ոչնչացրեց շահագործման բոլոր ձևերը։ Այս պայմաններում հասկանալի է, պետք է ստեղծվեր միանգամայն նոր, սոցիալիստական օրենսդրություն։ Ժամանակի առումով դա կարճ տևեց։ Այդ առթիվ սովետների համառուսաստանյան արտակարգ VI համագումարի ընդունած որոշման մեջ ասված է. «Հեղափոխական պայքարի մի տարվա ընթացքում, Ռուսաստանի բանվոր դասակարգը մշակեց Ռուսաստանի Սովետական Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետության օրենքների հիմունքներ... Ռուսաստանի բանվորների ու գյուղացիների իշխանության հետագա զարգացման ու ամրապնդման համար» (СУ РСФСР 1918 г. № 90, стр. 908)։

Նշված հիմունքների ընդունումից հետո շուտով մշակվեցին նաև քրեա-



կան ու քաղաքացիական (նյութական ու դատավարական), հողային, աշխատանքային օրենսգրքեր և այլն։

Հանդես գալով համառուսաստանյան կենտգործկոմի IX գումարման IV սեսիայում, որն ի թիվս մյուսների ընդունել էր նաև աշխատանքի օրենսգիրքը, Վլադիմիր Իլյիչը խորին գոհունակությամբ նշեց, որ «Սա սովետական իշխանության հսկայական նվաճումն է, որ մի այնպիսի ժամանակ, երբ բոլոր երկրները զինվում են բանվոր դասակարգի դեմ, մենք հանդես ենք գալիս մի օրենսգրքով, որը հաստատապես սահմանում է աշխատանքային օրենսդրության հիմունքները, ինչպես, օրինակ, 8-ժամյա աշխատանքային օրը» (Երկեր, հ. 33, էջ 464)։

Սակայն օրենսգրքերի առկայությունը դեռևս այն ամենը չէ, ինչ անհրաժեշտ է երկրի առջև ծառացած խնդիրները հաջողությամբ լուծելու համար, որովհետև այդ խնդիրների լուծման վճռական պայմանը ոչ թե լավ մշակված օրենսգրքի, ծավալուն օրենսդրության առկայությունն է, այլ դրանց ճշտիվ կիրառումը։ Հակառակ դեպքում, որքան կատարյալ լինի օրենսգիրքը, միևնույն է կդառնա հասարակ թղթի կտոր և ոչնչով չի խթանի այն նպատակի իրագործմանը, որի համար դա ստեղծվել է։

Բացառիկ կարևոր նշանակություն տալով դրան, Լենինը պահանջում էր լիակատար միասնություն ստեղծել կենտրոնական ու տեղական մարմինների գործունեության մեջ, մասնավորապես՝ օրենքները ճշգրիտ կիրառելու գործում։ Ըստ որում, Իլյիչն այդ հարցին անդրադարձել է բազմիցս։ Բանվորների, գյուղացիների ու զինվորների դեպուտատների սովետների գործադիր կոմիտեների նախագահներին հասցեագրած իր մի հեռագրում (1921 թվականի հունիսի 4-ին) Վլադիմիր Իլյիչը նշել է, որ անթույլատրելի է այնպիսի որոշումների ընդունումը, որոնք իրենց էությամբ հակասում են կենտրոնական մարմինների ընդունած համապատասխան ակտերին։

Սակայն գործի հաջողությունը միայն կենտրոնի ու տեղերի ընդունած ակտերի միասնությունն ապահովելը չէր, այլ դրանց անթերի կիրառումը։ «...օրինականությունը չի կարող լինել Կալուգայի ու Կազանի օրինականություն, այլ պետք է լինի միասնական համառուսաստանյան և նույնիսկ միասնական՝ Սովետական հանրապետությունների ամբողջ ֆեդերացիայի համար» (Երկեր, հ. 33, էջ 430)։ Օրենքը պետք է կիրառվի հավասարապես, այլապես տեղիք կտրվի խտրականության, կամայականության, որոնք բնորոշ են մասնավոր սեփականության վրա հիմնված բոլոր հասարակարգերին։

Լենինը բազմիցս ընդգծել է, որ սովետական օրենքների ամենաաննշան խախտումը, ամենաչնչին անկարգությունը անմիջապես օգտագործում են թշնամական ուժերը։ «Անհրաժեշտ է պահպանել խստագույն հեղափոխական կարգ, անհրաժեշտ է սրբությամբ պահպանել սովետական իշխանության օրենքներն ու առաջադրանքները և բոլորով հետևել դրանց կատարմանը» (Երկեր, հ. 29, էջ 691)։ Դրա հետ մեկտեղ նա նախազգուշացնում էր, որ «Ամենափոքր օրինազանցությունը, սովետական կարգի ամենափոքր խախտումն արդեն սողանցք է, որ անմիջապես կօգտագործեն աշխատավորների թշնամիները,— մի կեռ է Կոլչակի և Դենիկինի հաղթանակների համար» (նույն տեղը, էջ 692)։

Սոցիալիստական օրինականության պահպանումը, օրենքների ու դեկրետների անխախտ կիրառումը, օրինազանցներին պատասխանատվության ենթարկելը պետական կարևոր սկզբունքներ են։ Միայն դրանց կիրառման մի-

ջոցով հնարավոր է իրագործել նոր հասարակարգի կառուցման խնդիրները։

Լենինը գտնում էր, որ անհրաժեշտ է անողոք լինել ժողովրդի, սոցիալիզմի, աշխատավորության թշնամիների նկատմամբ։ «Ոչ թե կյանքի, այլ մահու պատերազմ հարուստներին ու նրանց պնակալեզներին, բուրժուական ինտելիգենտներին, պատերազմ՝ խաբեբաներին, պորտաբույծներին ու խուլիգաններին, թե՛ մեկը և թե մյուսները, թե՛ առաջինները և թե վերջինները՝ հարազատ եղբայրներ են, կապիտալիզմի զավակներ...» (Երկեր, հ. 26, էջ 500)։

Ակնհայտ է, որ սովետական օրենքներն անշեղ կիրառելու, սոցիալիստական օրինականությունն ամրապնդելու գործում շատ որոշակի տեղ ունեն սովետական դատարանները։ Նրանք պատժում են օրինազանցներին։

Սովետական պետության գոյության սկզբնական շրջանում դատարանի խնդիրն էր պայքարել տապալված դասակարգերի մնացորդների դեմ, որոնք գործի էին դնում ամեն միջոց՝ վերականգնելու իրենց նախկին տիրապետությունը, արտոնությունները։ Այս առումով Լենինը գրել է. դատարանների վրա, եթե նրանք իրոք կազմակերպված են սովետական հիմնարկությունների սկզբունքով, դրվում է մի այլ, ավելի կարևոր խնդիր։ Այդ խնդիրն է՝ ապահովել աշխատավորության կարգապահության և ինքնակարգապահության ամենախիստ գործադրումը։ «Մեզ հարկավոր է պետություն, մեզ հարկավոր է հարկադրանք։ Պրոլետարական պետության այդպիսի հարկադրանքն իրագործող օրգանը պետք է լինեն սովետական դատարանները։ Եվ նրանց վրա դրվում է բնակչությանը աշխատանքային կարգապահության ոգով դաստիարակելու հսկայական խնդիրը... Միայն այդպիսի դատարանները կարող են... հասնել այն բանին, որ կարգապահության և ինքնակարգապահության ցանկությունները չմնան մերկ ցանկություններ» (Երկեր, հ. 27, էջ 258)։

Սովետական պետության ու իրավունքի զարգացմանը մեծապես նպաստեցին կուսակցության նոր ծրագիրը, ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները։ Այժմ խնդիր է դրվում է՛լ ավելի բարելավել պետության օրենսդրական մարմինների գործունեությունը, ընդլայնել հասարակական կազմակերպությունների և աշխատավորների մասնակցությունը սովետական պետական ներկայացուցչական մարմինների օրենսդրական գործունեությանը։ Պրակտիկա է դարձել աշխատավորների մասնակցությունը՝ համապետական ու տեղական նշանակություն ունեցող օրենքների և որոշումների նախագծերի քննարկմանը։ Չափազանց կարևոր է նրանց ակտիվ գործունեությունը սոցիալիստական օրինականության խստիվ պահպանման, իրավակարգի ամեն տեսակ խախտումների, հանցագործությունների և դրանք ծնող պատճառների վերացման գործում։ Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս ժողովրդական վերահսկողությանը։ Այն դիտվում է որպես օրինականության վերահսկողության իրականացման, ժողովրդական լայն մասսաներին ներգրավելու ազդու միջոց։

Մեծ է սովետական իրավունքի, սոցիալիստական օրինականության դերը հասարակության կոմունիստական դաստիարակության գործում։ Այստեղից էլ այժմ հատուկ նշանակություն ունեն մեր իրավակարգի ամրապնդումը, իրավական նորմերի կատարելագործումը, որոնք նպաստում են կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանն ու օրինականության ամրապնդմանը։

Ա. Կ. ԱՅՐՈՒՄՅԱՆ

# ԳԻՆԸ ԵՎ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ[1]

Գները, որպես գյուղատնտեսության զարգացման կարևորագույն տնտեսական լծակ, նպաստում են ապրանքային արտադրության այս կամ այն ճյուղի մասնագիտացմանը, աշխատավորների շահագրգռվածությանը և ժողովրդական տնտեսության ճյուղերի միջև ազգային եկամտի վերաբաշխմանը։

Պետական գների սահմանման հիմնական սկզբունքները պարզորոշ շարադրված են կուսակցության ծրագրում. «Գյուղատնտեսական արտադրանքի գնման գների և գյուղի համար նախատեսված արտադրամիջոցների թողարկման գների բնագավառում վարվող քաղաքականությունը պետք է հաշվի առնի ընդլայնված վերարտադրության շահերը ինչպես արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության մեջ և կոլտնտեսություններում անհրաժեշտ կուտակումների ստեղծումը։ Հարկավոր է, որ գնման գների մակարդակը կոլտնտեսություններին դրդի բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և նվազեցնելու արտադրական ծախսերը, քանի որ կոլտնտեսային եկամուտների բարձրացման հիմքը կազմում են գյուղատնտեսական արտադրանքի ավելացումը և նրա ինքնարժեքի իջեցումը» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, էջ 503—504)։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի (1965 թ.) որոշումներին համապատասխան պետությանը վաճառվող գյուղատնտեսական որոշ մթերքների գների բարձրացումը, մթերումների պլանավորման սիստեմի փոփոխությունները և այլ միջոցառումների կենսագործումը կարևոր նշանակություն ունեցան գյուղատնտեսական հանրային արտադրության զարգացման համար։

Գների հետագա կատարելագործման ասպարեզում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1970 թ. ձեռնարկած միջոցները զգալիորեն կբարձրացնեն կոլտնտեսությունների և սովխոզների շահագրգռվածությունը և գնագոյացման որոշ հարցեր վերլուծելիս գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման կարևորությունն ակնհայտ կդառնա։

Չնայած պետությանը վաճառվող գյուղատնտեսական տարբեր մթերքների գների հարաբերության բարելավմանը, աշխատանքի ծախսումների, ինքնարժեքի և գնման գների մեջ տարբերությունները զգալի են։

Խոսելով գյուղատնտեսական մթերքների գների հարաբերության մասին, պետք է հասնել դրանց հասարակական անհրաժեշտ ծախսումների մակար-

[1] Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.։

դակների մոտեցմանը, որն արժեքի օրենքի պահանջն է և հանգում է նրան, որ ապրանքների արտադրությունն ու փոխանակումը պետք է կատարվեն հանրային անհրաժեշտ ծախսումների հիման վրա։

Արժեքի մեջ չեն կարող հաշվի առնվել չարդարացված աշխատանքային ծախսումները և անհրաժեշտից ավելի ծախսված հանրային նյութերը։ Ապրանքի իրական արժեքը,— գրել է Մարքսը,— հանդիսանում է նրա ոչ անհատական, այլ հանրային արժեքը, այսինքն՝ իրական արժեքը չափվում է ո՛չ թե փաստորեն ծախսված աշխատաժամանակով, որը տվյալ առանձին դեպքում ծախսվել է ապրանքն արտադրողի կողմից, այլ այն աշխատաժամանակով, որն անհրաժեշտ է արտադրանքն արտադրելու համար։

Գների հարցի ճիշտ լուծումը, բոլորովին չի նշանակում շահութաբերության մակարդակի հավասարեցում, ինչպես այդ առաջարկում են որոշ տնտեսագետներ։ Այդ դեպքում գների դերը, որպես պետական ներգործող կարևորագույն տնտեսական լծակ, գյուղատնտեսության մասնագիտացման նկատմամբ կլիներ սահմանափակ և, ընդհակառակը, կխրախուսվեր բազմաճյուղ ոչ մասնագիտացված բնույթի տնտեսությունը։

Ապրանքային արտադրության և ապրանքադրամային հարաբերությունների պայմաններում մասնագիտացման խնդիրը հնարավոր չէ լուծել առանց գներին կապակցելու, ինչպես և անհնար է գների հարցը լուծել մասնագիտացման խնդրից անջատ։

Գների միջոցով առաջատար ճյուղերի առավել բարձր շահութաբերություն ապահովելու դեպքում, անհրաժեշտ է այլ ճյուղերի ապրանքային արտադրանքի նկատմամբ սահմանել այնպիսի գներ, որոնք ո՛չ միայն փոխհատուցեն արտադրության ծախսերը, այլև ապահովեն օպտիմալին մոտ զուտ եկամտի ստացումը։

Գյուղատնտեսական որոշ մթերքների արտադրության համար կոլտնտեսությունների ու սովխոզների կատարած ծախսերը գնման գների միջոցով չէին փոխհատուցվում կամ դրանց բոլոր կանալներով իրացումից ստացված արդյունքը ցածր շահութաբերություն է ապահովում։ Ինչպես սովխոզներում, այնպես էլ կոլտնտեսություններում, բարձր շահութաբերություն ապահովում են խաղողի, պտուղների, կարտոֆիլի և խորդենու արտադրությունը։

Հայկական ՍՍՀ-ում հանրային գյուղատնտեսական արտադրության ամբողջական շահութաբերությունը ցածր է. երեք տարիների (1965—1967 թթ.) միջինը կոլտնտեսություններում կազմել է 13, սովխոզներում՝ 16,7 տոկոս։ Ամբողջությամբ վերցրած, ժամանակակից գների պայմաններում, բուսաբուծության արտադրության համեմատական բարձր շահութաբերության ապահովման դեպքում, անասնապահությունն ընդհանուր առմամբ մնում էր վնասաբեր՝ կոլտնտեսություններում —17 տոկոս, իսկ սովխոզներում իրացումից ստացված արդյունքը մոտավորապես ծախսերի մակարդակին էր։ Կոլտնտեսային արտադրության մեջ յուրաքանչյուր տարվա վնասները, միջին թվով, կազմում էին մոտ 10 միլիոն ռուբլի, որոնք ծածկվում էին բուսաբուծությունից ստացված եկամուտների հաշվին։

Գյուղատնտեսության շահութաբերության բարձրացման պրոբլեմն, իհարկե, չի կարելի առնչել միայն գյուղատնտեսական մթերքների գների մակարդակին։ Կոլտնտեսությունների ու սովխոզների եկամուտների բարձրացման հիմնական ուղիներն են՝ հանրային տնտեսության զարգացումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և ինքնարժեքի իջեցումը։ Այս-



տեղ ռեզերվներն զգալի են։ Գլխավորը հանդիսանում է նյութական միջոցների արմատական փոփոխումը, արտադրության տեխնոլոգիայի կատարելագործումը, արտադրապրոցեսների (հատկապես, անասնապահության բնագավառում) կոմպլեքսային մեքենայացումը, հողերի ոռոգման և խոիգացիոն աշխատանքների ծավալը, հանքային պարարտանյութերի, թունաքիմիկատների կիրառումը և այլն։ Պետք է ձեռք առնվեն միջոցներ գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումը ու համակենտրոնացումն արագացնելու համար։

Խոսելով գյուղատնտեսական մթերքների գների հետագա կատարելագործման մասին՝ չի կարելի ճիշտ համարել դրանց կարգավորումը ըստ տնտեսության շահութաբերության, ինչպես այդ առաջարկում են որոշ տնտեսագետներ։ Շահութաբեր պետք է լինի բոլոր տեսակի ապրանքային արտադրանքի արտադրությունը։

1970 թվականին բանջարեղենի գնման գների բարձրացմամբ 15—20 տոկոս շահութաբերության հնարավորություն կստեղծվի։ Այս դեպքում Հայաստանում մոտակա 2—3 տարիներին էապես կընդլայնվի բանջարեղենի արտադրությունը, որը կբավարարի բնակչության և պահածոների արտադրության պահանջմունքները։ Այս տարվա մայիսի 1-ից պետությանը կոլտնտեսությունների, սովխոզների, պետական այլ ձեռնարկությունների և բնակչության կողմից վաճառվող կաթի գների բարձրացումը (Հայաստանում 230 ռուբլի մեկ տոննա բազիսային յուղայնությամբ, նախկին 154 ռուբլու դիմաց) էականորեն կնպաստի այդ մթերքի շահութաբերությանը։ Ոչխարի մսի և բրդի գնման նոր գները նույնպես կբարձրացնեն շահագրգռվածությունը ոչխարաբուծության զարգացմամբ։ Հանրային տնտեսությունները պլանից ավելի պետությանը վաճառած մսի, կաթի, բրդի և ձվի գնման գների 50 տոկոս հավելում են ստանում։

Այդ միջոցառումների հետ (ՍՄԿԿ ԿԿ մարտյան (1965 թ.) պլենումի որոշումներին համապատասխան) խոշոր եղջերավոր անասունների և խոզի մսի մթերման գները բարձրացել են, որի շնորհիվ պետական բյուջեի հաշվին ճեղքվածքը ծածկվում է։ Այս դեպքում անասունների մսի գնման գների բարձրացման մասին խոսելն ավելորդ է։ Չմոռանանք, որ խոշոր եղջերավոր անասունների և խոզի մսի գնման գների առավել բարձրացումից երկրի մի շարք շրջանների հետ միասին զգալի չափով շահել է նաև Հայաստանը։ Մսի արտադրության շահութաբերությունը կբարձրանա անասնատեսակները պետությանը վաճառելու նոր պայմանների շնորհիվ և, հատկապես, արտադրությունն առավել կատարելագործված վարելիս։ Հետևապես, խիստ կարևոր է կապիտալ ներդրումների և բանկային վարկերի միջոցով պետության օգնությունը՝ կարճ ժամկետներում բտման պետական և միջկոլտնտեսային ձեռնարկություններ կազմակերպելու համար։

Հայաստանում, ինչպես և երկրի շատ շրջաններում, թռչնաբուծությունը վնասաբեր էր։ 1969 թ. թռչունի մսի գնման գների բարձրացումը դրական արդյունք տվեց։ Սակայն շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում, նախկինի նման, վնասաբեր է ձվի արտադրությունը, և թռչնաբուծությունը բարձր շահութաբերությամբ աչքի չի ընկնում։ Թռչնաբուծության շահութաբերությունը հնարավոր է բարձրացնել պետական և միջկոլտնտեսային խոշոր թռչնաբուծական ֆաբրիկաների շինարարությամբ, միաժամանակ թռչնաբուծությունը համակենտրոնացնելով համապատասխան պայմաններ ունեցող տնտեսություններում։

Ձեռնարկած և խորհուրդ տրվող միջոցներից բացի, հարկավոր է գտնել հնարավորություններ մեքենաների, սարքավորումների, պահեստամասերի, խտացրած կերի գների իջեցման և արտադրական շենքերի շինարարության էժանացման համար։

Գյուղատնտեսական մթերքների գների բարձրացման տարբերությունը մարվում է պետական բյուջեի հաշվին։ Դրանով ապահովվում է բարձր ծախսումներով արտադրվող մի շարք մթերքների արտադրությունը խթանելու հանգամանքը։ Այսպիսով, գյուղատնտեսության մեջ կապահովվի ճյուղային կառուցվածքի զարգացման համաչափությունը։

Գյուղատնտեսական տարբեր մթերքների պետական գների հարաբերությունների հետագա կատարելագործումը կարող է իրականացվել առանց պետական բյուջեից լրացուցիչ միջոցների հատկացման՝ Սովետական Միության տարբեր շրջաններում առանձին մթերքների նկատմամբ գների առավել ճիշտ դիֆերենցացման միջոցով։ Նման մեթոդը հնարավորություն կընձեռի բարելավելու գնագոյացման պրակտիկան, թույլ չտալով երկրի որոշ շրջաններում չարդարացված բարձր եկամուտներ ստեղծել՝ մյուս շրջանների արտադրության ցածր շահութաբերության պայմաններում։ Պետական գների կատարելագործման նման մեթոդի դեպքում կապահովվի գյուղատնտեսության մեջ ազգային եկամտի առավել ճիշտ բաշխումը։

Գյուղատնտեսության վերարտադրության պրոցեսում տնտեսական գործոնների հետ բացառիկ նշանակություն ունեն բնական պայմանների ազդեցությունը։ Գյուղատնտեսական արտադրության արդյունավետության մակարդակի չափազանց մեծ դիֆերենցացումը պայմանավորված է նաև գյուղատնտեսական արտադրանքի նկատմամբ ստեղծված գների հարաբերությամբ։ Այդ իսկ պատճառով գյուղատնտեսական մթերքների պետական գների հետագա կատարելագործման համար արտադրության տերիտորիալ պայմանները հաշվի առնելը և տնտեսական այլ միջոցներ օգտագործելը օբյեկտիվորեն անհրաժեշտ են։ Խոսքը վերաբերում է ո՛չ միայն գյուղատնտեսական մթերքների գների առավել լավ հարաբերության սահմանմանը, այլև դրանց դիֆերենցացմանը՝ հաշվի առնելով արտադրության տարբեր պայմանները։

Մեր կարծիքով, որոշ ապրանքային արտադրանքի նկատմամբ բնակատնտեսական խոշոր շրջաններում ըստ գոտիների գների սահմանումը առավել ճիշտ է արտացոլում հասարակական անհրաժեշտ աշխատանքի ծախսումները և գյուղատնտեսական մթերքների արտադրամիջոցները։ Այս դեպքում կստեղծվեն բոլոր ճյուղերի շահութաբերությունն ապահովող առավել ռեալ պայմաններ։ Անկասկած, չի կարելի ընդունել, որ որոշ հիմնական մթերքների համար ներգոտիական գնման գների սահմանումը լրիվ կվերացնի կոլտնտեսությունների դիֆերենցացումն ըստ գյուղատնտեսական արտադրության մակարդակի։ Այդ բարդ խնդիր է։ Սակայն ըստ միկրոշրջանների գների դիֆերենցման դրական դերը միանգամայն ակներև է։ Հայտնի է, գյուղատնտեսական մթերքների գների ներգոտիական դիֆերենցացման անցյալի փորձը։ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումի որոշումից հետո այն կիրառվում է մի շարք հանրապետություններում, մարզերում և երկրամասերում։

ՍՄԿԿ ԿԿ և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1970 թ. մարտի 30-ի որոշմամբ, ելնելով սահմանված գներից, հանրապետություններին իրավունք է տրվում դիֆերենցացնել անասունների, կաթի գները, որը և ցույց է տալիս այդ հարցերի լուծման ուղիները։



Կոլտնտեսությունների ու սովխոզների վերջին մի քանի տարիների տարեկան հաշվետվությունների տվյալներից երևում է, որ խաղողի արտադրության շահութաբերությունն Արարատյան դաշտավայրի շրջանների տնտեսություններում հասնում է 65, Նոյեմբերյանում՝ 84, Մեղրիում՝ 128 տոկոսի։ Մինչդեռ Աշտարակում այն իջնում է մինչև 34, Իջևանում՝ 2 տոկոսի։ Այն շրջաններում, որտեղ գյուղատնտեսության մեջ խաղողագործությունը համեմատաբար նոր բնագավառ է և զարգացման համար նպաստավոր պայմաններ ունի, շահութաբերության մակարդակը, ելնելով արտադրության պայմաններից, զգալիորեն ցածր է։ Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է խաղողի գների դիֆերենցացումը կատարել հանրապետության ներսում, այն հաշվով, որպեսզի բոլոր շրջաններում ապահովվի շահութաբերությունը։

Գների առումով հանրապետությունում պետք է ունենալ երկու կամ երեք գոտիներ. և միկրոգոտիներում խմբավորվեն այն վարչական շրջանները, որոնք մեկ կամ մի քանի ապրանքային արտադրանքի նկատմամբ ունեն արտադրության մոտավորապես միանման պայմաններ։ Անհրաժեշտ է նաև գյուղատնտեսական որոշ արտադրանքի նկատմամբ սահմանել սեզոնային գներ։ Հայտնի է, որ գյուղատնտեսական արտադրությունն ունի սեզոնային բնույթ և այդ հանգամանքը գների սահմանման ժամանակ չի կարելի հաշվի չառնել։ Օրինակ, կաթի ինքնարժեքն աշնանը և ձմռանը ավելի բարձր է, քան ամռանը։ Հետևաբար, գները պետք է դիֆերենցացվեն ըստ սեզոնի, ինչպես այդ արվում է երկրի որոշ շրջաններում։ Դա կոլտնտեսությունների ու սովխոզների համար կստեղծի կաթի համաչափ արտադրության և պետությանը վաճառելու տնտեսական շահագրգռվածություն։

Գյուղատնտեսական որոշ արտադրանքի գների դիֆերենցացումն ըստ տարվա սեզոնների, կարող է կենսագործվել գնման և հանձնման գների խրախուսական հատուկ հավելումներով։

Կոլտնտեսություններում ստեղծվող զուտ եկամուտների որոշ մասի վերաբաշխման և արտադրության ոչ միանման պայմաններում գտնվող տնտեսությունների զարգացման առավել հավասարաչափ տնտեսական պայմանների ստեղծման համար գների հետ մեկտեղ մեծ է եկամտահարկի դերը։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի որոշումներին համապատասխան կենսագործվում է կոլտնտեսություններից եկամտահարկի գանձման տնտեսապես հիմնավորված սիստեմ։ 1966 թվականից եկամտի համար հարկադրվում է կոլտնտեսությունների միայն զուտ եկամուտը՝ 15 տոկոսից բարձր շահութաբերության մակարդակով։ Կոլտնտեսությունների եկամտահարկի նոր սիստեմի պայմաններում աշխատանքի փորձը ցույց տվեց դրա առավել դիֆերենցացման անհրաժեշտությունը։ Եկամտահարկի սիստեմի հետագա կատարելագործման պահանջն ընդգծվել է նաև ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումում։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆԸ

Զ. Տ. ՊԱՊՅԱՆ

ՀԿԿ Ստեփանավանի շրջկոմի քարտուղար

*Անցած կես դարում անճանաչելիորեն վերափոխվել է Ստեփանավանի շրջանը, առաջընթաց քայլ կատարել տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզներում։ Արդյունաբերության ու գյուղատնտեսության վերելքի շնորհիվ բարձրացել է մեր մարդկանց կենսամակարդակը, արագացել նրանց սոցիալական առաջադիմությունը։*

*Գյուղական բնակավայրերում հնի հետքն անգամ չի մնացել։ Նախկին հողածածկ խրճիթների փոխարեն ամենուրեք կառուցվել են գեղեցիկ առանձնատներ, կատարվել են բարեկարգման լայն աշխատանքներ։ Բոլոր բնակավայրերն ունեն իրենց դպրոցները, ակումբ-գրադարանները, առևտրական օբյեկտները, մեծ մասը՝ կենցաղային սպասարկման տաղավարներ։ Կուրթան, Գյուլագարակ, Ագարակ գյուղերում գործում են հիվանդանոցներ ու դեղատներ, բոլոր գյուղերում՝ բուժկետեր։*

*Գյուղի աշխատավորների կենսամակարդակի բարձրացման, կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման և սոցիալական առաջադիմության հարցերը միշտ էլ արժանացել են կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությանը։ Նրանց միջամտությամբ ու ղեկավարությամբ անցած ժամանակաշրջանում լուծվել են բազմազան խնդիրներ՝ կապված գյուղական բնակավայրերի զարգացման հետ։ Վերցնենք թեկուզ կենցաղային սպասարկման հարցերը։ Շատ տհաճ երևույթ էր, երբ հեռավոր գյուղերից մարդիկ գալիս էին շրջկենտրոն կամ հարևան գյուղը՝ բաղնիքից, վարսավիրանոցից, կոշիկի նորոգման ու կարի արհեստանոցներից օգտվելու համար։ Կուսշրջկոմը ժամանակին անդրադարձավ այդ խնդրին և ապահովեց դրա լուծումը։ Այժմ բոլոր գյուղերն ունեն վարսավիրանոց, կոշիկի նորոգման արհեստանոց, շատ բնակավայրերում ընդունվում են կարի անհատական պատվերներ։ Վերջին երկու տարում բաղնիքներ կառուցվեցին Գյառգյառ, Ագարակ, Գյուլագարակ և այլ գյուղերում։ Շրջանային կենցաղային սպասարկման կոմբինատը տարեցտարի ընդլայնում է իր ծառայության ոլորտը։ Կոմբինատի շրջիկ տաղավարը լինում է ոչ միայն գյուղերում, այլև կոլտնտեսությունների ու սովխոզների ամառանոցներում։*

*Ժողովրդական կրթության ու առողջապահության տեսակետից Ստեփանավանի շրջանն այժմ պատշաճ տեղ է գրավում հանրապետությունում։ Մինչև հեղափոխությունը շրջանում եղել են մի քանի տարրական դպրոց, իսկ հիմա միայն գյուղական բնակավայրերում գործում են 8 միջնակարգ, 8 ութամյա և երկու տարրական դպրոց։ Դրանք ապահովված են հարմարավետ շենքերով, մատաղ սերնդի կրթության ու դաստիարակության անհրաժեշտ պայմաններով։*

*Հանրային արտադրության անշեղ աճին ու սոցիալ-տնտեսական առաջադիմության արագացմանը զուգընթաց՝ գյուղական բնակավայրերում առաջ է եկել ինտելիգենցիայի մի ստվար շերտ, որի կազմում գերակշռողը բարձրագույն կրթությամբ տեղացի մանկավարժներն են ու գյուղատնտեսության մասնագետները։ Հենց նրանց վրա էլ հենվում են կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները՝ կուլտուրական առաջադիմության հետ կապված այս կամ այն խնդիրը լուծելիս։*

*Սոցիալական առաջադիմության ասպարեզում մեր ձեռք բերած հաջողությունները լուրջ քայլեր են քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարման ճանապարհին։ Այդ գործում կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հանդես են բերել որոշակի նախաձեռնություններ։ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակի նախապատրաստման առթիվ կուսշրջկոմը և կուսկազմակերպությունները դեռևս անցած տարվա վերջերին հանդես եկան մի նոր մտահղացմամբ։ Դա գյուղատնտեսական արտադրության պլանավորման զուգակցումն էր գյուղերի կուլտուրական առաջադիմության խնդիրների լուծման հետ։ Մշակված է և կիրառվում է գյուղերի սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլան, որը ներառնում է գյուղատնտեսության աշխատողների աշխատանքի ու հանգստի պայմանների, կուլտուրական ու կենցաղային սպասարկման բարելավման, նրանց մասնագիտական մակարդակի բարձրացման և այլ հարցեր։*

*Այժմ, երբ գյուղատնտեսության զարգացման ժամանակակից էտապը բնորոշվում է գիտատեխնիկական առաջադիմության բարձր տեմպերով, կոլտնտեսություններում և սովխոզներում հնարավոր են դառնում ո՛չ միայն ճիշտ պլանավորել և կարգավորել արտադրապրոցեսները, այլև զբաղվել սոցիալական առաջադիմության պլանավորմամբ, այսինքն՝ ապահովել մարդկանց նյութական բարեկեցության աճը, ստեղծել նպաստավոր պայմաններ գյուղի աշխատավորների բազմակողմանի զարգացման համար, ազդել նրանց հոգեբանության վրա։ Մեր շրջանում այդպիսի պլանավորման էությունն այն է, որ, արտադրության զարգացման և կատարելագործման համապատասխան, գյուղերում որոշվում են կազմակերպական և քաղաքական աշխատանքի խնդիրները, մշակվում են գործնական միջոցառումներ՝ բանվորների, կոլտնտեսականների և ծառայողների ընդհանուր հանրակրթական ու կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման համար, բարելավվում են նրանց աշխատանքի և կենցաղի պայմանները, վերացվում քաղաքի և գյուղի, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև եղած կուլտուր-տնտեսական տարբերությունները։*

*Սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանում, ելնելով արդի գիտա-տեխնիկական առաջադիմության պահանջներից, հատուկ տեղ է հատկացված գյուղի աշխատավորության սոցիալական կազմի ուսումնասիրու-*

թյան և բարոյական խթանման հարցերին։ Դրանց լուծման համար իրագործվող միջոցառումների թվում զգալի տեղ ենք տվել քաղաքական-մասսայական աշխատանքի ծավալման, կադրերի հոսունության կանխման, սպասարկման կուլտուրայի բարելավման, ստեղծագործական նախաձեռնության զարգացման աշխատանքներին։

Շրջանի գյուղերի սոցիալական առաջադիմության կոմպլեքսային պլանն ունի հնգամյա ժամկետ (1970—1975 թթ.)։ Դրա առաջին տարբերակը հաստատվեց գյուղատնտեսության առաջավորների շրջանային հավաքում, 1969 թ. հոկտեմբերի 3-ին, կոլտնտեսականների համամիութենական III համագումարի նախօրյակին։ Պլանը կազմված էր 4 գլուխներից՝ ա) աշխատանքի գիտական կազմակերպումը և գիտատեխնիկական առաջադիմությունը, բ) սոցիալ-տնտեսական զարգացումը, գ) աշխատանքի ու կենցաղային պայմանների բարելավումը և աշխատավորության առողջության պահպանումը, դ) կոլտնտեսականների ու բանվոր-ծառայողների որակավորման, հանրակրթական և կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Հետագայում մշակվեց ավելի կոնկրետ պլան, որն արժանացավ 1970 թ. փետրվարին տեղի ունեցած գյուղատնտեսության առաջավորների շրջանային հավաքի հավանությանը։

Գործի հաջողությունն ապահովելու և տեղերում այդ աշխատանքի համար պատասխանատու մարդկանց սիստեմատիկ օգնություն ցույց տալու նպատակով ստեղծվեց սոցիալ-տնտեսական զարգացման շրջանային հանձնաժողով։ Հետագայում հանձնաժողովներ ստեղծվեցին նաև կոլտնտեսություններում և սովխոզներում։ Դրանցում ընդգրկվեցին գյուղատնտեսության մասնագետներ, ինժեներներ, կուսակցական, սովետական ու կոմերիտական աշխատողներ։

Տեղական հանձնաժողովները, տնտեսական և սոցիոլոգիական ուսումնասիրությունից հետո, հիմք ընդունելով շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքս պլանը, մշակեցին առանձին պլան՝ ըստ գյուղերի։ Այդ պլաններում ուշադրություն նվիրվեց գյուղերի բարեկարգման, կուլտուր-կենցաղային պայմանների ստեղծման, աշխատատար պրոցեսների մեքենայացման ու արտադրության արդյունավետության բարձրացման և սոցիալական բնույթի այլ խնդիրների լուծման հարցերին։ Դպրոցների մանկավարժական կոլեկտիվների, սովխոզների բանվոր-ծառայողների և կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում քննարկելուց հետո, տեղական պլանները հաստատեցին կուսբյուրոների, գյուղսովետների գործկոմների, կոլտնտեսությունների վարչությունների, արհմիության տեղկոմների և ԼԿԵՄ կոմիտեների համատեղ նիստերում։

Այդ պլանի համաձայն կոլտնտեսություններում և սովխոզներում մշակվել են տնտեսական-կազմակերպական բնույթի հեռանկարային միջոցառումներ, որոնցում ընդգծված են արտադրության զարգացման ծրագիրը և դրա իրագործման էտապները։ Պլանում հիմնական տեղ են գրավել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, տնտեսությունների մասնագիտացման, աշխատատար պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, նոր տեխնիկայի ձեռք բերման ու ներդրման, շինարարության, գյուղատնտեսական արդյունաբերության կազմակերպման, անասնապահների ու դաշտավարների աշխատանքի պայմանների բարելավման հարցերը։

Բարձրորակ կադրերի պատրաստման, բանվոր-ծառայողների, կոլտնտեսականների աշխատանքային ու քաղաքական ակտիվության և կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման նպատակով նախատեսված են կադրերի



պատրաստման ու որակավորման միջոցառումներ։ Ընդ որում, մշակված է նյութական խրախուսանքի հատուկ սիստեմ, որը կնպաստի կոլտնտեսականների, բանվոր-ծառայողների ընդհանուր հանրակրթական մակարդակի և որակավորման բարձրացմանը։ Միջոցառումներ են մշակված գործարար սոցիալիստական մրցություն կազմակերպելու համար։

Գիտատեխնիկական առաջադիմության շնորհիվ գյուղատնտեսական արտադրության մեջ աճում է որակյալ աշխատանքի տեսակարար կշիռը։ Գյուղական կադրերի ամրակայումը հնարավոր է միայն կոմպլեքսային պլանով նըշված կուլտուր-կենցաղային, արտադրական, սոցիալական խնդիրների լուծման ճանապարհով։

Չնայած որ քիչ ժամանակ է անցել սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանի հաստատման օրից, բայց արդեն շոշափելի գործ է կատարվել։

Անասնապահության և դաշտավարության բնագավառում ձեռք բերած մեր հաջողություններն ամենից առաջ արդյունք են այն բանի, որ որոշակիորեն բարձրացել է գյուղատնտեսության վարման կուլտուրան, լայնորեն արմատավորվում են գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը։ Հողագործության մեջ մեծ տեղ է գրավում մեքենայական աշխատանքը. լրիվ մեքենայացվել են հացահատիկի, եգիպտացորենի և 60—70 տոկոսով՝ կարտոֆիլի ցանքի, մշակության ու բերքահավաքի աշխատանքները, դաշտերի զգալի մասի վրա մոլախոտերի դեմ պայքարը տարվում է հերբիցիդների միջոցով։ Շրջանի առաջավոր կարտոֆիլագործների, կթվորների ուսանելի փորձի մասին հրապարակվել են հատուկ բյուլետեններ։ Վերջերս տեղի ունեցավ կաթի մշակման տեխնոլոգիայի և անասնաբուծության այլ հարցերին նվիրված գիտական սեսիա, որտեղ զեկուցումներով հանդես եկան գիտության դոկտորներ Ջ. Դանիելյանը և Ն. Ստեփանյանը։

Կոմպլեքսային պլանին համապատասխան՝ եռանդուն աշխատանք է ծավալվում գյուղերի բարեկարգման, գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման համար։ Մեր շրջանն այդ պլանից բխող կոչ ուղղեց հանրապետության գյուղական շրջանների աշխատավորներին, կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական կազմակերպություններին։

Գյուղերի սոցիալ-տնտեսական առաջադիմության կոմպլեքսային պլանով լուրջ խնդիրներ ունենք լուծելու այս տարի։ Նախատեսվում է մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-րդ տարեդարձի օրը կոլտնտեսային կապիտալ ներդրումների հաշվին և պետական վարկի միջոցներով Կույբիշևո, Արմանիս, Պուշկինո, Կողես, Լեջան, Լ. Բերդ, Մ. Գորկի գյուղերում ավարտել բաղնիքների, Արմանիս, Մ. Գորկի, Լ. Բերդ գյուղերում՝ կենցաղսպասարկման տների կառուցումը։ Դրանով շրջանի բոլոր գյուղերը կունենան իրենց տիպային բաղնիքներն ու կենցաղսպասարկման հարմարավետ տաղավարները։ Կուրթան, Վարդաբլուր, Գյառգյառ, Ուռուտ և Ագարակ գյուղերում կսկսվի նոր տիպի կենցաղսպասարկման տների կառուցումը, իսկ Ագարակ և Գյուլագարակ գյուղերում կբացվեն քիմիական մաքրման կետեր։ Նախատեսվում է գյուղական բնակավայրերում հիմնել ժամացույցների, բարդ սարքավորումների նորոգման և լուսանկարչական կետեր։ Սպասարկման ոլորտը կընդլայնվի այն հաշվով, որպեսզի նշանակալիորեն աճի բնակչության մեկ շնչին ընկնող կենցաղային ծառայությունների տարեկան գումարը։

Խոշոր աշխատանքներ են կատարվել գազիֆիկացման ասպարեզում։ Ընթացիկ տարում բնական գազով կապահովվեն Գյառգյառ, Գյուլագարակ, Վարդաբլուր, Հոբարձի, Կուրթան, Պուշկինո գյուղերի աշխատավորները, իսկ 1971 թվականին կգազիֆիկացվեն Ագարակի ենթաշրջանի 6 գյուղեր։

Գործնական քայլեր են կատարվում աշխատավորության հանգիստն ու կուլտուրական սպասարկումը կազմակերպելու ասպարեզում։ Մինչև մեծ տարելիցի օրը շահագործման կհանձնվեն Կուրթանի, Վարդաբլուրի, Ուռուտի և Ագարակի կապի տները, Գյուլագարակի կինո-թատրոնը, Գյառգյառի, Լեջանի, Կույբիշևոյի ակումբները, կավարտվեն առևտրական կետերի և հասարակական սննդի օբյեկտների վերակառուցման աշխատանքներն ամբողջ շրջանում։ Գյուղերում աստիճանաբար հիմնվելու են հանգստի գոտիներ, պուրակներ, զբոսայգիներ։

Կոլտնտեսությունների ու գյուղատնտեսության մինիստրության միջոցներով և սովխոզների օգուտների հաշվին գյուղերում կսկսվի մսուր-մանկապարտեզների և կչարունակվի դպրոցների շինարարությունը։

Ցայլաղներում անասնապահների համար ևս ստեղծվում են կուլտուր-կենցաղային լավագույն պայմաններ։ Նախատեսվում է կառուցել հարմարավետ կացարաններ, անցկացնել հեռախոսներ և էլեկտրական լուսավորություն, իսկ լեռնային մի շարք ամառանոցներում սկսել բաղնիքների և մսուր-մանկապարտեզների կառուցումը։

Ճիշտ ըմբռնելով գյուղատնտեսության վերելքն ապահովելու վերաբերյալ կուսակցության որոշումները՝ շրջանի կուսկազմակերպությունները գործիմացությամբ են գլխավորում աշխատավորների քաղաքական ակտիվությունն ու աշխատանքային խանդավառությունը։ Մեր պրոպագանդիստներն ու ագիտատորները լայնորեն մասսայականացնում են սոցիալ-տնտեսական կոմպլեքսային պլանի հարցերը, աշխատավորությանը տոգորում կուսակցության կողմից գյուղի առջև դրված խնդիրները լուծելու պատրաստակամությամբ։

Կուսակցական ժողովներում պարբերաբար քննության են առնվում կոմպլեքսային պլանում նախատեսված միջոցառումների իրականացման հետ կապված բազմազան հարցեր։ Կուսշրջկոմն ու կուսկազմակերպությունները ձգտում են իրագործել այդ միջոցառումները, բարձրացնել գյուղատնտեսական արտադրության արդյունավետությունը, հաջողությամբ լուծել գյուղի կուլտուր-կենցաղային վերելքի խնդիրները, արժանավայել դիմավորել Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-րդ տարեդարձը։



# ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԵՐԱՇԽԻՔԸ

Ս. Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՀԿԿ Մարտունու շրջկոմի առաջին քարտուղար

Մարտունու կուսշրջկոմն իր փորձով համոզվել է, որ սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվության բարձրացումը բացառիկ նշանակություն ունի կուսակցության առաջադրած խնդիրների լուծման և տնտեսության առաջընթացն ապահովելու գործում։ Առանց դրա գյուղատնտեսության զարգացման ասպարեզում դժվար է հասնել շոշափելի հաջողության և ժամանակին ու անթերի կատարել տրված առաջադրանքները։

Թե տնտեսական խնդիրների լուծման գործում որքան կարևոր է կուսկազմակերպության ղեկավար դերը, կարելի է ցույց տալ հետևյալ օրինակով։ Մի ժամանակ Լիճքի սերմնաբուծական սովխոզը շրջանի առաջավոր տնտեսություններից էր։ Տարիներ շարունակ այստեղ կատարվում ու գերակատարվում էին գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանները։ Սակայն սկզբնական կուսկազմակերպությունը բավարարվեց ձեռք բերածով և թուլացրեց իր գործունեությունը։ Հետևանքը եղավ այն, որ սկսվեց աշխատողների, հատկապես, միջին օղակի ղեկավար կադրերի հոսունությունը. սովխոզի դիրեկցիան սկսեց քմահաճորեն վերաբերվել մասնագետներին, արտադրության փորձված կազմակերպիչներին, թուլացավ կարգապահությունը, որոշ թվով բանվորներ, առանձնապես երիտասարդներ, լքեցին սովխոզը։ Սովխոզն ստիպված էր մասնագետ բանվորներ հավաքագրել դրսից, որը չափազանց դժվար էր ու մեծ ծախսեր էր պահանջում։ Տնտեսությունը 1969 թվականին չկատարեց գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի պետական առաջադրանքները, չկուտակեց անհրաժեշտ քանակի կեր։ Կերի պակասի և վատ խնամքի հետևանքով անասունների անկումները մեծ չափերի հասան, տարին փակվեց 240 հազար ռուբլու վնասով և այլն։

Լիճքի սովխոզում գործերի ձախողման հիմնական պատճառներից մեկը կուսկազմակերպության պասսիվությունն էր։ Կազմակերպության բյուրոն անհրաժեշտ վճռականություն չէր ցուցաբերում գործերի վիճակը քննարկելու և հանրային արտադրությունում տեղ գտած թերությունները վերացնելու համար։ Կուսբյուրոյի քարտուղար Գ. Սմբատյանը մի կողմ էր քաշվել, հանդես էր գալիս դիտողի և անկողմնակալ հաշտարարի դերում։

Պատահական չէ, որ կուսշրջկոմը հենց կուսկազմակերպությունից սկսեց

սովխոզի գործերի վիճակի բարելավման հարցի լուծումը։ Կուսբյուրոյի քարտուղար ընտրվեց Ս. Գևորգյանը, որը սրտանց կպավ գործին, աշխուժացրեց կոմունիստների շրջանում տարվող քաղաքական-գաղափարական աշխատանքը, բարձրացրեց նրանց պատասխանատվությունը։ Նորընտիր քարտուղարն ու սովխոզի նոր դիրեկտորն ավելի շատ կոմունիստներ ընդգրկեցին արտադրության ստորին օղակներում։ Վերանայվեց արտադրության միջին հրամանատարական կազմը, կանխվեց մասնագետների հոսունությունը, պայմաններ ստեղծվեցին, որպեսզի այլ վայրեր գնացած երիտասարդները նորից վերադառնան հայրենի գյուղն ու աշխատեն արտադրության մեջ։ Սկզբնական կուսկազմակերպությունը և դիրեկցիան վերացրին անհարկի քաշքշուկը, աշխատանքը դրեցին նորմալ հունի մեջ, մեքենայական պարկն ապահովեցին մեխանիզատորներով։

Տնտեսության գործերին կուսկազմակերպության ակտիվ միջամտության շնորհիվ կատարվեցին լուրջ տեղաշարժեր. սովխոզը բռնեց վերելքի ուղին, ավելացավ անասնապահական մթերքների արտադրությունը։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում, անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ավելի արտադրվեց 300 ցենտներ կաթ, 150 ցենտներ միս, 70 հազար հատ ձու և այլն։ Ժամանակին և բարձր որակով ավարտվեցին գյուղատնտեսական աշխատանքները, 100 հեկտարով ընդարձակվեց ցանովի խոտաբույսերի ցանքատարածությունը։ Գյուղատնտեսական կուլտուրաներից անհամեմատ բարձր բերք ստացվեց, հանրային հոտի համար կուտակվեց անհրաժեշտ քանակի կեր։ Այդ ամենը արտադրության բարձրացման գործում կուսկազմակերպության խաղացած ակտիվ դերի վկայությունն է, ինչպես նաև հիմնական արտադրամիջոցների արդյունավետ օգտագործման և աշխատանքային կարգապահության ամրապնդման արդյունքը։ Ինչ խոսք, տնտեսության շրջադարձը կատարվում էր կուսշրջկոմի ամենօրյա օգնությամբ, տնտեսության կուսակցական ղեկավարության ուժեղացմամբ։

Կոլտնտեսությունում, սովխոզում կամ արտադրական ձեռնարկությունում որևէ բաց կամ թերացում նկատելիս, պետք է հարցերն ամենից առաջ լուծել տվյալ կուսկազմակերպության ուժերի մոբիլիզացմամբ, նրա դերի ու ակտիվության բարձրացմամբ։ Կուսշրջկոմը հենց այս սկզբունքով ղեկավարվեց անցյալ տարի Զորագյուղի սկզբնական կուսկազմակերպության գործերին միջամտելիս։

Զորագյուղի կոլտնտեսային կուսկազմակերպությունն անհրաժեշտ վերահսկողություն չէր սահմանում տնտեսության գործերի նկատմամբ։ Խոտհնձի եռուն օրերին հնձվորների խիստ պակաս էր զգացվում, անբավարար էր օգտագործվում տրանսպորտը, ընկած էր աշխատողների, մանավանդ երիտասարդության զգալի մասի կարգապահությունը։ Ստեղծված վիճակը ոչ մի լավ բան չէր խոստանում. առաջ էր եկել կերի կուտակման և, մասնավորապես, ծխախոտի բերքահավաքի ձախողման վտանգ։

Կուսշրջկոմի բյուրոն լսեց և քննարկեց Զորագյուղի կոլտնտեսային սկզբնական կուսկազմակերպության հաշվետվությունը, կոնկրետ ժամկետ սահմանեց եղած թերությունները վերացնելու համար։ Բյուրոյի որոշմամբ տնտեսությանը ցույց տրվեց անհրաժեշտ նյութական օգնություն, ստեղծվեց հատուկ հանձնաժողով՝ բերքահավաքին հետևելու և օգնելու համար։ Բարձրացվեցին կուսբյուրոյի դերն ու պատասխանատվությունը՝ տնտեսության գործերի վիճակի համար։ Կուսբյուրոն իր ակտիվ գործունեությամբ մոբիլիզացրեց կոմունիստ-



ների ուժերը, ապահովեց նրանց ավանգարդային դերն արտադրության մեջ, յուրաքանչյուր կոմունիստ ստացավ իր որոշակի հանձնարարությունը։ Նրանց օրինակով սկսեցին ակտիվ աշխատել համարյա բոլոր կոլտնտեսականները, գյուղատնտեսության մասնագետներն ու մեխանիզատորները։ Նրանց գործադրած ջանքերի շնորհիվ մեքենաների օգտագործման գործակիցը, միջին հաշվով, բարձրացավ 16 տոկոսով, զգալիորեն կանխվեց ոռոգող ջրի կորուստը, արդյունավետ օգտագործվեցին հանքային և օրգանական պարարտանյութերը։ Եվ ահա արդյունքը։ Աճեց լավ բերք, որը հավաքվեց ժամանակին ու անկորուստ, նախադրյալներ ստեղծվեցին նաև ընթացիկ տարվա առաջադրանքները կատարելու համար։

Այս տարի կոլտնտեսությունում գործերն ավելի հաջող են ընթանում։ Զորագյուղցիներն առաջին կիսամյակում պետությանը պլանից դուրս վաճառեցին մեծ քանակությամբ կաթ, միս, բուրդ և ձու, հանրային հոտի համար կուտակեցին կերի առատ պաշար։ Կուսբյուրոն (քարտուղար՝ Ս. Խլղաթյան) աշխուժացրել է ներկուսակցական աշխատանքը, ակտիվ միջամտում է հանրային արտադրության կազմակերպմանը։ Կուսակցական ժողովներում ու բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկում են արտադրության հետ կապված հարցեր, կոմունիստների հաշվետվությունը՝ իրենց ղեկավարած ճյուղերի գործերի վիճակի մասին։

Այս ամենը, անշուշտ, ունենում է իր դրական ազդեցությունը և լրջորեն խթանում հանրային տնտեսության զարգացումը։

Կուսշրջկոմը մեծ կարևորություն է տալիս ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսկազմակերպությունների վերահսկողության ֆունկցիայի ճիշտ իրականացմանը, հետաքրքրվում, թե նրանք ինչպես են լուծում արտադրական հարցերը, ինչպես են պայքարում աշխատանքային կարգապահության ամրապնդման և սոցիալիստական սեփականության պահպանման համար։ Ուժեղ կուսկազմակերպությունների աշխատանքի փորձը շրջկոմը մասսայականացնում է, տարածում շրջանի մյուս կուսկազմակերպություններում։

Մենք երբեմն ականատես ենք այնպիսի դեպքերի, երբ կոլտնտեսությունը, սովխոզը կամ արդյունաբերական ձեռնարկությունը, ապահովված լինելով համապատասխան նյութա-տեխնիկական բազայով, հիմնական ու շրջանառու ֆոնդերով և անհրաժեշտ քանակությամբ աշխատող ձեռքերով, չի կատարում պլանային առաջադրանքները, տևականորեն ետ է մնում և վնաս հասցնում մեր ընդհանուր վերելքին։ Այստեղ, իհարկե, հիմնական պատճառը պետք է փնտրել տեղական ղեկավարության և, ամենից առաջ, սկզբնական կուսկազմակերպության գործունեության մեջ, որոնք գործերի կազմակերպումը չեն դնում գիտական հիմքերի վրա, անտեսում են տնտհաշվարկը, վարում են մի կերպ յոլա գնալու գիծ, պատասխանատվության չեն կանչում արտադրական պլանները ձախողողներին՝ մոռանալով, որ պլանը օրենք է և անպայման պետք է կատարվի։

Այս առնչությամբ բերեմ մի օրինակ։ Լիճքի հանքային ջրերի գործարանը նոր ձեռնարկություն է մեր շրջանում։ Այն կառուցված է տեխնիկայի վերջին խոսքով, ունի արտադրական լայն հնարավորություններ, և թվում է, թե ոչինչ չի խանգարի այս ձեռնարկությանը՝ լիովին դրսևորելու իր հնարավորությունները։ Սակայն պատկերն այլ էր անցած տնտեսական տարում։ Այստեղ թերակատարվեց արտադրական ծրագիրը, անուշադրության մատնվեց պետական գույքի պաշտպանությունը. մի քանի ամսում փչացան մեծ քանակությամբ

ապակյա տարաներ: Քաշքշուկ էր ստեղծվել պատրաստի արտադրանքի տեղափոխման և իրացման գործում: Զարմանալին այն է, որ սկզբնական կուսկազմակերպությունն այսքանից հետո մի կողմ էր քաշվել և կարծում էր, թե այս ամենն իրեն չի վերաբերում, որ ստեղծված վիճակի համար պատասխանատու են միայն ղեկավարները:

Հարկավոր եղավ կիրառել կազմակերպչական լուրջ միջոցներ: Կոմունիստներն իրենք հաշվետու-ընտրական ժողովում բացահայտեցին եղած թերությունները, դրանց առաջացման պատճառները, ընտրեցին նոր քարտուղար և մշակեցին կուսկազմակերպության գործունեության բարելավման կոնկրետ ծրագիր, որի իրագործումը մեծապես նպաստեց ձեռնարկության աշխատանքի կարգավորմանն ու եղած միջոցների արդյունավետ օգտագործմանը: Դրանից հետո գործարկվեց երկրորդ ագրեգատը, կարգավորվեց գործող ապարատը, կանխվեցին մաքրման արտադրամասի խափանումները, մեքենայացվեցին բարձման-բեռնաթափման աշխատանքները, հիմնականում բարելավվեցին բանվորների կենցաղային պայմանները, առաջին հերթին լուծվեց բաղնիքի և ճաշարանի հարցը:

Գործին օգնեց նաև ձեռնարկության ղեկավարության փոփոխությունը: Գործարանի կոլեկտիվն այս տարվա առաջին կիսամյակում, անցած տարվա նույն ժամանակամիջոցի 1 միլիոն 400 հազարի փոխարեն, արտադրեց 3 միլիոն 22-ից ավելի հանքային ջուր: Աճեցին ձեռնարկության արտապլանային օգուտները, կատարվեց ավելի քան 50 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք:

Բերենք մի այլ օրինակ: «Հայէլեկտրալույս» միավորման Մարտունու մասնաճյուղը նույնպես մեր շրջանի նոր ձեռնարկություններից է: Անցյալ տարի այն թերացավ արտադրական պլանների կատարման գործում: Երբ խորամուխ եղանք մասնաճյուղի գործունեության մեջ, պարզվեց, որ սկզբնական կուսկազմակերպությունն անբավարար է զբաղվում արտադրության կազմակերպմամբ, կուսբյուրոյի նախկին քարտուղար Գ. Մուրադյանը վատ էր պատկերացնում իր գործը: Գործերի վիճակն ուսումնասիրելուց հետո, մասնաճյուղի սկզբնական կուսկազմակերպության գործունեության հարցը քննարկվեց կուսշրջկոմի բյուրոյում, իսկ շրջկոմի որոշումը՝ սկզբնական կուսկազմակերպության ժողովում: Մի շարք կոմունիստներ իրենց ելույթներում առաջ քաշեցին սկզբունքային հարցեր: Օրինակ, միատեղ դրոշմանիշների տեղամասի բանվոր, կոմունիստ, կուսբյուրոյի անդամ Գ. Ստեփանյանը կուսակցական ընդհանուր ժողովում կոմունիստների ուշադրությունը հրավիրեց իրենց տեղամասի ցածր արտադրողականության վրա և առաջարկեց միատեղ դրոշմող հաստոցները վերափոխել բազմատեղ հաստոցների, որը հնարավորություն կընձեռի մի քանի անգամ ավելացնելու աշխատանքի արտադրողականությունը, կրճատելու ծախսվող աշխատուժը, բարձրացնելու արտադրանքի որակը, իջեցնելու ինքնարժեքը: Ստեփանյանի առաջարկը մասնագետների ստուգումից հետո կենսագործվեց, և մասնաճյուղն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, իրացման ծավալը մեծացրեց 36, ապրանքային արտադրանքինը՝ 78,3 տոկոսով: Զգալի չափով իջավ արտադրանքի ինքնարժեքը: Նշանակալիորեն ակտիվացավ կուսկազմակերպության գործունեությունը, արտադրական ու հասարակական կյանքում բարձրացան նրա դերն ու նշանակությունը:

Այստեղ արդեն պարբերաբար հրավիրվում են կուսակցական ընդհանուր



ժողովներ, քննարկվում արտադրական ու դաստիարակչական բնույթի հարցեր, կոմունիստներն իրենց սկզբունքային քննադատությամբ և խելացի առաջարկություններով օգնում են մասնաճյուղի ղեկավարությանը՝ լրիվ օգտագործելու եղած հնարավորությունները և կատարելագործելու արտադրապրոցեսները: Գործարանում հաճախակի են կազմակերպվում գիտա-հանրամատչելի դասախոսություններ, էքսկուրսիաներ, լավ է կազմակերպված կոմունիստների քաղուսուցումը:

Կուսկազմակերպությունը պարտավոր է գործնականություն և հետևողականություն հանդես բերել իր որոշումների անթերի կատարման ասպարեզում: Այդ տեսակետից կարևոր է, որ ամենուրեք անհրաժեշտ բարեխղճություն հանդես բերվի ծրագրածն իրագործելու համար:

Մարտունու կուսշրջկոմը պարբերաբար ուսումնասիրում է շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը, վեր հանում տեղ գտած թերությունները և այդ մասին իրազեկ դարձնում կոմունիստներին, անհրաժեշտության դեպքում ուսումնասիրության արդյունքները քննարկում կուսշրջկոմի բյուրոյում և պլենումում: Որոշումների, ստանձնած պարտավորությունների կատարման սիստեմատիկ ստուգումը կոմունիստներին, կուսկազմակերպությանը պահում են զգոն ու մարտական վիճակում, բարձրացնում նրանց ակտիվությունն ու դերը: Այս առումով օրինակ կարող է ծառայել Թազագյուղի, Զոլաքարի, Մարտունու սովխոզների սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքը:

Թազագյուղը բարձր լեռնային դիրք ունի, նրա տնտեսությունը միշտ ենթակա է բնության քմահաճույքներին: Այստեղ ձմեռը տևում է 6—8 ամիս, խիստ կարճ է գյուղատնտեսական կուլտուրաների վեգետացիոն շրջանը: Սկզբնական կուսկազմակերպությունից շատ ջանքեր են պահանջվում օգնելու սովխոզի աշխատողներին՝ բնակլիմայական նման պայմաններում ժամանակին հավաքելու բերքը, անկորուստ անցկացնելու անասունների ձմեռումը: Այստեղ կուսկազմակերպության որոշումները կոնկրետ են և միշտ ելնում են տնտեսության հնարավորություններից: Որոշվում է այն, ինչ հնարավոր է, իրագործել: Կոմունիստները պարտքի խոր գիտակցությամբ են կատարում յուրաքանչյուր հանձնարարություն, աշխատում են արտադրության դժվարին օղակներում և գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար մղվող պայքարում իրենց օրինակով ոգևորում մարդկանց: Ամենուրեք կոմունիստներն առաջին բնագծերում են: Եվ, պատահական չէ, որ տնտեսությունն առաջավորների շարքում է: 1969 թվականին Թազագյուղի սովխոզը կատարեց ու գերակատարեց գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը դրանց հանձնման պլանային առաջադրանքները: Տնտեսությունն արտադրական բարձր ցուցանիշներով փակեց նաև ընթացիկ տարվա առաջին կիսամյակը:

Հայտնի է, որ գյուղատնտեսությունը շատ յուրահատկություններ ունի: Թվում էր, թե վաղ եկած, համեմատաբար խաղաղ գարունը լավ երաշխիք կլինի 1970 թվականն առատ բերքի տարի դարձնելու համար: Սակայն գարնանացանից հետո սկսված և գրեթե երեք ամիս տևած երաշտը բոլորովին այլ պատկեր ստեղծեց հանրային դաշտերում: Մեզ մնում էր առավելագույն չափով լարել ուժերը՝ ոռոգման աշխատանքներն ինտենսիվացնելու, ցանքերի մշակությունը կազմակերպված անցկացնելու և բնության հասցրած վնասը հնարավոր չափով նվազեցնելու համար: Գործի գլուխ դարձյալ կանգնեցին կոմունիստնե-

րը, կազմակերպվեց դաշտերի 24-ժամյա ռոռգում, անասունների հերթափոխ
արածեցում և այլն։ Տնտեսությունները կարողացան ոչ միայն հացահատիկի,
կարտոֆիլի, ծխախոտի, բանջարեղենի լավ բերք աճեցնել, այլև կատարել ու
գերակատարել կաթի, մսի, ձվի, բրդի արտադրության կիսամյա պլանները։
Առանձին տնտեսությունների ցուցանիշները շատ ավելի բարձր են շրջանի մի-
ջինից, բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները, գրեթե առանց բացառու-
թյան, գերակատարել են խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքա-
նակի ավելացման առաջադրանքը։

Ստեղծված բնակլիմայական ծանր պայմաններում նման արդյունքի հասու-
նելն աշխատանքային ճակատում նշանակալից նվաճում է, որը ձեռք է բերվել
սկզբնական կուսկազմակերպությունների անմիջական օգնությամբ և ղեկավա-
րությամբ, նրանց ակտիվության բարձրացմամբ։

Կուսկազմակերպությունների դերի ու ակտիվության, նրանց մարտունա-
կության բարձրացման գործում էական նշանակություն ունի կուսշրջկոմին կից
ստեղծված սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների մշտա-
կան գործող սեմինարը։ Դրա մասնակիցներն ուսումնասիրում են կուսակցա-
կան շինարարության հարցը, լսում հանրամատչելի դասախոսություններ՝ քա-
ղաքական հրատապ թեմաների վերաբերյալ, ծանոթանում առանձին կազմա-
կերպությունների աշխատանքի դրական փորձին։ Դա նրանց օգնում է՝ տեղե-
րում ավելի լավ կազմակերպելու աշխատանքը, ավելի բարձրացնելու սկզբնա-
կան կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը բարդ խնդիրներ դրեց գյուղական
կուսկազմակերպությունների առջև։ Դրանց լուծման, գյուղատնտեսության
հզոր վերելքի կարևոր երաշխիք է կուսկազմակերպությունների դերի ու ակտի-
վության, նրանց մարտունակության բարձրացումը։ Այս հարցը մշտապես
գտնվում է Մարտունու կուսշրջկոմի տեսադաշտում։ Կուսշրջկոմը սկզբնական
կուսկազմակերպությունների միջոցով ու նրանց դերի բարձրացմամբ հետևո-
ղական պայքար է ծավալել կոլտնտեսությունների, սովխոզների ու արդյունա-
բերական ձեռնարկությունների նյութա-տեխնիկական բազան ամրապնդելու,
տնտեսական շինարարության արդի խնդիրները պատվով լուծելու համար։

Մարտունու շրջանի աշխատավորները հարազատ հայրենիքի հիսնամյա
տոնը կդիմավորեն արտադրական բարձր ցուցանիշներով, իրենց պարտավո-
րությունների ու պետական պլանների գերակատարմամբ, որի համար կան
բոլոր պայմաններն ու հնարավորությունները։



## Դեպի Սովետական Հայաստանի 50-ամյակը

# ԱԿՆԱՌՈՒ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ՄԵԾ ԱՆԵԼԻՔՆԵՐ

Ա. Մ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

ՀՍՍՀ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստր

Անցած կես դարում, մեր հանրապետության ժողովրդական տնտեսության
մյուս ճյուղերի հետ միասին, արագ թափով զարգացավ նաև մսեղենի և կաթ-
նեղենի արդյունաբերությունը։

Նախասովետական ժամանակաշրջանը մեզ ժառանգեց տասնյակից ոչ
ավելի տնայնագործական արհեստանոցներ, որոնց թվում՝ 3—4 փոքր պան-
րագործարաններ և մեկ-երկու սպանդանոցներ, որոնք սովորական մորթից
բացի, մսի արդյունաբերական որևէ մշակում չէին կատարում։

Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության ստեղծման ու զարգացման
համար բարենպաստ պայմաններ ստեղծվեցին միայն Հայաստանի սովետա-
կանացումից հետո։ Այդ հարցում որոշիչ դեր խաղաց սովետական պետության
կողմից գյուղական տնտեսություններին ցույց տրվող անշահախնդիր օգնու-
թյունը, որը նախապայմաններ ստեղծեց կաթնարդյունաբերության արագ զար-
գացման համար։

Տակավին 1921—1924 թվականներին հանրապետության անասնապահա-
կան շրջանների գյուղացիության մեծ մասը միավորվեց կաթնատնտեսական
արտելներում, որոնց բազայի վրա 1924 թվականին կազմակերպվեց Հայաս-
տանի կաթնատնտեսական կոոպերացիան, որն իր ձեռքում կենտրոնացրեց
կաթնամթերքների արտադրությունը։ Կոոպերացիայի միջոցներով ու ջանքերով
1925 թվականից սկսեցին կառուցվել արտադրական մի շարք ձեռնարկություն-
ներ։ Ժամանակի առումով, արտադրական նորագույն սարքավորումներով հա-
գեցված պանրագործարաններ կառուցվեցին Գորիսում, Ղլղոջում (Ղուկասյա-
նում), Համզաչիմանում, Ապարանում, Կարմիրում և այլ վայրերում, իսկ
1927 թվականից՝ սկսվեց շոգեմեքենայացված գործարանների կառուցումը։
Շվեյցարական պանրի արտադրության այդ տիպի առաջին գործարանը կա-
ռուցվեց Ստեփանավանում, որից հետո շահագործման հանձնվեցին նաև Կա-
լինինոյի և Ուռուտի մեքենայացված պանրագործարանները, մեքենայացվեց

արդեն գործող Ղուկասյանի պանրագործարանը։ Այդ թվականներին շահագործման հանձնվեցին նաև Երևանի և Ստեփանավանի անարատ կաթնամթերքների արտադրամասերը՝ պաստերիզացման և սառեցման հարմարանքներով։

1928 թվականին կաթնարդյունաբերության կոոպերատիվ միավորման ձեռնարկությունները տարեկան մշակեցին մոտ 13 հազար տոննա կաթ, թողարկելով 126 տոննա կարագ, 1045 տոննա պանիր (որից 256 տոննան շվեյցարական) և 1232 տոննա անարատ կաթնամթերքներ։ Այս բոլորը 2,6 անգամ ավելի էր, քան արտադրված էր 1913 թվականին, որը ցարական Ռուսաստանի պայմաններում համարվում էր ամենաբարենպաստը։

Կաթնատնտեսական կոոպերացիան, ընդհուպ մինչև առաջին հնգամյակի տարիները, էական դեր խաղաց կաթնարդյունաբերության կազմակերպման ու զարգացման գործում։ Սակայն հնգամյակի տարիներին կոոպերացիան արդեն ի վիճակի չէր բավարարելու արագ աճող քաղաքային բնակչության պահանջարկը։ Կյանքի թելադրանքով կաթնարդյունաբերությունը դարձավ պետական, որը կոլտնտեսությունների ու սովխոզների ամրապնդվող կաթնանասնապահական խոշոր բազայի հիման վրա ստեղծելու էր տնտեսության այս ճյուղի զարգացման լայն հնարավորություններ։

Այդ նպատակով 1930 թվականին Հայկական ՍՍՀ-ում կազմակերպվեց «Հայկաթնամթերք» պետական միավորումը, որից հետո վերջնականապես ձևավորվեց պետական կաթնարդյունաբերությունը՝ նոր բազայով ու միավորումներով։ Կոլտնտեսությունների ու սովխոզների համայնացված բազան աննախընթաց չափով ավելացրեց արդյունաբերական կաթնահումքի պաշարները, ստեղծելով արդյունաբերության զարգացումը կանխորոշող հումքային ռեսուրսների համար հաստատուն հիմքեր։ Սակայն կաթնահումքի ավելացման բարձր տեմպերը պահանջեցին համապատասխան կարողություններ և արտադրության տեխնիկապես կատարելագործված միջոցներ։

Հայրենական մեծ պատերազմի նախօրեին այդ նպատակով զգալի աշխատանք տարվեց, որը, ցավոք, ընդհատվեց պատերազմի պատճառով։ Պատերազմի տարիներին, չնայած արտադրամիջոցների ու բանվորական ձեռքի պակասին, Հայաստանի մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության աշխատավորները, սովետական ողջ ժողովրդի հետ միասին, իրենց համեստ, բայց խիստ կարևոր ավանդը ներդրեցին հաղթանակի համար մղված պայքարում։

Հանրապետության կաթնարդյունաբերությունն արագ թափով սկսեց զարգանալ հետպատերազմյան տարիներին։ Պատերազմի նախօրեին գործող կաթնարդյունաբերության ձեռնարկությունները (որոնց տարեկան ընդհանուր կարողությունները կազմում էին ընդամենը 16,5 հազար տոննա) արդեն ի վիճակի չէին մշակելու մթերվող կաթի օրավուր աճող քանակը, որը 1947 թվականին հասավ 25 հազար, իսկ 1950 թվականին՝ մոտ 31 հազար տոննայի։ 1946—1950 թթ. կառուցվեցին Սպիտակի, Սիսիանի, Ամասիայի, Պրիվոլնոյեի, Կարմրաշենի, Մարալիկի, Թալինի, Բազարչայի, Շորժայի, Վարդենուտի մեքենայացված պանրագործարանները։ Կաթի գործարաններ կառուցվեցին Երևանում, Լենինականում, Կիրովականում, Արտաշատում։

Արտադրական կարողությունների խոշորացման հետ միասին հատուկ ուշադրություն հատկացվեց նաև պատրաստի արտադրանքի պահպանման, հասունացման, ինչպես նաև սառնարանային կարողությունների ստեղծման հարցերին։ Այդ նպատակով վերափոխվեցին ու վերակառուցվեցին գործող շատ ձեռնարկություններ, որի շնորհիվ կրկնապատկվեց պանրապահեստների ու



պանրանկուղների թիվը։ Պատրաստի արտադրանքը կենտրոնացնելու և այն ավելի բարենպաստ պայմաններում պահպանելու նպատակով 1950 թ. շահագործման հանձնվեց Երևանի յուղսառցարանը՝ իր խոշոր տարողությամբ ու սառնարանային տնտեսությամբ։

Ինչպես կաթնարդյունաբերությունը, այնպես էլ մսի ու մսամթերքների արտադրությունը սովետական իրավակարգի ծնունդ են։ Մինչև 1920 թվականը Հայաստանում գոյություն չուներ մսի և մսամթերքների ոչ մի արդյունաբերական ձեռնարկություն։ Երևանում և Լենինականում գործել են հատուկենտ պրիմիտիվ սպանդանոցներ՝ սովորական մորթի համար։ Բայց սոցիալիզմի կառուցման տարիներին անհրաժեշտ դարձավ կառուցել մսի վերամշակման ժամանակակից ձեռնարկություններ։

Մսի մշակման առաջին տիպային կոմբինատը կառուցվեց Լենինականում, որը կատարում է կոլտնտեսություններից ու սովխոզներից ստացված և Թուրքիայից ներմուծված անասունների մորթն ու մսի մշակումը։ Դրանից հետո, նախկին սպանդանոցի բազայի վրա կառուցվեց Երևանի մսի փոքր կոմբինատը, որն իր կարողություններով ու հարմարանքներով չբավարարեց քաղաքի աճող պահանջները։ Զուտ սպանդանոցային տիպի այդ ձեռնարկությունը դադարեց գոյություն ունենալուց մեկ տասնամյակ առաջ, երբ այն փոխարինվեց ժամանակակից տեխնիկայով հագեցված նորակառույց կոմբինատով։ Հետագայում շահագործման հանձնվեցին նաև Կիրովականի և Ղափանի մսի կոմբինատները։ Սակայն մինչև 1965 թվականն այդ կոմբինատներն իրենց նախագծային կարողություններով ու սարքավորումներով չէին համապատասխանում գիտության ու տեխնիկայի ժամանակակից պահանջներին։

Հանրապետության մսեղենի և կաթնեղենի արդյունաբերությունն անցած յոթնամյակի (1959—1965 թթ.) տարիներին զգալիորեն ամրապնդեց իր արտադրական-տեխնիկական բազան։ Շահագործման հանձնվեցին Հրազդանի, Ղափանի, Աշտարակի կաթի գործարանները, Ալավերդու, Ազիզբեկովի պանրագործարանները՝ յուրաքանչյուր հերթափոխում 10—15 տոննա կաթի վերամշակման կարողությամբ։ Այդ տարիներին կաթնարդյունաբերության զարգացման հատկանշական կողմերից մեկն այն է, որ որոշակի ընդարձակվեց անարատ կաթնամթերքների արտադրության ճյուղը, որը, չգիտես ինչու, տասնամյակներ շարունակ վրիպել էր ուշադրությունից։ Եթե նկատի ունենանք, որ 1940 թ. Երևանում թողարկվել է ընդամենը 1000 տոննա անարատ կաթնամթերք, իսկ 1950 թ.՝ 5000, ապա պարզ կդառնա անարատ կաթնամթերքների արտադրության զարգացման անհրաժեշտությունը։ Երևանի կաթի կոմբինատը շահագործման հանձնվեց 1957 թվականին՝ 35 տոննա արտադրական կարողությամբ։

Ինչպես ողջ Միության, այնպես էլ մեր հանրապետության մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության հետագա զարգացման գործում խոշոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1965 թ. սեպտեմբերյան պլենումի՝ Արտադրության ղեկավարումը վերակառուցելու, ձեռնարկություններում պլանավորումը և տնտեսական խթանումը բարելավելու մասին որոշումը։ Արտադրության ճյուղային ղեկավարման սկզբունքի վերականգնումը նոր հնարավորություններ ստեղծեց արտադրության ինտենսիվ զարգացման համար։ 1965 թվականին մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության բոլոր հիմնարկ-ձեռնարկությունները միավորվեցին ՀՍՍՀ-ում նոր կազմակերպված մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության սիստեմում։ Արտադրության հե-

տագա զարգացման համար որոշիչ նշանակություն ունեցավ նաև ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1967 թ. հունիսի 10-ի՝ Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության արտադրական-տեխնիկական բազայի հետագա զարգացման միջոցառումների մասին ծավալուն և հեռանկարային որոշումը։

Եվ իրոք, ընթացիկ հնգամյակը մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության համար հանդիսացավ տեխնիկական վերազինման ու ինտենսիվ զարգացման հնգամյակ։ Բավական է ասել, որ հնգամյակի յուրաքանչյուր տարում միջին հաշվով ավելի շատ կապիտալ ներդրումներ է կատարված, քան անցած յոթնամյակում։ Նախնական հաշվարկմամբ, հնգամյակի կապիտալ ներդրումների ծավալը կկազմի 32,4 մլն ռուբլի, որից՝ շինմոնտաժայինը՝ 23 մլն, յոթնամյակի՝ 7,28 և 4,95 մլնի դիմաց։

Հնգամյակում հիմնականում վերակառուցվել են գրեթե գործող բոլոր ձեռնարկությունները, կառուցվել ու շահագործման են հանձնվել ժամանակակից մի շարք նոր ձեռնարկություններ։ Հատկապես խոշոր մասշտաբի բարեփոխություններ կատարվեցին հանրապետության մսի կոմբինատներում։ Իր խոշոր համալիրներով արդեն ավարտին է մոտենում Երևանի մսի կոմբինատի վերակառուցումը։ Արմատապես վերափոխվել է այդ կոմբինատի երշիկի արտադրամասը, որի կարողությունը 10 տոննայից հասնում է 20 տոննայի։ Առաջիկայում դա ավելացվելու է ևս 17 տոննայով։ Շահագործման է հանձնված 3000 տոննա տարողության տեխնիկապես առաջնակարգ սառնարան, բարձրարտադրողականության հոսքային գծեր են տեղադրված ոսկրազերծման և մյուս արտադրամասերում։ Վերակառուցվել է նաև Լենինականի մսի պահածոների կոմբինատի երշիկի արտադրամասը։ Կոմբինատում տեղադրված կոմպլեքս-մեքենայացված նոր արտադրագիծը հնարավորություն կընձեռի արտադրելու մի քանի տեսակ բարձրորակ հումապխտած երշիկներ։

Տեխնիկական այս և բազմաթիվ այլ միջոցառումներ հնարավորություն ընձեռեցին որոշ կոմբինատներում կրկնապատկելու, անգամ եռապատկելու մսի ու մսամթերքների մշակման կարողությունները։ Այժմ հանրապետության մսի կոմբինատները կարող են մորթել և տարեկան մշակել 70—75 հազար տոննա անասուն, նախատեսված 20—25 հազար (կենդանի քաշով) տոննայի դիմաց։

Խոշոր փոփոխություններ են կատարվել նաև կաթնարդյունաբերության բնագավառում։ Հնգամյակի տարիներին գործարկվել են Ստեփանավանի, Սիսիանի, Իջևանի, Լոռուտի, Շուռաբադի, Յանըղի պանրագործարանները, Կիրովականի, Քաջարանի և Ջերմուկի կաթի գործարանները։ Այս տարի շահագործման են հանձնվելու Կամոյի, Կրասնոսելսկի, Վարդենիսի, Կալինինոյի, Նոյեմբերյանի պանրագործարանները, որոնք հագեցված են հայրենական և արտասահմանյան ժամանակակից առաջավոր տեխնիկայով։ Ընդլայնվել և Միության առաջնակարգ ձեռնարկություններից մեկն է դարձել Երևանի կաթի կոմբինատը, որի արտադրական կարողությունը նախագծային 35 տոննայից հասել է 100—110 տոննայի։

Հիմնավորապես վերակառուցվել է նաև Երևանի յուղսառցարանը, ընդլայնվել ու համալրվել են պանրապահեստները, զգալիորեն ավելացել է սառնարանային կարողությունը։ Կառուցվում են Արթիկի, Մարտունու, Շամշադինի, Մուսայելյանի պանրագործարանները։ Այսպիսով, ներկայումս կաթի վերամշակման գործարանների արտադրական ընդհանուր կարողությունը մեկ



հերթափոխում կազմում է 262 տոննա կաթնամթերք (վերածած կաթի), որից պանիր՝ 30, կարագ՝ 19 տոննա։ Ներկա դրությամբ կաթնարդյունաբերության ձեռնարկություններն ի վիճակի են ընդունելու և վերամշակելու հանրապետությունում եղած ողջ կաթնահումքը։

Արտադրական նոր ձեռնարկությունների կառուցման և գործողների վերակառուցման հետ միասին 1965—1969 թթ. մինիստրության սիստեմում ստեղծվեցին նոր կազմակերպություններ ու ձեռնարկություններ, որոնք էապես օգնում են արտադրության տեխնիկական վերազինման գործին։ 1970 թվականին կգործարկվեն Սովետաշենի անասնագիրացման բազան և էջմիածնի խոզաբուծական վերարտադրության տնտեսությունը։

Վերջին հնգամյակում հանրապետության մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության հիմնական ցուցանիշները կարելի է ամփոփել հետևյալ աղյուսակում.

Հայկ. ՍՍՀ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության ապրանքային արտադրանքն ու իրացումը ընթացիկ հնգամյակում

| | 1965 թ. | 1970 թ. | Ապրանքային արտադրանքի և դրա իրացման աճը (տոկոսներով) | Տարեկան միջին աճը (տոկոսներով) |
|---|---|---|---|---|
| Միս (տոննաներով) | 20,300 | 23,800 | 117,4 | 3,5 |
| Երշիկեղեն (տոննաներով) | 6,900 | 12,56 | 182 | 17 |
| Կիսաֆաբրիկատ (տոննաներով) | 800 | 5000 | մոտ 6 անգամ | |
| Պահածո (պայմ. տուփ) | 3000000 | 4000 | 133 | 6,5 |
| Պանիր (տոննաներով) | 10,00 | 13,000 | 128 | 6,5 |
| Անարատ կաթնամթերք (տոննա.) | 43,00 | 86,00 | 200 | 20 |

Աղյուսակից երևում է, որ ապրանքային արտադրանքի և դրա իրացման աճը կազմում է 149,3, իսկ տարեկան միջին աճը՝ մոտ 10 տոկոս։ Նկատելիորեն բարձր են ապրանքային արտադրանքի աճի հիմնական ցուցանիշները, սակայն անհամեմատ լավ կլիներ ունենալ ավելի բարձր տեմպեր, հաշվի առնելով, որ նախկինում աճի այդ տեմպերն զգալիորեն ցածր են եղել։

Հնգամյակի տարիներին զգալի աշխատանք է կատարվել նաև արդյունաբերության մեքենայացման և ավտոմատացման ոլորտներում։ 1966—1969 թթ. արտադրական ձեռնարկություններում տեղադրվել են 700 նոր և մեքենայացված սարքավորումներ ու ավտոմատ գծեր։ Այս տարի մսի արտադրության ձեռնարկություններում մեքենայացման աստիճանը կազմում է 67, իսկ կաթնարդյունաբերության ճյուղում՝ մոտ 60—70, պանրագործության մեջ՝ 40—50 տոկոս։

Արտադրության տեխնիկական վերազինումը, անշուշտ, ինքնանպատակ չէ։ Այն օգնեց լուծելու ժամանակակից արտադրությունը բնորոշող մի շարք արմատական հարցեր։ Առաջին հերթին, դա օգնում է փաթեթավորելու մանր ապրանքները։ Այժմ արտադրվող մթերքների, հատկապես, կաթնամթերքների գերակշիռ մասը թողարկվում է փաթեթավորված։ Կաթնարդյունաբերությունը թողարկում է մոտ 20 տեսակի անարատ կաթնամթերքներ, այդ թվում՝ կաթը, մածունը, կեֆիրը, ացիդոֆիլինը, թթվասերը, կաթնաշոռը, ացիդոֆիլային մա-

ծուկը, պանրիկները, կաթնաշոռի տորթը, «Զեփյուռ» ըմպելիքը, 6 տոկոս յու-
ղայնությամբ մածունը և այլ կաթնամթերքներ առաքվում են միայն փաթեթա-
վորված։

Երևանի կաթի կոմբինատը 1969 թվականին արտադրել է 50 հազար տոն-
նա անարատ կաթնամթերք, որի մոտ 80 տոկոսը փաթեթավորված։ Մեր հան-
րապետության կաթնարդյունաբերության ձեռնարկությունները փաթեթավոր-
ված մթերքների թողարկմամբ Միության մեջ գրավում են առաջին տեղը։ Ար-
տադրանքի որակն ու ապրանքային արտադրանքի տեսքը բարեփոխելու հետ
միասին, նկատելի աշխատանք է տարված նաև մթերքների նոր տեսակների
արտադրման նպատակով։ Հնգամյակի տարիներին նախագծային-կոնստրուկ-
տորական բյուրոյի կողմից մշակվել ու արտադրության մեջ ներդրվել են
մթերքների մի շարք նոր տեսակներ, որոնցից արժե հիշատակել «Լոռի» և
«Եղեգնաձորի» անկեղև պանիրները, «Կոլոլակը» (միս), կաթնաթթվային
«Բարմ» պանիրը, «Առողջություն» կաթնա-սպիտակուցային մածուկը և այլն։

Կաթնարդյունաբերության ձեռնարկությունները (բացառությամբ շվեյցա-
րական պանրի արտադրության) մթերքներ են արտադրում հիմնականում
պաստերիզացված կաթից և մակարդների լրիվ օգտագործմամբ։ Մեքենայաց-
ման շնորհիվ հաջողությամբ լուծվեց նաև ձեռնարկությունը սառնարանային
կարողություններով ապահովելու հույժ կարևոր հարցը։ Արտադրական ձեռ-
նարկություններում տեղադրված սառնարանային տեղակայումների հզորու-
թյունն այժմ կազմում է 19,5 մլն կիլոգրամ կալորիա ժամ, այդ թվում մսի
կոմբինատներում՝ 9,8, իսկ կաթնարդյունաբերության ձեռնարկություններում՝
9,7 մլն կ/կալ. ժամ։ Առաջիկա հնգամյակում այն կհասնի 30 մլն կ/կալ. ժամի։
Տեխնիկական կոմպլեքս միջոցառումների կիրառման շնորհիվ, անհամեմատ
բարելավվել է նաև ձեռնարկությունների արտադրական- սանիտարական կուլ-
տուրան։

Ցավոք, արդյունաբերության տեխնիկական-տեխնոլոգիական վերազին-
ման հարցերը ոչ բոլոր դեպքերում է, որ հաջողությամբ են լուծվում. հումքա-
յին ռեսուրսների խնայողության մտահոգությունը երբեմն ստիպում է հրա-
ժարվել արտադրության լավագույն տեսակների ներդրման անհրաժեշտու-
թյունից։ Այդ նույն խնայողության նկատառումով կատարվում են նաև ասոր-
տիմենտի փոփոխություններ՝ ի վնաս արտադրանքի լավագույն տեսակների,
երբեմն՝ որակի։

Հանրահայտ է, որ արտադրության յուրաքանչյուր ճյուղի զարգացման
համար էական է հումքի առկայությունը։ Մեր հումքային ռեսուրսների աճի
տեմպերը դեռևս ցածր են, որոնք հաճախ արգելակում են տեխնիկական աճի
տեմպերը։ Բավական է նշել, որ այս տարի վերամշակվող կաթի մոտ 20 տո-
կոսն ստացվելու է չոր կաթից, որը կազմում է արտադրվող անարատ կաթնա-
մթերքների մոտ 45 տոկոսը։

Արդյունաբերության նորմալ ընթացքի համար բացառիկ դժվարություններ
է հարուցում նաև հումքի սեզոնայնությունը։ Հոկտեմբեր, մարտ ամիսներին
մթերվում է ամբողջ կաթի միայն 22—25 տոկոսը, մնացածը՝ մյուս ամիսնե-
րին։ Սեզոնայնությունը դժվարություն է ստեղծում նաև մսի արտադրության
բնագավառում։ Երբեմն արտադրական կարողությունների մեծ մասը տարվա
ընթացքում լրիվ բեռնվածությամբ շահագործվում է միայն 4—5 ամիս։

Ավելորդ չէ հիշատակել, որ արտադրանքի տարբեր տեսակների արտա-
դրական կարողությունների տարեկան շահագործման գործակիցն է. միս՝ 48,6,



երշիկեղեն՝ 68,8, պահածոներ՝ 20, չոր կեր՝ 75,8, անարատ կաթնամթերքներ՝
78,8, պանիր՝ 157, կաթնաշաքար՝ 32,6, պաղպաղակ՝ 45,6 տոկոս։

Այսպիսով, այսօր և վաղը մսի ու կաթի արդյունաբերության կարևորա-
գույն հարցերից մեկը հումքային բազայի ամրապնդումն է, որի հետ սերտո-
րեն առնչված են նաև արտադրության հետագա աճը և տեխնիկական քաղաքա-
կանության հարցը։

Հանրապետության մսեղենի և կաթնեղենի արդյունաբերությունը չափա-
զանց մեծ անելիքներ ունի առաջիկա հնգամյակում։ Նախատեսվում է զգալի
չափերով ավելացնել մսամթերքների և կաթնամթերքների արտադրությունը
և դրանց տեսակները։ Առաջիկա հնգամյակում ապրանքային արտադրանքի
աճը նախատեսվում է 46 տոկոս։ Արտադրանքի հիմնական տեսակների բնա-
գավառում նախատեսվում է աճ՝ միս 44, երշիկեղեն՝ 44, կիսաֆաբրիկատներ՝
81, պահածոներ՝ 50, պանիր՝ 11,5, անարատ կաթնամթերքներ՝ 53 տոկոս։

Անարատ կաթնամթերքների արտադրությունն զգալիորեն ավելացնելու
նպատակով հնգամյակում կավարտվի Երևանի նորակառույց կաթի կոմբինա-
տի շինարարությունը՝ մեկ հերթափոխում 200 տոննա կաթի վերամշակման և
20 տոննա պաղպաղակի արտադրության կարողություններով։ Կոմբինատը
հագեցված է լինելու ամենաառաջնակարգ տեխնիկայով, ունենալու է 1500
տոննա տարողության սառնարանային և 2000 տոննա տարողության պահես-
տային տնտեսություն։ Իր հիմնական և օժանդակ կառույցներով այն կդառնա
Սովետական Միության կաթնամշակման ամենամեծ ձեռնարկություններից
մեկը։

Շահագործման կհանձնվեն նաև Լենինականի կաթի կոմբինատը, Արթիկի,
Մուսայելյանի, Շամշադինի, Գորիսի, Սառնակունքի, Եղեգնաձորի, Ապարանի,
Թալինի պանրագործարանները, որոնց ընդհանուր կարողությունները մեկ հեր-
թափոխում կկազմեն մոտ 225 տոննա։ Առաջիկայում մասնավորապես փոխվե-
լու է նաև կաթի օգտագործման կազմությունը, որի հիմնական ուղղությունները
մշակվել և իրականացվում են արդեն ընթացիկ հնգամյակում։

Կաթի օգտագործման ստրուկտուրան 1965—1975 թթ.

| | 1965 թ. | 1975 թ. |
|---|---|---|
| Կաթ ընդամենը | 100 տոկոս | 100 տոկոս |
| Պանիրների համար | 51 | 38 |
| Յուղի | 21,2 | 8,2 |
| Անարատ կաթնամթերքների | 27,8 | 53,8 |

Արմատական փոփոխություններ են կատարվելու հատկապես պանիրների
արտադրության բնագավառում։ Պանրագործարանները կմասնագիտացվեն
ըստ արտադրության տեսակների, որը խթան կհանդիսանա թե՛ արտադրանքի
որակի և թե՛ ձեռնարկության արտադրական մակնիշի հեղինակության բարձ-
րացմանը։ Պանիրների մեծ մասը դուրս կբերվի աղաջրից, այն կփաթեթավոր-
վի պոլիմերային թաղանթներում, կպահպանվի և կհասունացվի դարակների
վրա։ Ըստ որում, արտադրության այդ տեխնոլոգիան ո՛չ միայն կբարձրացնի
արտադրական-սանիտարական կուլտուրան, այլև կբարեփոխի արտադրանքի
որակն ու ապրանքային տեսքը, կընդլայնի դրա պահեստավորման ու առաք-
ման հնարավորությունները։ Արդյունաբերությունն այս տարի թողարկելու է
մոտ 1000 տոննա այդ տիպի պանիր։

Որակական զգալի փոփոխություններ տեղի կունենան նաև կաթնամթերքների մյուս տեսակների արտադրության մարզում։ 1975 թվականին Երևանի կաթի կոմբինատը հերթափոխում կարտադրի մոտ 3000 տոննա բարձրորակ, դիմացկուն, ստերիլիզացված կաթ՝ թղթե ծրարներով։ Երևանի և Լենինականի կաթի կոմբինատներն անջատ-անջատ եղանակներով կարտադրեն 600 տոննա կաթնաշոռ։ Երևանի, Կիրովականի և Լենինականի կաթի ձեռնարկությունները շիճուկից և թանից կթողարկեն մոտ 5000 տոննա կաթնաթթվային ըմպելիքներ։

Խիստ փոփոխություններ են տեղի ունենալու նաև մսի արդյունաբերության ձեռնարկություններում։

Հնգամյակում կավարտվեն և շահագործման կհանձնվեն Երևանի մսի կոմբինատի նոր սառնարանը՝ 2100 տոննա տարողությամբ և կիսաֆաբրիկատների արտադրամասը՝ հերթափոխում 20 տոննա արտադրական կարողությամբ։ Կիրովականում կկառուցվի մսի նոր կոմբինատ, որն ի վիճակի կլինի հերթափոխում մշակելու 30 տոննա միս և 10 տոննա երշիկեղեն։ Կոմբինատը կունենա 2000 տոննա տարողության սառնարան։ Լենինականի, Կիրովականի և Ղափանի մսի կոմբինատներում 1971—1973 թթ. կիսաֆաբրիկատների մշակման համար կտեղադրվեն նոր գծեր, չորս կոմբինատներում կավտոմատացվեն սառնարանների ջերմային ռեժիմների կարգավորման պրոցեսները։

Դժվար է թվարկել այն բոլոր խնդիրները, որոնք սպասում են մեզ առաջիկայում։ Բավական է ասել, որ 1971—1975 թթ. հանրապետության մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության կատարելագործման ու զարգացման համար նախատեսվում են մոտ 43 մլն ռուբլի կապիտալ ներդրումներ, որից 25,3 մլն շինմոնտաժային նպատակներով։

Խոշոր հարցերի հետ մեկտեղ կան չլուծված շատ խնդիրներ, որոնց շուտափույթ լուծումը չափազանց շահեկան կլինի արդյունաբերության համար։

Այսօրվա վիճակով մեր արդյունաբերությունը թողարկում է մոտ 160 տեսակի մսամթերքներ և կաթնամթերքներ, որից 42 տեսակը ներդրվել է վերջին 2—3 տարիների ընթացքում։ Մոտակա տարիներին մթերքներն ավելի բազմազան ու բազմատեսակ են լինելու։ Արտադրանքի մոտ 90 տոկոսը պետք է փաթեթավորվի, այն էլ մանր բաժիններով։

Այս բնագավառում, չնայած կատարված աշխատանքին, դեռևս շատ անելիքներ ունենք։ Մեր հանրապետությունում, որտեղ քիմիական արդյունաբերությունը զարգացած է, նրա կարևոր ճյուղերից մեկը՝ սննդի քիմիան հետ է մնում։ Մեզ մոտ չեն արտադրվում ոչ ստվարաթղթից պատրաստված գեղեցիկ ձևավորված տուփեր և ոչ էլ պոլիմերային տոպրակներ ու տարաներ։ Սննդարդյունաբերության պոլիգրաֆ բազայի բացակայության պատճառով ապրանքային մակնիշներն անհրապույր ու վանող տեսք ունեն։ Մեզ թվում է, այս հարցերի լուծման համար արտադրության աշխատողների հետ միասին, պետք է մտահոգվեն նաև հանրապետության համապատասխան կազմակերպությունները։ Գեղեցիկ և ճաշակով փաթեթավորված մթերքը ոչ միայն սպառողական ֆունկցիա ունի, այլ լավ միջոց է մարդկանց էսթետիկական դաստիարակության համար։

Ինչպես այժմ, այնպես էլ առաջիկայում, մեզ մտահոգող կենսահույզ հարցերից մեկը պետք է լինի ստացվող հումքի և թողարկվող մթերքների որակի բարձրացումը։ Հայտնի է, որ մեր հանրապետությունում ստացվող կաթնամթերքն իր մաքրության, թթվության և յուղայնության աստիճանով հաճախ չի համապատասխանում սահմանված ստանդարտին։ Ավելին, լինում են դեպքեր,



երբ կաթը աղարտվում է ֆերմաներում, ճանապարհներին կամ արտադրության ընթացքում։

Առանձին ֆերմաներ կաթի ստացման, պահպանման ու առաքման կուլտուրայով տակավին չէին բավարարում ժամանակակից պահանջները։

Որակի նկատմամբ անպատասխանատու վերաբերմունք է նկատվում նաև արտադրական մի շարք ձեռնարկություններում։ Դեռևս կան արտադրության ղեկավարներ, ինժեներա-տեխնիկական ծառայության աշխատողներ, որոնց համար պետական ստանդարտի պահպանման, ինչպես նաև արտադրական և սանիտարական կուլտուրայի բարելավման ուղղությամբ մղվող պայքարը անցողիկ բնույթ է կրում, այն չի դարձել արտադրական առանձին օղակների ու կոլեկտիվների առօրյա աշխատանքի չափանիշ։

Արտադրական կուլտուրայի պակասության և ձեռնարկության արտադրական մակնիշի պատվի նկատմամբ ունեցած անպատասխանատու վերաբերմունքով պետք է բացատրել այն հանգամանքը, որ որոշ ձեռնարկություններ՝ Սևանի, Հրազդանի, Ղափանի, Արտաշատի, Հոկտեմբերյանի կաթի գործարանները, Վարդենիսի, Ղուկասյանի պանրագործարանները դեռևս արտադրում են անորակ կաթնամթերքներ։ Մսի և կաթնարդյունաբերության որոշ ձեռնարկություններում զգալի թերություններ կան նաև մթերքների պահեստավորման, պահպանման և առաքման հարցերում, որոնց վերացումն օրակարգի հարց է։

Արդյունաբերության տեխնիկական վերազինման և աշխատանքի գիտական կազմակերպման գործում մեծ է բանիմաց, տեխնիկապես գրագետ կադրերի դերը։ Չնայած ընթացիկ հնգամյակում ձեռնարկություններն ու կազմակերպությունները նկատելիորեն համալրվել են բարձրորակ կադրերով, սակայն արտադրության տեխնիկական զինվածությունը դեռևս առաջ է անցնում կադրերի տեխնիկական գիտելիքների մակարդակից։ Առաջիկայում ևս պետք է ձեռք առնել միջոցներ, առաջին հերթին հանրապետության բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, ապա՝ արդյունաբերության ուսումնական բազաներում արտադրության գործիմաց, նախաձեռնող հրամանատարներ պատրաստելու նպատակով։



# Սոցիալիստական ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## Ժողովրդական Բուլղարիայի բարգավաճումը

Աննախընթաց վերելք է ապրում ժողովրդական Բուլղարիան, սոցիալիստական համագործակցության լիիրավ անդամը, խաղաղության ու դեմոկրատիայի դրոշակակիրը:

Քառորդ դարից ավելի է անցել, երբ սոցիալիստական հեղափոխության հաղթանակի շնորհիվ երկրում իշխանությունն անցավ բանվոր դասակարգի ձեռքը, հաստատվեցին իսկական դեմոկրատական կարգեր, վերջ տրվեց բուրժուական կուսակցությունների կողմից կիրառվող հակաժողովրդական ու հակազգային քաղաքականությանը, որի հետևանքով Բուլղարիան դարձել էր ֆաշիստական Գերմանիայի տնտեսական կցորդը, ընդգրկվել երկրորդ համաշխարհային պատերազմի մեջ, կանգնել ազգային աղետի առաջ:

Պատմական այդ հաղթանակը, որը բացեց Բուլղարիայում սոցիալիզմի կառուցման պայծառ ուղին, արդյունք էր կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ աշխատավոր զանգվածների մղած հերոսական պայքարի և Սովետական Միության կողմից բուլղար ժողովրդին ցույց տրված անշահախնդիր եղբայրական օգնության:

Հեղափոխության հաղթանակից հետո հայրենական ճակատի ուժերից կազմված կառավարությունն անմիջապես կապերը խզեց ֆաշիստական Գերմանիայի հետ, նրան պատերազմ հայտարարեց, բարեկամական կապեր հաստատեց Սովետական Միության և խաղաղասեր մյուս ժողովուրդների հետ, դեմոկրատական սկզբունքներով վերակառուցեց բանակը, ողջ պետական մեքենան և անցկացրեց ժողովրդական մեծ ժողովի ընտրություններ:

Հակառակ իմպերիալիստական պետությունների կողմից պաշտպանվող ներքին ռեակցիոն ուժերի կատաղի դիմադրության, Հայրենական ճակատի կառավարությունը, կոմունիստների նախաձեռնությամբ, անցկացրեց ագրարային ռեֆորմ, պետական կառուցվածքի վերաբերյալ համաժողովրդական հանրաքվե և ժողովրդական մեծ ժողովի ընտրություններ: Ժողովրդական մեծ ժողովի ընդունած օրենքների հիման վրա կառավարությունն ազգայնացրեց մասնավոր արդյունաբերական ձեռնարկությունները, բանկերը, հանքերը, տրանսպորտը և մյուս արտադրամիջոցները: Վերացրեց բուրժուական հասարակարգի տնտեսական ու քաղաքական հիմքերը և նախադրյալներ ստեղծեց սոցիալիստական հասարակարգի կառուցման համար:

Հայտնի է, որ միապետական Բուլղարիան Եվրոպայի ամենահետամնաց երկրներից էր: Ժողովրդական տնտեսության մեջ արդյունաբերության բաժինը կազմում էր 24,8 տոկոս, որի հիմնական մասը թեթև արդյունաբերության արտադրանքն էր: Պատերազմը կործանարար ներգործություն ունեցավ երկրի



տնտեսության վրա, ընկել էր դրամի կուրսը, շարքից դուրս եկել գործարանների մեծ մասը և քայքայվել տրանսպորտը:

Երկիրը ծանր վիճակից դուրս բերելու և զարգացած երկրների մակարդակին հասցնելու նպատակով կոմունիստական կուսակցությունը, Գ. Մ. Դիմիտրովի գլխավորությամբ, Բուլղարիայի պատմական պայմաններին համապատասխան, ստեղծագործաբար կիրառելով մարքսիզմ-լենինիզմը, մշակեց երկրի ինդուստրացման և գյուղի սոցիալիստական վերակառուցման պլան:

Ժողովրդական Բուլղարիան, ՍՍՀՄ և սոցիալիստական ճամբարի մյուս երկրների եղբայրական օգնությամբ, իր գոյության 26 տարում դարձավ ժամանակակից ինդուստրիալ և զարգացած բազմաճյուղ գյուղատնտեսություն ունեցող երկիր: Նա ստեղծեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական բարձր կուլտուրա:

Սոցիալիստական Բուլղարիայի արդյունաբերությունը զարգանում է աննախընթաց տեմպերով: 1949—1968 թթ. արդյունաբերության արտադրանքը միջին հաշվով տարեկան ավելացել է 14,4 տոկոսով, ընդ որում, արտադրամիջոցների արտադրությունը՝ 17,25 տոկոսով: Ժողովրդական իշխանության ժամանակ Բուլղարիայում ստեղծվել են էներգետիկայի, քիմիական արդյունաբերության, սև ու գունավոր մետալուրգիայի և մեքենաշինության հզոր ձեռնարկություններ: Ժողովրդական Բուլղարիան մեկ շաբաթում արտադրում է այնքան էլեկտրաէներգիա, որքան բուրժուական Բուլղարիան՝ մեկ տարում: Մեկ շնչի հաշվով օգտագործվող էլեկտրաէներգիայի չափով նա հասել է Իտալիային, Հունաստանին գերազանցել 2, իսկ Թուրքիային՝ 9 անգամ:

Նախկինում տնայնագործական քիմիական ձեռնարկություններ ունեցող Բուլղարիան ներկայումս ունի խիստ զարգացած քիմիական արդյունաբերություն: Խոշոր քիմիական կոմբինատներ են կառուցվել Դիմիտրովգրադում, Ստարա Զագորում, Բուրգասում: Այժմ քիմիական արդյունաբերությունը 3 օրում տալիս է այնքան արտադրանք, որքան հին կարգերի ժամանակ արտադրվում էր մեկ տարում: Ժողովրդական Բուլղարիան մեծ նվաճումների է հասել նաև դեղագործական արդյունաբերության ասպարեզում: Նա արտադրում է 1800 անուն բժշկական պրեպարատ, որոնք արտահանվում են 64 երկրներ, ընդ որում, այնպիսի զարգացած երկրներ, ինչպիսիք են՝ ԱՄՆ-ը, ԳՖՀ-ն, Անգլիան, Ֆրանսիան, Իտալիան և այլն:

Սոցիալիստական Բուլղարիան ստեղծել է նաև մետալուրգիական արդյունաբերություն, որի խոշոր օջախները գտնվում են Պերնիկում, Կրեմիկովցկում, Կիրջալիում, Պլովդիվում: ՄԱԿ-ի տնտեսական հանձնաժողովի տվյալներով, աշխարհի 130 պետություններից պողպատ են արտահանում 27-ը: Դրանցից մեկը Բուլղարիան է, որի արտադրանքը վաճառվում է 26 երկրներում: Կապարի և ցինկի արտադրությամբ (մեկ շնչի հաշվով) սոցիալիստական Բուլղարիան առաջ է անցել խոշոր կապիտալիստական պետություններից, այդ թվում՝ ԱՄՆ-ից, Ճապոնիայից, Անգլիայից, Ֆրանսիայից, Իտալիայից, իսկ պղնձի արտադրանքով՝ Ճապոնիայից, Ֆրանսիայից, Իտալիայից:

Ժողովրդական Բուլղարիայում հատուկ ուշադրություն է նվիրվում արտադրամիջոցների արտադրությանը, մասնավորապես մեքենաշինությանը: Ներկայումս նա արտադրում է 280 տեսակ մեքենա ու սարքավորում, որոնք կազմում են արդյունաբերության ընդհանուր արտադրանքի 25 տոկոսը, նախապատերազմյան 2,4 տոկոսի դիմաց: Այժմ Բուլղարիան արտադրում է նավեր, վագոններ, տրակտորներ, մետաղահատ հաստոցներ, ներքին այրման շար-

ժիչներ, էլեկտրամոտորներ, հեռուստացույցեր և այլ բարդ սարքավորումներ, մինչդեռ բուրժուական կարգերի ժամանակ անգամ ամենահասարակ մեքենաները ներմուծվում էին:

Ժողովրդական Բուլղարիայում բուռն թափով զարգանում է նաև թեթև և սննդի արդյունաբերությունը: Կառուցվել են կոշիկի, գործվածքների, պահածոների, գինու, ծխախոտի ժամանակակից ֆաբրիկաներ ու գործարաններ, որոնք ունեն գիտության և տեխնիկայի վերջին նվաճումների մակարդակով կառուցված սարքավորումներ: 1967 թ. Բուլղարիան արտադրել է 306,9 հազար մետր բամբակյա և 22,4 հազար մետր բրդյա գործվածքեղեն, նախապատերազմյան 34,1 հազար մետր բամբակյա և 5,2 հազար մետր բրդյա գործվածքեղենի դիմաց: Նույն ժամանակամիջոցում բանջարեղենի պահածոների արտադրանքը 4,6 հազարից հասել է 240 հազար տոննայի, իսկ հատապտուղների և մրգերի պահածոներինը՝ 5,6 հազարից 196,3 հազար տոննայի:

Տնտեսական փոխօգնության խորհրդի շրջանակներում իրագործվող սերտ համագործակցության շնորհիվ ժողովրդական Բուլղարիայի արդյունաբերության արտադրանքը, նախապատերազմյան մակարդակի համեմատ, մեծացել է 30 անգամ, ընդ որում արտադրամիջոցների արտադրանքը՝ 67, իսկ սպառման առարկաներինը՝ 16 անգամ: Սոցիալիստական Բուլղարիան 10 օրում տալիս է այնքան արդյունաբերական ապրանք, որքան տարեկան արտադրում էր մինչև հեղափոխությունը: Ազգային եկամտի ավելի քան 50 տոկոսը Բուլղարիան ստանում է արդյունաբերությունից:

Արմատապես փոխվել է նաև գյուղի պատկերը: Միապետական Բուլղարիայում կային 1.100 հազար մանր գյուղացիական տնտեսություններ, որտեղ արտադրության հիմնական գործիքը փայտե արորն էր, իսկ քարշող ուժը՝ եզը: Գյուղացիությունը տառապում էր սիստեմատիկ անբերրիությունից, սակավահողությունից և բարձր հարկերից: Բուլղարիան բերքատվության և անասնապահության մթերատվությամբ Եվրոպայում գրավում էր վերջին տեղերից մեկը:

Կոմունիստական կուսակցությունը, ստեղծագործորեն կիրառելով գյուղի կոոպերացման լենինյան պլանը, զուգակցելով գյուղացու մասնավոր և հասարակական շահերը, կամավորական սկզբունքով կազմակերպեց աշխատանքային կոոպերատիվ երկրագործական տնտեսություններ (ԱԿԵՏ) և ամրապնդեց բանվորագյուղացիական դաշինքը՝ պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական հիմքը: Գյուղի սոցիալիստական վերակառուցման շնորհիվ պայմաններ ստեղծվեցին գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման, պարարտանյութերի օգտագործման և էքստենսիվից ինտենսիվ արտադրության անցնելու համար: Սոցիալիստական գյուղատնտեսությունն ունի հզոր նյութատեխնիկական բազա՝ ավելի քան 75,6 հազար տրակտոր, 14,5 հազար կոմբայն և բազմաթիվ այլ տիպի գյուղատնտեսական մեքենաներ: Այժմ ոռոգելի է մոտ մեկ միլիոն հեկտար հող, որը 1939 թ. ոռոգելի տարածության համեմատ 30 անգամ ավել է:

Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման, պարարտանյութերի օգտագործման, ոռոգելի տարածությունների մեծացման և ԱԿԵՏ-ի շնորհիվ մեկ հեկտարից ստացվող ցորենի բերքն ավելացել է 2,5, եգիպտացորենինը՝ 3, շաքարի ճակնդեղինը՝ 2,2 անգամ: Բազմաճյուղ սոցիալիստական գյուղատնտեսության արտադրանքը, նախապատերազմյան տարիների համեմատ, մե-



ծացել է 2 անգամ, չնայած գյուղատնտեսության մեջ աշխատողների թիվը պակասել է նույնպես 2 անգամ:

Բուլղարիան (մեկ շնչի հաշվով) ծխախոտի արտադրանքով և գլանակների արտահանմամբ աշխարհում առաջին տեղն է գրավում: Տարեկան նա արտահանում է 200 հազար տոննա թարմ պոմիդոր և երկրում արտադրվող 350 միլիոն լիտր գինու 70 տոկոսը: Բուլղարական գինեգործները միջազգային մրցույթներում ու ցուցահանդեսներում ստացել են 407 ոսկե և 500 արծաթե մեդալ:

Ժողովրդական տնտեսության ծաղկմանը զուգահեռ մեծանում է Բուլղարիայի էքսպորտը: Նա առևտրական կապեր ունի 102 պետության հետ: Եթե առաջ Բուլղարիան հիմնականում արտահանում էր գյուղատնտեսական ապրանքներ, ապա այժմ արտահանում է նաև արդյունաբերական ապրանքներ: Նրա արտաքին առևտրի 78 տոկոսը կատարվում է սոցիալիստական երկրների հետ, ընդ որում, ընդհանուր ապրանքափոխանակության մեջ Սովետական Միության բաժինը կազմում է 54 տոկոս:

Ժողովրդական Բուլղարիան տնտեսական կապեր ունի 65 նոր զարգացող երկրների հետ: Այդ երկրներին նա օգնում է կառուցելու արդյունաբերական ձեռնարկություններ, հատկացնում կոմպլեքս սարքավորումներ և զանազան տիպի հաստոցներ ու մեքենաներ: Միաժամանակ նրանց համար պատրաստում է զանազան մասնագիտությունների ազգային կադրեր:

Բուլղարիայի կոմունիստական կուսակցության և ժողովրդական կառավարության ամենօրյա հոգատարության առարկան են աշխատավորության նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումը: Ժողովրդական տնտեսության աննախընթաց զարգացման շնորհիվ նրա ազգային եկամուտը մեծացել է 5, իսկ մեկ շնչի հաշվով՝ 4 անգամ: Ազգային եկամտի 75 տոկոսը հատկացվում է աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացմանը, իսկ 25 տոկոսը՝ ընդլայնված սոցիալիստական արտադրության կազմակերպմանը: Բանվորների և ծառայողների անվանական աշխատավարձը 1952—1967 թթ. 646-ից հասել է 1284 լևի, իսկ ԱԿԵՏ-ների անդամներինը՝ 1955—1968 թթ. 306-ից՝ 900 լևի: Բացի այդ, կոոպերատորները եկամուտներ են ստանում տնամերձ հողամասերից: 1970 թ. կոոպերատորների աշխատավարձը հավասարվելու է բանվոր-ծառայողների աշխատավարձին:

Տարեցտարի ավելանում են աշխատավորների թոշակները, բժշկական ու կուլտուրական սպասարկմանը հատկացվող ֆոնդերը: Թոշակ է տրվում նաև ԱԿԵՏ-ների անդամներին: Հանրապետությունում զարկ է տրվում բնակարանների, հիվանդանոցների, պոլիկլինիկաների, առողջարանների, հանգստյան տների, դպրոցների, մանկապարտեզների, սպորտային կառուցվածքների շինարարությանը: Այժմ մոտ 900 հազար երեխա սովորում են դպրոցներում: Գյուղերում աշխատում են հազարավոր ուսուցիչներ, բժիշկներ, գյուղատնտեսներ, անասնաբույժներ, ինժեներներ ու տեխնիկներ:

Ժողովրդադեմոկրատական կարգերի ժամանակ վերացվեց անգրագիտությունը, մտցվեց 8-ամյա պարտադիր, պոլիտեխնիկական կրթության սիստեմ: Բուհերի դռները լայն բացվեցին աշխատավորների երեխաների առջև: Այժմ ժողովրդական հանրապետության 26 բուհերում 170 մասնագիտություններ են սովորում 82 հազար ուսանող, մինչդեռ նախահեղափոխական Բուլղարիայում ընդամենը կար 5 բուհ, ուր սովորում էին ունևորների 10 հազար երեխաներ: Բնակչության համեմատ, ուսանողության թվով Բուլղարիան

աշխարհում 3-րդ տեղն է գրավում, տասը հազար բնակչին ընկնում է 102,6 ուսանող:

Ժողովրդական Բուլղարիայում ստեղծվել է նոր, աշխատավորական ինտելիգենցիա, որի շարքերում պատվավոր տեղ ունեն սորկացած վիճակից ազատագրված կանայք: Ներկայումս Բուլղարիան ունի 6500 կին ինժեներ ու տեխնիկ, 2500 կին գիտնական: Կանանց մեծ մասն աշխատում է ժողովրդական կրթության, կուլտուրայի և արվեստի ասպարեզներում:

Ազգաբնակչության կենցաղում մեծ տեղ են գրավում ռադիոն, հեռուստատեսությունը, կինոն, թատրոնը և կուլտուրայի տները: Ժողովրդական իշխանության տարիներին ռադիոֆիկացվել է 2358 բնակավայր: 1967 թ. տվյալներով Բուլղարիայում կա 420 հազար հեռուստացույց: Մեծ մասշտաբներով հրատարակվում են գրքեր, ամսագրեր և բազմատիրաժ թերթեր: Բնակչության կուլտուրական կյանքում խոշոր դեր են խաղում կուլտուրայի տները, որոնց թիվը հասնում է 4141-ի: Կուլտուրայի տներում կան կինոդահլիճներ, գրադարաններ, գործում են ինքնագործ և զանազան այլ խմբակներ:

Ժողովրդական հանրապետությունում թատրոնների թիվը 13-ից հասել է 39-ի: Հինգ քաղաքներում կան պետական օպերաներ: Ստեղծվել է Հայրենական կինեմատոգրաֆիա, որի նկարահանած ֆիլմերից 70-ն արժանացել են միջազգային մրցանակի: Կինոն դարձել է ժողովրդական մասսաների սեփականությունը: Կինո-թատրոնների թիվը հասնում է 2973-ի, որից 359-ը քաղաքներում է, 2614-ը՝ գյուղերում:

Ժողովրդական իշխանության տարիներին ծաղկում է նաև գիտությունը: Հանրապետությունում կա շուրջ 200 գիտական հիմնարկ, որտեղ աշխատում է 9 հազար գիտնական: Բուլղար ժողովրդի ազգային հպարտությունը գիտությունների ակադեմիան է, որն ունի 33 ինստիտուտ և 5 գիտահետազոտական լաբորատորիա: Գյուղատնտեսական գիտությունների ակադեմիան ունի 50 գիտական բազա, իսկ տեխնիկական գիտությունների մարզում գործում է 60 գիտական ինստիտուտ: Գիտության ասպարեզում ձեռք բերած խոշոր նվաճումների համար բուլղար բազմաթիվ գիտնականներ ընտրվել են զանազան երկրների գիտությունների ակադեմիաների պատվավոր անդամներ:

Ժողովրդական Բուլղարիայի արտաքին քաղաքականությունը հենվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի և տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականության սկզբունքների վրա: Նրա տնտեսական ու քաղաքական անկախության հիմքը սոցիալիստական երկրների հետ համագործակցության, եղբայրական բարեկամության, քաղաքական միասնության և Վարշավայի պայմանագրի երկրների պաշտպանունակության հզորության ամրապնդումն է:

Ժողովրդական հանրապետությունն ակտիվ հանդես է գալիս իմպերիալիստական պետությունների ագրեսիվ պլանների դեմ, պաշտպանում է ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը և կողմ է խոշոր պետությունների ընդհանուր և լրիվ զինաթափմանը: Նա մեծ ավանդ է ներմուծում աշխարհում խաղաղության պահպանման գործում: Ժողովրդական կառավարության այդ քաղաքականությունը մեծացրել է Բուլղարիայի հեղինակությունը միջազգային ասպարեզում:

Ժողովրդական հանրապետության արտաքին քաղաքականության անկյունաքարը սովետա-բուլղարական բարեկամությունն է, որն սկսվել ու ամրապնդվել է երկու ժողովուրդների լավագույն զավակների արյան գնով, ներքին ռեակցիոն ուժերի և օտարերկրյա նվաճողների դեմ մղած համատեղ պայքարում: Այդ բարեկամությունը Բուլղարիայում սոցիալիզմի կառուցման ոգեշնչման, օպտիմիզմի և աշխատանքային էնտուզիազմի կենարար աղբյուրն է:



Դարերի խորքից է գալիս նաև հայ-բուլղարական բարեկամությունը: Արևմտյան Հայաստանում տեղի ունեցած կոտորածների հետևանքով մեծաթիվ հայեր գաղթեցին հայրենիքից: Նրանց մի մասը հանգրվան գտավ Բուլղարիայում և դարձավ բուլղար ժողովրդի բախտակիցը: Հայ և բուլղար ժողովրդի ճակատագրի նմանությունը, համատեղ ազատագրական պայքարը նրանց բարեկամությունը դարձրեց ջերմ և մտերմական: Հայտնի է, որ Բուլղարիայի կոմունիստական կուսակցության Կենտկոմը սրտանց ողջունեց սովետական կարգերի հաղթանակը Հայաստանում, իսկ հայ ժողովրդի զավակները, չխնայելով իրենց կյանքը, պայքարեցին Բուլղարիայի աշխատավորության ազատագրման համար: Այժմ բուլղարահայերն ակտիվ մասնակցում են Բուլղարիայի սոցիալիստական հասարակարգի կառուցմանը:

Սոցիալիստական Բուլղարիայում հայերն ապրում են իրենց ազգային մշակութային կյանքով: Բուլղարահայ մշակութային միությունը հրատարակում է «Երևան» շաբաթաթերթը, որի էջերում լուսաբանվում են բուլղարահայերի կյանքը, Սովետական Հայաստանի առօրյան:

Բուլղարիայի ժողովրդական կառավարության և կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ բուլղարահայ բարեկամությունը գնալով ավելի է ամրապնդվում:

Ժողովրդական հանրապետության հասարակական-քաղաքական կյանքի բնորոշ գիծը ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունն է՝ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Հայրենական ճակատի կողմից աշխատավորության դաստիարակությունը հայրենասիրության ու սոցիալիզմի ոգով: Բուլղարիայի կոմունիստական կուսակցությունը վճռականորեն դատապարտում է ժամանակակից ռևիզիոնիզմի առաջ քաշած «լիբերալացման» թեորիան, որը տանում է դեպի սոցիալիստական պետության թուլացում, բանվոր դասակարգի ավանգարդային և կուսակցության ղեկավար ու կազմակերպչական դերի ժխտում: Միաժամանակ Բուլղարիայի կոմունիստական կուսակցությունը դատապարտում է նաև մարքսիզմ-լենինիզմը դրժող Մաոի խմբի «մոդելը», որը կուսակցության և պետության մեջ ոչնչացրել է ղեկավարման դեմոկրատական մեթոդները և պրոլետարիատի դիկտատուրան փոխարինել ռազմա-բյուրոկրատական դիկտատուրայով:

Բուլղարիայի կոմունիստական կուսակցությունն անսահման նվիրված է մարքսիզմ-լենինիզմին, հետևողականորեն պայքարում է նացիոնալիզմի դեմ և ջերմորեն պաշտպանում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը: Պրոլետարական ինտերնացիոնալիզմի գլխավոր չափանիշը նա համարում է ՍՄԿԿ ու Սովետական Միության հետ ունեցած բարեկամությունը և վճռականորեն դատապարտում է հակասովետիզմը:

Լ. Ա. ԲԱՅՐԱՄՅԱՆ



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ԱՐԵՎՄՏԱՀԱՅ ԴԵՄՈԿՐԱՏՆԵՐԸ ԲԱՐՈՅԱԿԱՆԻ ՉԱՓԱՆԻՇԻ ՄԱՍԻՆ

*XIX դարի 50—60-ական թվականների արևմտահայ դեմոկրատների հոգևոր ժառանգության մեջ բարոյագիտական ուսումնասիրությունները պատշաճ տեղ են գրավում։ Հաղորդակցվելով ֆրանսիական լուսավորիչների, Մ. Նալբանդյանի և ռուս հեղափոխական դեմոկրատների գաղափարներին, նրանք արձագանքում էին դարաշրջանի հասարակական-քաղաքական ամենահրատապ հարցերին։ Գտնվելով ազգային-ազատագրական շարժումների հորձանուտում, նրանք կրքոտությամբ արծարծում էին հասարակության ու անհատի փոխհարաբերության, անձնավորության վարքագծի պրոբլեմը։*

*Մատթեոս Մամուրյանի՝ պատմա-փիլիսոփայական բնույթի հայկական նամակաշարից ակնհայտ է, որ Հելվեցիուսը հայ իրականության համար նորահայտ անուն չէր։ Բավական է միայն այն պնդումը, թե գիտությունը լույս է, և հայն սկսում է կարդալ Սպինոզա, Հելվեցիուս։*

*Դա նրանց ստեղծագործությունների գիտական ճանաչման վկայությունն էր։ Սրանք այն մտածողներն էին, որոնք իրենց ստեղծագործություններում ջանում էին սահմանազատվել կրոնական բարոյականությունից։*

*Այնուհետև, ճիշտ ըմբռնված անձնական շահի թեման տեղ է գտել նաև Սպինոզայի էթիկայում։ Հոլանդացի փիլիսոփան բանականության օրենք է հռչակում իսկական առումով օգտակարը, բարոյական կատարելության ձգտումը, ինքնագոյության պահպանումը, մարդկային էության կողմից այն հասումը, թե յուրաքանչյուր ոք պետք է իրեն սիրի։ Մարդկային գործողությունների էգոիստական շարժառիթը Մամուրյանի մոտ ստանում է «մարդս իր շահուն կնայի» ձևակերպումը։ Նման մոտեցումը շատ կողմերով հիշեցնում է Չերնիշևսկուն, որն այն թեզն էր առաջ քաշում, թե գործնական հարցերում բոլոր խոհեմ մարդիկ ղեկավարվում են էգոիստական համոզմունքով։*

*Մամուրյանը էգոիզմի դրսևորման օրինակներ է բերում պատմությունից։ Երբ Լուի ԺԴ-ն, մտրակը ձեռքին, Փարիզի ժողովրդարան էր մտնում և գոչում՝ «Պետությունը ես եմ», հետապնդում էր իր իշխանասիրության ու մեծության ընդգծման նպատակ։ Երբ Նապոլեոնը թիկնապահ զորքով Սեն-Կլուի խորհրդարան էր մտնում, և ազգային երեսփոխանները փախչում էին պատուհանից, նրան այստեղ բերողը «փառամոլ զորապետն» էր։*

*Հայտնի է, որ չկարողանալով տարբերակել մարդկային հասարակությունը որպես իրական աշխարհի նոր որակ, որտեղ գործում են զարգացման այլ օրենքներ ու շարժիչ ուժեր, ֆրանսիական մատերիալիստները, բնականաբար, ամբողջ խորությամբ չտեսան անհատի և հասարակության դիալեկտիկայի ողջ հարստությունը։*

*Ֆրանսիական մատերիալիստներին բարոյականի չափանիշի հարցում*



*համամիտ էին արևմտահայ դեմոկրատներ Գ. Չիլինկիրյանն ու Ա. Հայկունին։ «Պետք է գիտնալ,— գրել է Հայկունին,— թե բնության մեջ գտնված ամեն օրենք Տիեզերական է, և բնությունը չունի այնպիսի օրենք մը, որ մասնավոր լինի, ամենաստորին ճճիներեն սկսյալ մինչև մարդս միևնույն օրենքներով կը ծնին, կը ծնանին և կ'այլափոխին կամ կը մեռնին, նմանապես բուսականները, հանքայինք և այլն մի և նոյն օրենքներով կը գոյանան, կը գոյացնեն և կ'այլափոխին, և բոլոր տիեզերքին մեջ իր մը... գոյացություն մը անգամ չիկայ որ զատ կամ մասնավոր օրենքի մը ազդեցության ներքև գտնվի» (Ա. Հայկունի,* Կաղտնիք բնության կամ սկզբունք մարդկային ծննդականության, *Կ. Պոլիս, 1863 թ., Առաջաբան)։*

*Չիլինկիրյան-խմբագիրը բնության օրինաչափությունների և բարոյական երևույթների միջև ընդհանրություն էր տեսնում։ Հետագայում նա վերանայեց իր հայացքները, սակայն անհետևողական գտնվեց։ Ավելի ուշ, «Ծաղիկ»-ում տպագրած զմյուռնական նամականիում նա կրկին կանգնեց բնության և սոցիալական օրգանիզմի նույնացման ուղու վրա։ «Եղանակներու հոլովումեն ոչ միայն բնական այլ նաև ընկերական փոփոխում մը կը հետևի...» («Ծաղիկ», 1866 թ., № 127, էջ 517)։*

*Մամուրյանն ընդունում է կյանքի հետ գիտության համընթացության գաղափարը. գիտության կողմից նոր օրինաչափությունների բացահայտումն օգնում է մարդու մտահորիզոնի ընդլայնմանը։ Ժամանակի սահմանման նրա փիլիսոփայական սկզբնաղբյուրը XVIII դարի ֆրանսիական լուսավորիչ Ռուսոն է։ «Ի՞նչ է ժամանակը։ Շարժուն չափ մ'անշարժ հավիտենականության»։*

*Մամուրյանի էթիկական ընկալումներում մարդը բնավ դուրս չի մղվում բնությունից, վերջինիս հատկություններից։ Նրա* Անգլիական նամականիում *ուշագրավ մտքեր կան ֆիզիկական բավականության վերաբերյալ, որը որոշվում է միջավայրի, անհատի էության, խառնվածքի, մտավոր զարգացման և այլ հատկանիշների ու հանգամանքների առկայությամբ։ Յուրաքանչյուրը մտածում է ամեն կերպ «բարեբաստիկ» ժամերն ավելացնելու մասին։*

*Իսկ ինչպիսի՞ն է վերաբերմունքը հոգեկան տվայտանքի նկատմամբ։ Այն տարբեր մարդկանց մոտ արտահայտման տարբեր ուժ է ստանում, որը բոլորն էլ փորձում են մոռանալ ֆիզիկական բավականության օգնությամբ։*

*Մամուրյանը պաշտպանում է բավականության դեմոկրիտյան կոնցեպցիան։ Բավականությունը, երբ վերածվում է բացարձակապես զգայականության, ձեռք է բերում բացասական գծեր և վտանգում հենց իր՝ անհատի առողջությունն ու բարեկեցությունը։ Երիտասարդության շրջանում ստվարանում է նրանց թիվը, ովքեր զբաղված են լոկ «աղմուկի, վայնասուն», խրախճանքի փնտրտուքով։ Նրանք առողջություն, հարստություն, ամեն բան զոհում են կյանքի բարիքները վայելելու համար։ Թեթև վայելքը հոգեկան անբավարար խորունկության ապացույցն է նույնիսկ արվեստում։*

*Սվաճյանի համար առաջնայինը հոգեկան բավականությունն է, որի հրատապությամբ էր թելադրված հայ հեղափոխական-դեմոկրատի երգիծանքը։ Նա նկատել է, որ առօրյա ազդեցություններն ու կրքերն ազդում են մարդկային հանրության վրա, փոփոխվում ոչ ըստ ցանկության, այլ փոփոխվող պարագաների հետ։*

*Ըստ Չիլինկիրյանի, կրթությունն օբյեկտիվ առարկաների և դրանցից հարուցվող զգայականի կարգավորիչն է։ «Միրտը ու միտքը կրթությամբ միայն կը կազմվին. ուրեմն, այնինչ կիսակատար կրթություն առնողը անգամ ազատ չմնար կրից հրապույրքեն, կրթության անունը, և ոչ թե զինքը ճանչցող տգետը ի՞նչպես կարելի է որ ինքզինքին տեր ըլլայ։ Հայտնի է որ այսպիսին անդառնալի կերպով անձնատուր կըլլայ իր բուռն կիրքերուն, և իր այս վիճակին մեջ խղճմտանքն ալ կորսվելով՝ անասուններն ալ ստորին էակ մը կըլլայ...» («Ծաղիկ», 1861 թ., № 7, էջ 53)։*

*Լոկ զգայական բավականությամբ առաջնորդվելը հարուցում է հասարակական պարտավորությունների թուլացում։ Սպանելով անհատի մեջ ամեն բարոյական վեհ, այն շատ է առօրեականությամբ սահմանափակում նրա կյանքի իմաստը։*

Հայկունին, որը հաղորդակցվում էր եվրոպական մտքի հետ ու այդ աշխարհամասի «մեղվաջան հեղինակաց շնորհիվ բավական տեղեկություն» ունի իր տրամադրության տակ «մարդկային կազմության ամեն օրենքներուն» վերաբերյալ, վճռականապես հակադրվում է XIX դարի փիլիսոփաների կողմից կոպիտ էպիկուրականության ոգով բավականության վերամշակման դեմ: «...Անհնար է զգայական հատկությանց ազատություն տալ, և անձնարցակ, և երջանիկ լինիլ. հիրավի խել մը իմաստակներ, որոնք վերջին դարուս մեջ իբր հասարակաց կրթիչ ճոռոմաբանությամբ չեն դադարիր քարոզելեն թե. «Մարդս երջանիկ լինելու համար՝ իր ամեն բաղձանքները հագեցնելու է, և իր զգայական հանգամանքները գրկելով հարստահարելու չէ»: Բայց և այնպես ցավալի է տեսնել, որ այս փիլիսոփոսները շատ քիչ տեղեկություն ունին մարդկային կազմվածքին, անոր բնության հետ ունեցած առնչությանց, և անոր ներկայ անբնական կացության վրայ... ճշմարիտ է որ մարդուս առաջնորդը ամեն բանի մեջ բնությունը լինելու է, բայց և այնպես՝ գիտնալ հարկ է որ մարդկային սեռը այժմ անանկ վրիպած է բնութենեն անխելք դաստիարակությամբ, որ իրեն համար նոր բնություն մը ստեղծած կամ հառաջ բերած է...»: Ո՞վ կարող է ուրանալ, թե օրգանիզմի համար վնասաբեր հաճույքի մշտապես դիմողը «իր զգայական հանգամանաց չի ծառայեր... կյանքը կարճցունելը բնակա՞ն է...» (Ա. Հայկունի, էլիզա կամ վերջին արևելյան պատերազմի ժամանակ տեղի ունեցած իրական դեպ մը, Զմյուռնիա, 1861, էջ 51):

Նման դիրքավորում ունենալով հեդոնիզմի կոպիտ դրսևորումների նկատմամբ, արևմտահայ դեմոկրատները բնավ չէին բացառում անձնական շահի մոմենտը մարդկային գործողություններում, այն խելացի զուգակցելով ալտրուիզմի հետ:

Սվաճյան մտածողի հայացքներում մարդը ոչ միայն օժտված է իր անձի պահպանության հոգացողությամբ, այլև ընկերակցության ցանկությամբ: «Ընկերությամբ ապրել», սեփական վիճակը հասկանալ. հատկանիշներ են, որոնք մարդուն առանձնացնում են սոսկ կենսաբանական գոյությունից:

Հայ դեմոկրատները, ինչպես նրանց ռուս համախոհները, չէին կարող բացառապես ապավինել հելվեցիուսյան էթիկական սկզբունքներին: Ջերնիշևսկին իրավացի էր, որ Հելվեցիուսի տեսադաշտից դուրս է մնացել, թե ինչ է անհրաժեշտ, որպեսզի մնացածները չտուժեն անհատի երջանկությունը իրականության վերածելիս: Դրան սաես համահնչում էր բարոյականի վերաբերյալ չիլինկիրյանական դատումը. «...երբ մարդս անձնական շահուն համար ուրիշինը կզոհե, այս շահը իրավունք մ՚ըլլալե կը դադրի և կըլլայ ինքնամոլություն, և մենք ամեն անգամ որ անձնական շահը կը դատապարտենք, կ՚ակնարկենք միշտ մոլության մը» («Ծաղիկ», 1866, № 123, էջ 483):

«Անձնական շահը մարդուն առաջնորդն է, զվարճությունն իր նպատակը: Լավ կառավարությունը մեքենա մ՚է, որու շարժիչ զորությունը չէ թե բարոյական օրենք... այլ ավինն է, բանտն է, թիարանն է» (Մ. Մամուրյան, Երկեր, էջ 167). սա է «բանական էգոիզմի» տեսության բուրժուական վախճանը: Մամուրյանը բացահայտում է շահամոլության սոցիալական էությունը: Պոլսի բուրժուականացող ամիրաները այլազգի մեծատունների հետ կեղեքում են Հայաստանը «իրենց շահուն համար»: «Նյութական զորությունը» ավելի շատ հրապույր ունի, հետևաբար ավելի շատ «կուսակիցներ» է ձգում, իսկ դա ազգերի համար թույն է:

Մամուրյանը և մյուս դեմոկրատները մտահոգված էին հայ ազատագրական շարժման ծավալմամբ ու խորացմամբ: Նա առաջարկում էր նախ մարդկային բնությունը, սովորությունները փոխել, ապա նոր՝ հաստատությունները: Մամուրյանը, ինչպես նախամարքսյան մյուս մտածողները, չհասկանալով հասարակական-պատմական պրոցեսում նյութական արտադրության վճռական դերը, բարոյախոսության գիտակցության այդ ձևի հարաբերական ինքնուրույնության ետևում չնկատեց տնտեսական հարաբերությունների որոշիչ դերը:

Բուրժուազիան, երբ պատմական հանգամանքների բերումով օպոզիցիայից անցավ տնտեսական ղեկավարման վահանակին, տեղի ունեցավ բարոյական արժեքների վերարժեքավորում: էգոիզմը վերաձևվեց բուրժուական ինդիվիդուալիզմի վրա: Հենց այդ էգոիզմն է, որ չի համատեղվում Մամուրյանի աշխարհազգացողության մեջ բարոյականի չափանիշի հետ: Արևմտահայության սահմանադրական զգացումները չարչիական էգոիզմին ծառայեցնելը ատելի էր նրան: Նրան, ում ծանոթ էր սահմանադրական ազգերի պատմությունը, միանգամայն պարզ էր, որ հասարակական շահը չէր տարբեր հոսանքների բախումներում սահմանադրության դեմ հանդես եկողների «միակ ուղեցույցը»: Հետադեմների «շարժառիթը կամ պաշտոնական շուքն է, կամ անձնական շահը, կամ գրական շողոքորթություն մը...» (Մ. Մամուրյան, Երկեր, էջ 487): էգոիզմի բովանդակության նեղացումը օբյեկտիվ պայմանների կնիքն է: «Մեքենական դարը» երիտասարդության մեջ խեղում է «անուշաբույր զգացմունքը», սրտի վսեմ թռիչքը, քաջալերելով միայն «մաղձային, եսական, շահախնդիր խորհուրդներ»:

Առաջադիմության պայքարում անզիջում էր Սվաճյանը: Նրան անհասկանալի էր ամեն մի շահ, որը նեղ, ինդիվիդուալիստական հակասության մեջ էր մտնում հասարակական առաջընթացի հետ: Նա լուսավորության թշնամիների շարքն է դասում նրանց, ովքեր ազգային գործերում ունենալով կշիռ, եղծում, ի չիք են դարձնում առաջադիմության նպաստող քայլերը, դրանց տեղը «իրենց կամքը... հավատքը և շահը թագավորեցնելու» համար: Սվաճյանը ձաղկում է այն «եսականությունը», որը «ուժ ունի հասարակաց բարվույն դեմ»:

Արևմտահայ իրականությունը տալիս էր այն բանի օրինակներ, թե ինչի է հասցնում նման շարժառիթը: Սահմանադրության հաստատումից առաջ, քաղաքական ժողովից կամ նրա մեծագույն մասից գաղտնի, պատրիարքի կամ մի քանի հարուստների ձեռքով ազգային գործերի «ապօրինավոր տնօրենություններ կըլլար»: Սահմանադրությանը Սվաճյանը հասարակական և անձնական շահերի համամասնության ֆունկցիա էր վերագրում: Ուստի, նման անօրինականություններ կատարող, «հին ճամփով ազգ կառավարել ուզող» անձանց զգուշացնում էր, որ կամ աշխատեն ազգային օգտի համար, կամ հեռանան հասարակական գործունեության ասպարեզից:

Նա բարոյական պարսավանքի էր ենթարկում էգոիստական պրակտիցիզմը, որը նպաստում է շահագործմանը: «Ջնչին շահուն համար» բարեկամ են դառնում, ամբողջ ժողովրդին թշնամի և նրան թշվառության ու ցավերի մեջ գցողներին: «Գողությամբ» հարստություն ձեռք բերողի «ի շնորհս» երես են դարձնում այն հազարավորներից, որոնք գալիս են պատրիարքարանի դուռը և օգնություն խնդրում իրենց «ստացվածքը», կինն ու զավակները հափշտակող «չարի մը դեմ»: Հարստահարվողի բողոքագիրը հանձնում են նրա գործակցի ձեռքը՝ «օգուտ մը սպասելով»:

Սվաճյանն ամենայն լրջությամբ նախազգուշացնում է, թե պայմանների նման խեղումը խեղում է նաև իրավունքն ու բարոյականությունը, որից տվյալ դեպքում դուրս գալու ելքն այն է, որ «...անաչառությամբ քննենք ...թշվառ ժողովուրդին իրավացի բողոքը»: Հայ վերնախավի կերպարը լրացնում է հոգևորականությունը, որը կյանքի բարոյականից յուրացրել և սեփականացրել է երկրային նպատակներ հետապնդող նեղ անձնական շահը: Նրա վարքագիծն առանձնապես վտանգավոր է, որովհետև այդ է այն կշռաքարը, որով չափվում են հասարակական գործերը, որոնք հայ ժողովրդի պատմական ճակատագրի բերումով հանձնված են իրեն:

Կղերը ցանկանում են ժողովրդին ետ տանել դեպի այն ժամանակները, երբ բռնացել էին նրա «ստացվածոց» ու մտքի վրա այնպիսի չափերով, որ մարդիկ զրկվել էին իրական դեմքը տեսնելու հոգևորականության, որը «աշխարհի ամեն հեշտությունները շռայլաբար կը վայելեր»: Հոգևորականության վրա տարբեր դիրքերից էին հարձակվում արևմտահայ դեմոկրատները:

Որքան էլ փորձում են խնամքով թաքցնել Մխիթարյան միաբանության անդամները, բայց նրանք, ասում է Ստեփան Ոսկանյանը, հավատարմագրվել են ոչ թե ազգային ավանդույթներին, այլ «հռովմեական շահին» (Հռոմեական պարզև, Զմյուռնիա, 1854), կաթոլիկության գաղափարական սիրախաղերը ցուցադրելով որպես անշահախնդրության օրինակ:

Այդ պայքարին իր մասնակցությունն է բերում Չիլինկիրյանը: Զմթադ-

նրված բարոյականության որոնումներն արևմտահայ դեմոկրատներին տանում էին դեպի աշխատավորական խավերը։ Ջիլինկիրյանը մարդկային վարքագծում արժորոշում է բարոյական մեկ այլ սկզբունք։ Դա ալտրուիզմն է։ Մի՞շտ է, որ անձնական շահն է մարդուն կազմակերպում։ Պատմության մեջ չի գտնվի մեկը, որը բանականությամբ հատկապես իր անձնականի համար իրեն զոհի։ Բայց փոխարենը քիչ չեն հանուն գաղափարի կամ սկզբունքի մարտիրոսացման դեպքերը։ «Վերցուր» Գալիլեյին։ Նա գիտության նահատակ եղավ։ Ոչ միայն Ջիլինկիրյանը, այլև Սվաճյանը հիանում է նրա համոզմունքի անդավաճանությամբ։ Հասարակությունն առաջընթաց շարժման մեջ դնողը, «մարդկության քայլերը դեպ՛ի առաջ մղողը», ըստ Ջիլինկիրյանի, զոհաբերությունն է։ Բարոյական այդ դրականը մարդուն բարձրացնում է հասարակական երևույթներում տիրապետող շահերից։ Դրա հետևանքով վրա է հասնում անխուսափելի բախումը, որի մեջ էլ անհատը վերագտնում է բավականության գերադրականը։

Մամուրյանն զբաղվում է էգոիզմի տեսության պատմությամբ։ Նա հանդես է բերում ուտոպիստների էթիկայի իմացություն։ «Օվեն, Ֆուրիե, Ս. Սիմոն... բանականության, շահու, գիտության կրոնը կդավանին գիտեմ...» (Երկեր, էջ 159)։

Ակնբախ է XIII դարի ֆրանսիական մատերիալիստների բարոյագիտության ազդեցությունը ուտոպիական սոցիալիստների գաղափարների վրա։ Վերհիշենք այդ առթիվ Մարքսի խոսքերը. «Մտքի մեծ սրություն չի պահանջվում այն անհրաժեշտ կապը տեսնելու համար, որ կա մարդկանց՝ դեպի բարին ունեցած բնածին հակման ու նրանց մտավոր ընդունակությունների հավասարության, փորձի, սովորության, դաստիարակության ամենազորության, մարդու վրա արտաքին հանգամանքների թողած ազդեցության, արդյունաբերության մեծ նշանակության, հաճույքի օրինաչափության և այլ նման բաների վերաբերյալ մատերիալիզմի ուսմունքի և կոմունիզմի ու սոցիալիզմի միջև» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Սուրբ ընտանիք, էջ 216)։

Մամուրյանը բարոյականը շաղկապում էր ազգի «վիճակին և ոգվույն հանգամանաց» հետ։ Որտեղ որ «ընկերական հարաբերություններն անկայուն, անհիմն» են, այնտեղ ազգային ոգին, հետաքրքրությունը և մտավոր արթնացումը հազվագյուտ են, «մինակ օրական շահ, կին, գինի... բնակներուն մեծագույն մասին զբաղմունքը կը կազմին»։ Ուստի, նյութական և մարդկային միջոցներն «ընդունայն» են վատնվում։

Անձնական և հասարակական շահերի միջև Մամուրյանի ընտրությունը հօգուտ վերջինի է։ Այդ ընտրության մեջ նրան օգնում է անցյալը, որին դիմելն այն խորհուրդն ուներ, որ հայ պատմության հերոսականության օրինակներով բորբոք պահվեր ազգասիրության կրակը։

Երբ վարքագծում անհատական և հասարակական շահերի անհամամասնություն է հասարակականի գերակշռությամբ, ապա դա անհատի բարոյական լիարժեքության լավագույն արդարացումն է։ Մտավորականության փոքրագույն մասն է տոգորված հասարակական պարտքով։ Մարդը կարող է ապրել առանց գիտենալու, թե իրեն շունչ տվող «անճառ էությունը ինչ հասակի և բնության տեր է», բայց դրանք բովանդակալից, լիարյուն տարիներ չեն, բուսական կյանքն են հիշեցնում, նա «տնկի պես կբուսի ու կթոռոմի՝ եթե չուսանի, թե նույն էությունը» հասարակական ո՞ր նպատակի համար «նետեր է զինքը երկրիս երեսը»։ Առանց այդ ճշմարտության, մարդկային ազնիվ կոչումը «կորած» է, և «ազատ բանական և հառաջադեմ էակը վիժած է...»։

Անդրադառնալով իր ապրած հասարակական միջավայրի վիճակին՝ Սրվաճյանն ասում էր. ինդիվիդուալիստական բարոյականությամբ ներծծված է հասարակական կյանքի ամեն մի բջիջ։ Առուծախի ոլորտն է ներգրավված անգամ մտավոր արտադրանքը՝ «յուրաքանչյուր խմբագիր իբրև արհեստավոր հրապարակ ելած է յուր վաճառքը ծախելու...»։ Նրան մամուլի ասպարեզ դուրս բերողը մասնավոր սկզբունքն է, որի օգտակարությունից կամ անօգտակարությունից անխզելի է միջոցի ընտրությունը։ «Օրագիր» պարբերականի խմբագիրը մի քանի թերթ ավել ծախելու համար նախընտրել է թուրքերենը, որովհետև «շահուն համար կը գրեր...»։ Եթե ազգանվիրությանը հանձնառու լիներ,



ապա նա իր նյութերը պիտի մատուցեր հայերենով և, փոխանակ ժողովրդի հետևից քարշ գալու, նրան կառաջնորդեր, կպախարակեր, ինչ դրան արժանի է։

Սվաճյանի համակրանքը մամուլի այն գործիչների կողմն է, որոնք «անկողմնական ոգվով, ուղիղ սկզբունքով, վեհանձն և վսեմ զրուցվածքով ու տրամաբանական և իմաստալից խոսքերով... հանուն հասարակաց բարվույն անհուսահատ գրիչ կը շարժեն...» (Հ. Սվաճյան, Հրապարակախոսություն, էջ 495)։ Սվաճյանը «Օգտակարության տեսությունից» բացառում է ուտիլիտարիզմը, որպեսզի անհատին ներարկի կոլեկտիվիզմի հոգեբանություն։ «Ընդհանրության օգուտը մտածել՝ ասիկա մարդասիրության առաջին պարտքն է. և վերակենդանության փափաքող ամեն ազգեր իրենց տկարության ժամանակնին այս սկզբունքով զորացեր և իրենց զորության ու հարստության ժամանակ ա՛լ ավելի ընդարձակ կարող եղեր են մարդասիրաբար իրենց ազգին անխտիր ընդհանրության օգտին ծառայել»։

Սվաճյանը գիտե, որ «անձնական օգտին իրականությենեն և էությենեն կախումն ունի ընդհանուրին օգուտը...»։ Մարդն ապրում է ոչ միայն իր նմանների մեջ, այլև՝ իր նմանների հետ։ «...Մինչդեռ մենք կտոր մը հացի կարոտ եմք, չեմք կարող ուրիշին փորը կշտացունել. մինչդեռ մենք ծարավի ենք, չեմք կրնար ուրիշի շրթունքը զովացունել...»։ Երբ նա մեկուսանա, ապա չի գոյանա ընդհանուր բարիքը։ Մարդ պետք է աշխատի ոչ միայն իր, այլև հասարակության բարօրության համար, իր աշխատանքով ինքն իրեն գտնի ընդհանուրում։

Տնտեսական կռվանների վճռական դերի գաղափարը Սվաճյանն առնում է Նալբանդյանից. «...Մեր անձին օգուտովը, ընդհանուրին օգուտը զորավոր ընելու համար, մենք ուրիշ միջոց մը չենք գտնար, բայց միայն երկրագործական ընկերություններ...» (Հ. Սվաճյան, Հրապարակախոսություն, էջ 252)։

Մարդը բանական է։ Բանականությամբ է, որով «կը զանազանի մարդ այլ ամեն տեսակ կենդանիներեն» (Նույն տեղը, էջ 131)։ Նույն գաղափարը կա նաև Հայկունու երկում. «Մարդս չի կրնար անասունե մը տարբերիլ, եթե ան իր ամեն շարժմանց մեջ դատողության չի հետևի...» (Ա. Հայկունի, Էլիզա, էջ 51)։

Սակայն հօգուտ բանականության նրանց պայքարը լուսավորական ծրագրով էր։ Այդ ծրագիրը ազատամտությամբ էր ներթափանցված։ ««Բազմավեպը» գրեր էր, թե Եվրոպայի «լուսավորությունը որ հիմա կը տեսնենք, հավատո վրա հաստատյալ է»»,— ծաղրում է Մխիթարյաններին Ոսկանյանը։ Օգուտի աստիճանն այնքան ավելի մեծ է, որքան որ մեծ է նրանում ընդհանուրի տոկոսը։ Սակայն ընդհանուրի ոչ բոլոր օգուտն է բարիք։ Եթե ընդհանուրն ավելի փոքր տոկոսն է, քան բնակչության մնացած զանգվածը, և նրա շահագործմամբ է ստացվում օգուտը, այն բարիքից չարիքի է վերածվում։

Հայկունին հերքում է ճորտերի մտավոր անընդունակության առասպելը. «Այնպիսի գլուխներ տեսայ անոնց մեջ, որ եթե զանոնք Իտալիայի մեջ տեսնեի, հարկավ զանոնք իմացականությամբ լեցուն պիտի կարծեի... բնավ չիպիտի մոռնամ ասոնցմե մեկը որ Բեդրսպուրկի մեջ դեղավաճարի մը քով էր... շիտակը այս գերին գերության մեջ եթե չիգտնվեր՝ անշուշտ խիստ համբավավոր պիտի լիներ բանաստեղծության, նկարչության և մարդկային ազատությունը պաշտպանելու քաջասրտության մեջ...»,— պատմում է Էլիզա վեպի հերոսը և եզրակացնում. «...Ասիկա ապահովություն մըն է, թե գերիներն ալ հարմար են առաջադիմության մեջ» (Ա. Հայկունի, Էլիզա, էջ 202)։ Ըստ արևմտահայ դեմոկրատների, ընդհանուր շահի զգացողությունը հիմնված էր մարդկության առաջադիմության հավատի վրա, որի վերընթացի հետ էին նրանց խոհերը, հայ կյանքում ամեն մի նոր երևույթ մեկնաբանում էին նրանով, իսկ առաջադիմությունը և երջանկությունը «նույնություն մ'է»։

Այս համառոտ բնութագրումից պարզ երևում է, որ արևմտահայ դեմոկրատական-ազատագրական գաղափարախոսությունը, սերմանելով եվրոպական ու ռուսական առաջադիմական գաղափարները, մեծ դեր է խաղացել հայ ժողովրդի արևմտյան զանգվածի հոգևոր կյանքում։

Է. Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



# Ե՛վ նոր, ե՛վ հաջող

*Գիտատեխնիկական առաջադիմությունը մեր երկրի արտադրաուժերի զարգացման, կոմունիզմին անցնելու տնտեսական նախադրյալների ստեղծման վճռական գործոնն է։ Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման ամենահուսալի ուղին է այն։ Ահա թե ինչու, հատկապես վերջին տասնամյակի ընթացքում, այդ պրոբլեմը դարձել է նաև սովետական տնտեսագիտության ուսումնասիրության կենտրոնական հարցերից մեկը։*

*Շնորհակալ գործ է կատարել Մ. Խ. Քոթանյանը[1]. հենվելով փաստական հարուստ նյութի և քննարկվող հարցերի վերաբերյալ հրապարակված աշխատությունների վրա, ընդհանրացրել է գիտատեխնիկական առաջադիմության ուղղությունները, ցույց տվել դրանց խթանման սիստեմների կատարելագործման անհրաժեշտությունը կոմունիստական շինարարության արդի էտապում։ Աշխատության հանգուցային պրոբլեմները լուսաբանվել են հիմնականում Սովետական Հայաստանի օրինակներով։ Այս իմաստով աշխատությունը մեր հանրապետությունում լույս տեսած առաջին և հաջողված գործն է։ Այն շարադրված է պատմականի ու տրամաբանականի ճիշտ զուգակցմամբ, պատշաճ ձևով վերլուծված են տնտեսական օրենքների ու կատեգորիաների փոխազդեցության բազմաթիվ հարցեր։*

*Ուսումնասիրության շրջանակը շատ լայն է, այն որոշ իմաստով դուրս է գալիս մեր երկրի սահմաններից, ընդգրկում համաշխարհային գիտատեխնիկական առաջադիմության կարևորագույն նվաճումներին վերաբերող խնդիրներ։ Այդ նույնպես առավել արժեքավոր է դարձնում աշխատությունը, մեծացնում հետաքրքրասիրությունը շարադրված նյութի նկատմամբ։*

*Աշխատության մեջ քննարկվում են սերտորեն միահյուսված երկու գլխավոր պրոբլեմներ— գիտատեխնիկական առաջադիմությունը և դրա խըթանումը։*

*Աշխատության առաջին գլխում Մ. Քոթանյանը հիմնավորում է գիտությունը՝ որպես անմիջական և* առանձնահատուկ արտադրաուժ, *ընդգծում դրա կարևորությունը հասարակության արտադրաուժերի տարրերի համակարգում և, հատկապես, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։ Այստեղ ընթերցողի ուշադրությանն են ներկայացվում արտադրաուժերի զարգացման մակարդակը բնութագրող բնական գիտությունների խոշորագույն նվաճումներն արդի դարաշրջանում։ Հեղինակն իրավամբ գտնում է, որ հասարակական առաջադիմության ապահովման մեջ մեծանում է այդ գիտությունների դերը, ընդհանրապես ուժեղանում գիտության և արտադրության կապը։ Աշխատության այս բաժնում առանձնահատուկ տեղ են գրավում մեր երկրում գիտատեխնիկական առաջադիմության և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ըստեղծման գործոնների փոխազդեցության հարցերը։*

*Գրքի երկրորդ գլուխը նվիրված է նյութական շահագրգռվածության խնդիրներին։ Գիտական ընդհանրացումներ են արվում սոցիալիզմի ժամանակ նյութական շահագրգռվածության էության, դրսևորման ձևերի և իրացման տնտեսական լծակների վերաբերյալ։*

*Նյութական շահագրգռվածության էության բանալին Մ. Քոթանյանը համարում է մարդկանց նյութական շահերը։ Թե՛ նյութական պահանջմունքների և թե նյութական շահերի ու դրանց իրացման տնտեսական պայմանների մեջ վճռականը արտադրամիջոցների ու աշխատանքի արդյունքների սեփականության ձևն է։ Նշելով, որ սոցիալիզմի ժամանակ տնտեսական նպաստավոր պայմաններ են ստեղծվում նյութական շահագրգռվածության ապահովման համար, Մ. Քոթանյանը, միաժամանակ, քննադատում է մեր տնտեսագիտական գրականության մեջ նյութական շահագրգռվածության էության սահմանափակ ըմբռնման տեսակետը, պատճառաբանում ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի և նյութական շահագրգռվածության սկզբունքի ներքին կապը։ Այս գլխում հեղինակը ցույց է տալիս* նյութական շահ *ընդհանուր կատեգորիայի դրսևորման և իրացման առանձնահատկությունները սոցիալիզմի ժամանակ։ Հեղինակը ուշադրավ մի շարք դատողություններ է անում նյութական շահերի տարբեր ձևերի, դրանց հետ բարոյական ազդակների զուգակցման ժամանակակից խնդիրների ու զարգացման տենդենցների վերաբերյալ։*

*Աշխատության այս գլուխը, մեր կարծիքով, ամենահաջողն է, ուր դրսևորվել է հեղինակի տեսական պատրաստականությունը։*

*Գիտատեխնիկական առաջադիմության տնտեսական խթանումն է վերլուծված գրքի երրորդ գլխում։ Հեղինակն այստեղ նախ՝ հիմնավորում է գիտական հետազոտության առավել արագ զարգացման անհրաժեշտությունը, ապա, այդ բազայի վրա՝ համապատասխան կազմակերպությունների տնտեսական խթանման ուժեղացումը։ Միանգամայն տրամաբանական են հեղինակի այն մտքերը, որ ներկա ժամանակաշրջանում անհրաժեշտ է խորապես ուսումնասիրել գիտահետազոտական աշխատանքների տնտեսական կողմը, այդ բնագավառի վրա ծախսվող միջոցների տնտեսական արդյունավետությունը։*

*Մ. Քոթանյանը մանրամասն վերլուծում է գիտատեխնիկական առաջադիմության ժամանակակից առանձնահատկությունները, ցույց տալիս աշխատաժամանակի կրճատման, ձեռնարկության հզորության մեծացման, արտադրանքի որակի բարելավման, արտադրանքի նոր տեսակների ստեղծման և դրանք ժողովրդական տնտեսության մեջ ներդնելու գործում գիտահետազոտական կազմակերպությունների տնտեսական խթանումը բարելավելու խնդիրները։*

*Այս առումով նա քննադատում է գիտահետազոտական աշխատանքների տնտեսական խթանման գործող կարգը, բացահայտում բազմաթիվ թերություններ՝ պլանավորման, դրանց արդյունավետությունը որոշելու մեթոդի և աշխատանքների գնահատման բնագավառում։ Գրքում համաձայնելով ակադեմիկոս Մ. Դ. Միլիոնշչիկովի այն դիտողությանը, որ մենք ստիպված ենք հասնել արտասահմանյան տեխնիկային այնպիսի բնագավառներում, որտեղ գիտական առաջնությունը մեզ է պատկանում, Մ. Քոթանյանը հետևողականորեն այն ճիշտ միտքն է զարգացնում, թե գիտահետազոտական կազմակերպությունները պետք է ունենան հեռանկարային պլան, քանի որ այդ բնագավառի աշխատանքի արդյունքները սովորաբար ստացվում են համեմատաբար երկար ժամանակաշրջանում։ Դա անհրաժեշտ է նաև գիտական հետազոտությունների տարբեր բնագավառների միջև որոշակի համամասնություն ստեղծելու համար։ Հեղինակի կարծիքով անհրաժեշտ է էական փոփոխություններ մտցնել գիտահետազոտական ինստիտուտների ֆինանսավորման և գիտնականների վարձատրության ներկա սիստեմում։ Այս կապակցությամբ նա իրավացի առաջարկ է անում— գիտական կազմակերպություններում հաստիքները պլանավորել ըստ աշխատանքի ծավալի, բարդության և բնույթի։*

*Աշխատության այս գլխում հեղինակը հանգում է այն եզրակացության, որ Հայաստանում գիտական հետազոտության ընդլայնումը տեղի է ունենում էքստենսիվ ուղիով։ Նա իրավամբ քննադատում է այն հանգամանքը, որ գիտահետազոտական աշխատանքների ընդլայնում ասելով սովորաբար հասկացվում է աշխատողների թվի ավելացում և մոռացության է տրվում գիտության տեխնիկական բազայի ամրապնդման հարցը։ Դրա հետևանքով շատ հաճախ նույնիսկ բարձրարժեք գիտական առաջարկը չի փորձարկվում ժամանակին և հետագայում ավելի մեծ ծախսեր է պահանջվում դրա փորձարկման, իրացման համար, որը և զգալի վնաս է հասցնում հասարակությանը։ Մ. Քոթանյանն այս թերությունը համարում է գիտահետազոտական աշխատանքների սխալ գնահատման հետևանք։ Գիտական ստեղծագործական կոլեկտիվների գործունեությունը քանակային ցուցանիշով գնահատելու պատճառով գիտահետազոտական կազմակերպությունները շատ հաճախ միջոցառումների լայն ծրագիր են նախատեսում, ապահովում դրանց կատարումը, սակայն, տեխնիկական առաջադիմության ու տնտեսական արդյունավետության տեսակետից ոչ մի էական քայլ չեն անում։ Միայն քանակային ցուցանիշները կոլեկտիվին ամենևին չեն շահագրգռում առավել արդյունավետ մեքենաներ, մեխանիզմներ, ապարատներ, տեխնոլոգիական պրոցեսներ մշակելու։ Չէ՛ որ այս վերջիններս պահանջում են լրացուցիչ ծախսեր։ Այս կապակցությամբ հեղինակն առաջարկում է քանակային ցուցանիշների հետ միասին մշակել նաև աշխատանքի որակը բնութագրող ցուցանիշներ։*

*Աշխատության հեղինակը, գիտահետազոտական կազմակերպությունների տնտեսական խըթանման հետ միաժամանակ, մանրամասն վերլուծում է աշխատողների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման միջոցառում-*

1 Մ. Խ. Քոթանյան, **Գիտատեխնիկական առաջադիմությունը և նրա խթանումը**, ՀՍՍՀ ԳԱ հրատ., Երևան, 1969, 284 էջ։

ների հարցերը, առաջարկում է գիտահետազոտական կազմակերպությունների գործունեության մեջ արմատավորել տնտեսական հաշվարկի սկզբունքները, բարձրացնել այդ հիմնարկությունների նյութական պատասխանատվությունը։ Այստեղից պարզ է, որ դրանց ֆինանսավորման հարցերը պետք է կատարվեն իրենց իսկ գործունեության արդյունավետության համապատասխան։ Հեղինակն այս հարցն իրավամբ կապում է տնտեսական նոր ռեֆորմի իրագործման հետ։ Նա առաջ է քաշում գիտահետազոտական կազմակերպությունների նաև տնտեսական ինքնուրույնության հարցը, առաջարկում երկարատև վարկեր տրամադրել դրանց։

Գրքի այս բաժնում հեղինակն անդրադառնում է նախագծային կազմակերպությունների աշխատանքը համախառն արտադրանքով գնահատելու, տնտեսելու համար պարգևատրման ցուցանիշների օգտագործման հետ կապված թերություններին, նշում, որ առաջին ֆունկցիան կարող է կատարել իրացված արտադրանքը, իսկ երկրորդը՝ ձեռնարկության ստացած շահույթը։

Այնուհետև, խոսելով աշխատավարձի ֆոնդի կենտրոնացված պլանավորման թերությունների վերացման մասին, Մ. Քոթանյանը քննադատում է ավելի քան 40 տարի առաջ հաստատված գիտաշխատանքի կազմակերպման եռօղակ սխեման, որը հարուցում է որոշ դիմադրկություն, նոր տեխնիկայի յուրացման ասպարեզում ստեղծում արհեստական սահմանափակումներ։ Գիտության և արտադրության կապն անմիջական դարձնելու գործում նա մեծ տեղ է տալիս գիտաարտադրական միավորումներին, որտեղ հնարավոր է կոնստրուկցիան մշակել նաև թողարկման, ստեղծման ու շահագործման պրոցեսում, քանի որ կողք-կողքի են աշխատում գիտնականները, կոնստրուկտորները և ինժեներները։

Նոր տեխնիկայի ստեղծման գործում գիտահետազոտական աշխատողների անձնական նյութական խթանման կազմակերպման հարցերը շարադրված են աշխատության չորրորդ գլխում։ Այստեղ քննարկվում են հիմնական վարձատրության, ապա՝ պարգևատրման հարցերը։ Աշխատանքի վարձատրության ու պարգևատրման գործող սիստեմներում հեղինակը բացահայտում է բազում թերություններ և արժեքավոր առաջարկություններ անում դրանց վերացման նպատակով։

Գիտահետազոտական կազմակերպություններում աշխատավարձի խիստ դիֆերենցումը՝ ըստ գիտական աստիճանի, ստաժի ու ինստիտուտների կարգի, մեծապես վնասում է գիտության բնագավառի աշխատողների նյութական շահագրգռվածությանը։ Քոթանյանը հանգամանորեն բացահայտում է դրանցից յուրաքանչյուրի հաշվառման հիման վրա աշխատավարձի մակարդակների տարբերություններից բխող հետևանքները— ավելի բուռն ձգտում գիտական աստիճան «ձեռք բերելու», քան գիտական կամ տեխնիկական պրոբլեմների մշակման, քանի որ գիտական այս կամ այն պրոբլեմի լուծումը միայն դրամական միանվագ պարգև է խոստանում, իսկ գիտական աստիճանը՝ աշխատավարձի 25—53 տոկոսի բարձրացում։ Մ. Քոթանյանը նշում է, որ աշխատանքային մեծ ստաժը, բնականաբար, վկայում է նաև աշխատողի գիտական հմտության մասին, ուստի, անհասկանալի է, թե ինչու այդ սկզբունքը չի տարածվում գիտական աստիճան չունեցող կրտսեր գիտաշխատողների վրա։ Մ. Քոթանյանն աղյուսակներ, բազմաթիվ օրինակներ է բերում պաշտոնային աշխատավարձն ըստ ինստիտուտների կարգի դիֆերենցելու հետևանքով առաջացած գիտական նույն աստիճանն ունեցող, սակայն, տարբեր ինստիտուտների գիտաշխատողների նյութական անհավասար պայմանների վերաբերյալ։ Այսպես, տասը տարվա ստաժ ունեցող ավագ գիտաշխատող գիտությունների դոկտորը երրորդ կարգի ինստիտուտում ավելի քիչ աշխատավարձ է ստանում, քան առաջին կարգի ինստիտուտում՝ գիտությունների թեկնածուն։ Հեղինակի կարծիքով, նաև այդ է պատճառը, որ բարձրորակ գիտաշխատողները ձգտում են բարձր վարձատրություն ունեցող ինստիտուտում աշխատել, և ցածր կարգ ունեցող ինստիտուտները չեն համալրվում բարձրորակ գիտական կադրերով։ Դրա հետ միասին հատկապես երրորդ կարգի ինստիտուտների ղեկավարությունը ձգտում է պաշտոնային հաստիքներ ձեռք բերել, իսկ հետագայում պայքարել ինստիտուտի կարգի բարձրացման համար։

Վերոհիշյալից թող չստեղծվի այն տպավորությունը, թե հեղինակն առաջարկում է տարբեր ինստիտուտներում միանգամայն հավասար վարձատրություն իրագործել, վերացնելով բոլոր տարբերությունները։ Նա նշում է, որ դրանցում վարձատրության տարբերությունները պետք է կախման մեջ դրվեն ո՛չ թե ենթակայության տարբերություններից ու աշխատողների թվից, այլ գիտատեխնիկական պրոբլեմների բարդությունից, դրանց ժողովրդա-տնտեսական նշանակությունից։ Նման պայմաններում, ինչպես գտնում է հեղինակը, կխթանվեն գիտատեխնիկական նոր ուղղությունների ու գիտական բարձրորակ կադրերով կհամալրվեն գիտահետազոտական բոլոր ինստիտուտները։

Աշխատության այս գլխում առանձին տեղ են գրավում գիտահետազոտական նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններում պարգևատրման խթանիչ դերի, գոյություն ունեցող կարգի և իրագործման ձևերի հարցերը։ Այստեղ նույնպես Մ. Քոթանյանը քննադատաբար է վերաբերվում տնտեսական արդյունավետության հիման վրա իրագործվող պարգևատրման խնդրին, ճիշտ չի համարում գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների և տեխնիկայի արմատավորմամբ, ներդրմամբ զբաղվող աշխատողների նյութական խթանման նույնանման մոտեցումը. Նա գտնում է, որ գիտահետազոտական աշխատողներին պետք է խրախուսել մեքենաների, մեխանիզմների, տեխնոլոգիայի տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման համար, իսկ նոր տեխնիկայի ծավալից կախված ժողովրդատնտեսական արդյունավետությունը կարող է դրանց պարգևատրման լրացուցիչ պայման լինել։

Այս գլխում քննադատվում է նաև արդյունավետության համար պարգևի բարձր (առավելագույն) և ցածր չափերի սահմանման ձևը։

Տնտեսական տարբեր արդյունավետություն ունեցող պրոբլեմների համար վճարվում է գրեթե միևնույն մեծության պարգև։ Գործնականում այնպես է ստացվում, որ, տնտեսական արդյունավետության բարձրացման հետ միասին, իջնում է պարգևատրման տոկոսը։ Մ. Քոթանյանը, իրավամբ, առաջարկում է գիտաշխատողների պարգևատրման համար, որպես հիմնական ցուցանիշ, ընդունել հետազոտվող թեմայի գիտական արդյունքը։ Գիտահետազոտական ինստիտուտներում պարգևատրման մեկ ցուցանիշի փոխարեն Քոթանյանն առաջարկում է երկու ցուցանիշ՝ կոնստրուկցիայի, նոր տեխնոլոգիայի և այլ մշակումների սահմանված ժամկետին կատարումը և տեխնիկական բարձր տվյալների ապահովումը։

Գրքի վերջին՝ հինգերորդ գլխում շարադրվում են հայտնագործությունների, գյուտարարության և ռացիոնալիզատորության նյութական խթանման արդի հարցերը։ Բնութագրելով դրանցից յուրաքանչյուրի կարևորությունը գիտատեխնիկական առաջադիմության ապահովման համար, Մ. Քոթանյանը ցույց է տալիս գիտական հայտնագործությունների, գյուտարարության և ռացիոնալիզատորական առաջարկությունների արագ աճը հատկապես վերջին տարիներին։

Հայտնագործությունների էքսպերտիզի գործունեության բարելավման, գիտական դրույթների հաստատման, հեղինակային իրավունքի ճանաչման գործի բարելավման նպատակով, բազմաթիվ միջոցառումների շարքում, Մ. Քոթանյանը պատշաճ նշանակություն է տալիս աշխատանքի նյութական և բարոյական խթաններին։ Այստեղ նույնպես անդրադառնում է մի շարք թերությունների վերացման անհրաժեշտությանը։ Նա ցույց է տալիս, որ հայտնագործությունների հեղինակների անձնական նյութական շահագրգռվածությունը, գյուտարարների համեմատությամբ, բարձր է, քանի որ գյուտերի հեղինակին տրվող պարգևը հաշվարկվում է դրա կիրառման տնտեսական արդյունավետությանը համապատասխան։

Ուշագրավ են հեղինակի առաջարկությունները գյուտերի պատենտավորման անհրաժեշտության վերաբերյալ։ Նյութական խթանման հիմքում, նշում է նա, պետք է ընկած լինի գյուտի նկատմամբ բացարիկ իրավունքի պահպանումը։ Նա այն կարծիքին է, որ, հատկապես, տնտեսական ռեֆորմի իրագործման պայմաններում գյուտերի պատենտավորումը խիստ անհրաժեշտ է։

Գիտական այս լուրջ հետազոտությունը, սակայն, զերծ չէ որոշ թերություններից։ Նշելով, որ գրքում նկատելի են լեզվա-ոճական անհարթություններ, անդրադառնանք թերություններից մի քանիսին։ Այսպես՝ աշխատության բովանդակությունից երևում է, որ հետազոտության հիմնական հարցը գիտատեխնիկական առաջադիմության խթանումն է, սակայն, շարադրանքի ընթացքում երբեմն կա՛մ մոռացության է տրվում խթանման հարցը, կա՛մ որոշ կրկնություններով գերակշռող տեղ են գրավում գիտատեխնիկական առաջադիմության զարգացման հարակից հարցերը (2-րդ և 3-րդ գլուխներում)։ Կարծում ենք, ավելի ճիշտ կլիներ, եթե գիտական հետազոտության թեման, տվյալ դեպքում՝ գրքի վերնագիրը, դրվեր Գիտատեխնիկական առաջադիմության խթանումը։

Բոլոր դեպքերում չէ, որ հեղինակը հետևողական է եղել իր մտքերի տրամաբանական զարգացման մեջ։ Այսպես, նյութական շահը նա համարում է ընդհանուր տնտեսական կատեգորիա, իսկ մարդկանց նյութական շահագրգռվածությունը՝ ընդհանուր տնտեսական օրենք (էջ 41, 62). ուստի, մնում էր անմիջական կապ տեսնել նաև դրանց միջև։ Ի դեպ, այս հարցերն անբավարար խորությամբ մեկնաբանելու հետևանքով, մեր կարծիքով, հակասական դատողությունների է հանգում Մ. Քոթանյանը։

Արժարժելով պատենտային հարաբերությունների բարելավման խնդիրը՝ Մ. Քոթանյանը որոշ ծայրահեղության է հասնում, նշելով, որ գյուտերի համար անպայման պետք է վճարեն դրանցից օգտվող ձեռնարկությունները։ Թվում է՝ գյուտերի ստեղծման վրա կատարված ծախսերի հատուցումը (որն, իրոք, անհրաժեշտություն է) պետք է տարբերել սոցիալիզմի ժամանակ դրանք օգտագործող ձեռնարկությունների կողմից այդ ծախսերի անմիջական փոխվճարումից, քանի որ բացի պատենտային հարաբերություններից, արժեքային փոխհատուցման բնագավառում սոցիալիստական ձեռնարկությունների միջև կարող են առաջ գալ նաև այլ հարաբերություններ։

Ինչպես տեսնում ենք, նշված դիտողությունները հիմնականում բանավեճային բնույթի են, որոնք բնավ չեն ստվերարկում Մ. Քոթանյանի արժեքավոր հետազոտությունը։

Հ. Հ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ
Դոցենտ

# ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ ՍԵՄԻՆԱՐՆԵՐԻ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ ԵՎ ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ

Ն. ԿԱՊՉԵՆԿՈ

## ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆԸ*

Միջազգային ասպարեզում տեղի ունեցող իրադարձությունները, և, ամենից առաջ, երկու սոցիալ-տնտեսական սիստեմների հակամարտը, բավական համոզիչ հաստատում են այն վիթխարի նշանակությունը, որ արդի պայմաններում ձեռք է բերում գաղափարախոսական պայքարը: Վերջինիս գլխավոր հենադաշտերից են, անշուշտ, միջազգային հարաբերությունները, որտեղ գաղափարախոսությունների պայքարը փոխազդում և միահյուսվում է քաղաքականության, էկոնոմիկայի և սոցիալական գործոնների հետ:

Գաղափարախոսական պայքարի հարցերը բոլոր բնագավառներում և, մասնավորապես, միջազգային ասպարեզում, մշտապես եղել են Սովետական Միության կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում, իսկ ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում հատուկ տեղ են գրավում նրա գործունեության մեջ: Այդ հարցերը խորապես և բազմակողմանիորեն քննարկվեցին Մոսկվայի 1969 թվականի միջազգային խորհրդակցությունում, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումներում, եղբայրական կուսակցությունների ղեկավարների հետ բազմաթիվ հանդիպումների ընթացքում:

ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևում հատկապես ընդգծվեց, որ «կուսակցության գաղափարախոսական աշխատանքը տարվում է համաշխարհային ասպարեզում երկու հակադիր սոցիալ-քաղաքական սիստեմների դասակարգային սուր պայքարի պայմաններում: Սոցիալիզմի և կոմունիզմի շահերը պահանջում են բարձրացնել կոմունիստների, սովետական բոլոր մարդկանց հեղափոխական ըզգոնությունը, մերկացնել իմպերիալիզմի գաղափարախոսական դիվերսիաները ընդդեմ Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների»[1]: Համագումարի ցուցումներին լիովին համապատասխան է կառուցվում սովետական պետության ինչպես ներքին, այնպես և արտաքին քաղաքականությունը:

Գաղափարախոսական պայքարը ռազմաճակատ չէ, ուր բավականաչափ արագ է դրըսևորվում պայքարի ելքը: Ակնուամենայնիվ, այն նույնքան սուր է և պահանջում է ուժերի ու միջոցների առավելագույն լարում, եթե հատկապես հաշվի առնենք նրա անընդհատ և համապարփակ բնույթը: Ուստի, բնական է, որ այդ պայքարի արդյունքների գնահատման համար ավելի հարմար են այն ժամանակավոր լայն մասշտաբներն ու չափանիշները, որոնք հնարավորություն են ընձեռում ավելի խոր հասկանալու միջազգային ասպարեզում սոցիալիզմի և կապիտալիզմի գաղափարական ընդհարման տենդենցներն ու ձևերը:

Աշխարհում միջազգային հարաբերությունների սիստեմը կարգավորվում է բազում օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների ակտիվ ներգործությամբ: Դրանցից կարևորագույնը մարքսիստական-լենինյան գաղափարախոսությունն է, որը համակողմանի ազդեցություն է ունենում միջազգային կյանքի ամենատարբեր բնագավառների վրա: Տարեցտարի այդ ազդեցությունը մեծանում է, որովհետև սոցիալիզմը դառնում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնը: Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամրապնդման ու հետագա զարգացման և նրանց հարաբերությունների նոր տիպի կատարելագործման համեմատ անխուսափելիորեն կաճի նաև սոցիալիզմի՝ որպես համաշխարհային քաղաքականության նոր ուժի, ազդեցությունը, կամրապնդվեն սոցիալիստական համագործակցության երկրների միջազգային դիրքերը:

Մարքսիստական-լենինյան գաղափարախոսության, ինչպես և դրանից բխող արտաքին քաղաքականության ուժն այն է, որ նա գիտական հիմունքների վրա է հիմնված: Դրա համար արդի միջազգային հարաբերություններում մեր գաղափարախոսության սկզբունքներն առավել մեծ նշանակություն են ստանում: Այն փաստը, որ սոցիալիզմը երկրագնդի վրա խաղաղություն է հաստատում, հիմնական պատնեշ է նոր համաշխարհային պատերազմի հրահրման ճանապարհին, բարձրացնում է սոցիալիստական արտաքին քաղաքականության բարոյա-քաղաքական կշիռը:

Լենինյան գաղափարախոսությունն ազդում է հեղափոխական շարժման զարգացման ու խորացման վրա՝ կապիտալի երկրներում: Այն մերկացնում է կապիտալիստական սիստեմի ներքին հակասությունները էկոնոմիկայի և քաղաքականության ոլորտում, որոնք արտահայտվում են իմպերիալիզմի ռազմաքաղաքական բլոկների ճգնաժամում, իմպերիալիստական տերությունների կառավարող դասակարգերի տարբեր խմբավորումների միջև տարաձայնությունների ուժեղացմամբ, վերջապես՝ որոշ կապիտալիստական պետությունների քաղաքականության մեջ դրական, ռեալիստական տենդենցների ձևավորմամբ:

Մարքսիստական-լենինյան գաղափարախոսությունը ոչ պակաս խորությամբ է ազդում նաև զարգացող պետությունների վրա, նրանց առջև սոցիալ-տնտեսական և քաղաքական, հիրավի, անկախ զարգացման լայն հեռանկարներ բացելով: Այդ տեսակետից միանգամայն հատկանշական է արդեն այն, որ մի ամբողջ շարք երիտասարդ պետություններ սոցիալիստական դիրքորոշումը հռչակել են որպես իրենց քաղաքական ծրագիր:

Արդի միջազգային իրադրությունը, որին ներհատուկ են իրադարձությունների ու հանգամանքների սրընթաց փոփոխականությունը, համաշխարհային քաղաքականության մեջ ներխուժող գործոնների հսկայական բազմազանությունը, միջազգային հարաբերությունների բուն իսկ բնույթի աճող բարդությունը, անտարակույս, չի կարող չազդել գաղափարախոսական պայքարի բովանդակության ու բընույթի վրա համաշխարհային մասշտաբով:

Պարզունակ պատկերացում կլիներ արդի միջազգային հարաբերությունների ամբողջ սիստեմը թափանցած գաղափարախոսական պայքարը հանգեցնել բացառապես մարքսիստական-լենինյան և բուրժուական գաղափարախոսությունների բախման: Իհարկե, դրանց ընդհարումը գաղափարախոսական պայքարի առանցքն է: Դրա հետ միասին հարկավոր է նաև աչքաթող չանել պայքարն ամեն երանգի ռևիզիոնիզմի, «ձախ» և աջ օպորտունիզմի դեմ: Առավել ևս, որ ամեն գույնի օպորտունիստները, ըստ էության, հանդես են գալիս որպես բուրժուազիայի կամա թե ակամա դաշնակիցներ սոցիալիզմի դեմ մղվող պայքարում: Քանի որ նրանց գաղափարական-փիլիսոփայական պլատֆորմը հաճախ է ձուլվում բուրժուազիայի պլատֆորմի հետ, հիմք է առաջանում նաև քաղաքական տեսակետից նրանց որոշակի ընդհանրության համար:

Տվյալ հոդվածը չի հավակնում վերլուծելու գաղափարական պայքարի բոլոր կարևոր ասպեկտները և դրա ազդեցությունն արտաքին քաղաքականության և միջազգային հարաբերությունների վրա: Հոդվածի նպատակն է՝ լուսաբանել որոշ առավել հրատապ արմատական պրոբլեմներ:

**Այն կարևորագույն նկրտումները, որոնք բնութագրում են տարբեր սոցիալ-տնտեսական կառուցվածք ունեցող պետությունների գաղափարական-տնտեսական հակամարտության ներկա էտապը, գաղափարախոսական պայքարի անընդհատ ուժեղացումն է, նրա սահմանների ու շրջանակների ընդլայնումը: Կապիտալիզմի ճակատագիրը վճռող այդ հակամարտության ներկայիս փուլի բուն իսկ բնույթը կանխորոշում է աշխարհում տեղի ունեցող գաղափարական-քաղաքական զուտեմարտերի ինչպես թափը, այնպես էլ լարվածությունը:**

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումը, անշուշտ, խաղաց այնպիսի մի հզոր կատալիզատորի դեր, որը շեշտակիորեն խըթանեց գաղափարախոսությունների պայքարը միջազգային ասպարեզում: Համաշխարհային սոցիալիստական սիստեմը, արդիականության բոլոր հեղափոխական ուժերը պատմական հարձակում են մղում իմպերիալիզմի, նրա ագրեսիվ քաղաքականության և ռեակցիոն գաղափարախոսության դեմ: Գաղափարական-քաղաքական կատաղի պայքարի հորձանուտում, որը, վերջին հաշվով, արտացոլում է պրոլետարիատի ու բուրժուազիայի դասակարգային դիրքերի անհաշտելիությունը, ներգրավվում են հասարակության ավելի ու ավելի լայն սոցիալական խավեր: «Որքան մեծ է պատմական գործողությունների թափը,— գրել է Վ. Ի. Լենինը,— որքան լայն է նրա ծավալը, որքան ավելի շատ է այդ գործողությունների մեջ մասնակցող մարդկանց թիվը և, ընդհակառակը, որքան ավելի խոր է բարեփոխությունը, որ մենք ուզում ենք իրագործել, այնքան ավելի շատ հետաքրքրություն և գիտակցական վերաբերմունք պետք է առաջ բերել դեպի այն, նորանոր միլիոնների և տասնյակ միլիոնների համոզել նրա անհրաժեշտության մեջ»[1]:

Սոցիալիստական համագործակցության ամրապնդումը նեղացնում է իմպերիալիզմի հնարավորությունները բոլոր ասպարեզներում, այդ թվում սոցիալիզմի վրա ճնշում գործադրելու տնտեսական, քաղաքական և ռազմական միջոցների օգտագործման բնագավառում: Առավել ևս մեծ նշանակություն է տրվում Արևմուտքում գաղափարախոսական ներգործության միջոցներին: Բայց այնպես, ինչպես որ կապիտալիզմն առմիշտ կորցրել է պատմական նախաձեռնությունը հասարակական առաջադիմության մեջ, այնպես էլ նրա ծնած գաղափարախոսությունն է զրկվել իր երբեմնի տիրապետող դիրքերից և կորցրել հեռանկարը: **Եթե գաղափարախոսական պայքարի ներկայիս էտապը դիտենք լայն պատմական տեսակետից, ապա ավելի քան ակըն-**

* «Международная жизнь» № 9, 1970.

1 *Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարի բանաձևը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման առթիվ: «Հայաստան» հրատարակչություն, 1966 թ., էջ 31:*

1 *Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 630:*

հակասությունները սոցիալիզմի և կապիտալիզմի միջև: Իսկ ինչ վերաբերում է սոցիալիստական և կապիտալիստական երկրների միջպետական հարաբերություններին, ապա դրանք կարող են և պետք է զարգանան խաղաղ գոյակցության հիման վրա, որը պահանջում է ոչ թե գաղափարախոսական պայքարից հրաժարվել, այլ պահպանել յուրաքանչյուր՝ թե՛ մեծ, թե՛ փոքր պետության սուվերենիտետը, իրավահավասարությունը, տերիտորիալ անձեռնմխելիության սկզբունքները, չմիջամտել այլ երկրների ներքին գործերին, հարգել բոլոր ժողովուրդների իրավունքները ազատորեն ընտրելու սեփական քաղաքական և սոցիալ-տնտեսական կառուցվածք, քաղաքականապես կարգավորել չլուծված միջազգային հարցերը:

Որոշ ժամանակ առաջ բուրժուական պրոպագանդայի մոդայական թեզիսն այն բանի պնդումն էր, թե խաղաղ գոյակցությունը, իբր, զուտ տակտիկական լոզունգ է, մի պրիոմ, որը իբր, նկատի է առնում այն, որպեսզի մոլորեցնի արևմտյան երկրների հասարակական կարծիքը Սովետական Միության իսկական մտադրությունների վերաբերյալ: Սակայն Սովետական Միության և մյուս եղբայրական երկրների արտաքին-քաղաքական պրակտիկան այնքան պսակազերծ արավ այդ բուրժուական կոնցեպցիան, որ այլևս ուղղակի անհնար դարձավ դրա վրա հենվելը: Արդյունքն այն եղավ, որ Արևմուտքում շատերն արդեն հրաժարվեցին այդ պրիմիտիվ տեսակետից, որպիսի հանգամանքը շատ հատկանշական փաստ է:

Սովետական Միության հարաբերությունների զարգացումը մի շարք կապիտալիստական երկրների, օրինակ, Ֆրանսիայի, Ֆինլանդիայի և այլ երկրների հետ, չնայած նրանց միջև եղած սոցիալ-դասակարգային և գաղափարախոսական տարբերություններին, ցույց է տալիս, որ **գաղափարների պայքարն ամենևին չի խոչընդոտում միջպետական հարաբերություններին:** Այդպիսի խոչընդոտ են սոցիալիզմի երկրների դեմ ուղղված քաղաքական և գաղափարախոսական դիվերսիաները, որոնցից դեռևս չեն հրաժարվել առավել ռեակցիոն իմպերիալիստական շրջանները:

Այն հիմնական ուղղությունների թվում, որոնցում միջազգային հարաբերությունների ասպարեզում պայքար է ծավալվում մարքսիստական-լենինյան գաղափարախոսության դեմ, հարկավոր է նշել նախ և առաջ «ապագաղափարայնացման» կոնցեպցիան, որը մեր գիտական գրականության մեջ հանգամանալի և համոզիչ քննադատության ենթարկվեց: Միջազգային ասպարեզում, ինչպես և իմպերիալիստական լագերի ներսում գաղափարների հակամարտության բուռն թափն ու մասշտաբները, հիրավի, ծիծաղելի են դարձնում այն հայտարարությունը, թե իբր մեր ժամանակում «գաղափարախոսությունները մեռնում են»: Այնուամենայնիվ բուրժուական տեսաբանները ձգնում են որպես ընդհանրապես գաղափարախոսության և, հասկանալի է, առաջին հերթին, պրոլետարական գաղափարախոսության «անկման» ապացույց օգտագործել արդի հասարակության ապրած գիտատեխնիկական հեղափոխության բուռն զարգացումը:

Սակայն գիտատեխնիկական հեղափոխությունը, որի նվաճումներից հակակոմունիզմի թեորետիկներն ու պրակտիկները փորձում են շահել, բնավ չի նսեմացնում հասարակական կյանքում և միջազգային հարաբերություններում գաղափարախոսության նշանակությունն ու դերը: Սրելով կապիտալիզմին հատուկ հիմնական հակասությունները, և ցուցադրելով այն փաստը, որ մոնոպոլիստական բուրժուազիան ձգտում է բացառապես իր եսասիրական շահերի համար օգտագործել գիտատեխնիկական առաջադիմության պտուղները, այդ հեղափոխությունն զգալիորեն ընդլայնում է գաղափարախոսական պայքարի ոլորտը: Մասսայական ինֆորմացիայի միջոցների տարածումն ամենուրեք և միջազգային հաղորդակցության ուղիների զարգացումը չեն կարող չանդրադառնալ գաղափարական-քաղաքական գոտեմարտերի մասշտաբների և սրության վրա, չեն կարող այդ պայքարում չներգրավել ավելի ու ավելի լայն ժողովրդական մասսաներ: Ընդսմին, պետք է ընդգծել, որ բուն տեխնիկան ու գիտությունն ամենևին չեն դառնում «գաղափարախոսության նոր ձև», ինչպես դա հաստատում են որոշ բուրժուական գիտնականներ:

Քարոզելով գաղափարախոսության դերի նվազում, «ապագաղափարայնացման» տեսաբանները, սակայն, հնացած են հայտարարում ոչ թե ամեն մի գաղափարախոսություն, այլ սոսկ բանվոր դասակարգի հեղափոխական գաղափարները: Հասկանալի պատճառներով, որոնց շարժառիթներն այնքան էլ դժվար չէ կռահել, իմպերիալիստական պրոպագանդան ձգտում է ներշնչել՝ թե իբր սոցիալիստական գաղափարախոսությունն աչքի է ընկնում նեղությամբ և միապաղաղությամբ, իբր, իրական կյանքի ամբողջ բարդությունն ու հակասականությունը խցկում է առաջադրված շրջանակների և սխեմաների՝ որպես պրոկրուստյան մահճի, մեջ և դրանով իսկ խանգարում ճանաչել արդի աշխարհի զարգացման կարևորագույն օրինաչափությունները: «...Գաղափարախոսությունը (նկատի է առնվում բանվոր դասակարգի գաղափարախոսությունը:— Ն. Կ.),— գրում է, օրինակ, Զբ. Բժեզինսկին, որն Արևմուտքում համարվում է խոշորագույն մասնագետներից մեկն այդ հարցում.— աղճատում է շրջապատող աշխարհի ընկալումը, միջազգային իրադարձությունները դիտելով այնպիսի հայեցակետից, երբ դրանց զարգացումը պատկերացվում է աշխարհի երկու հակադիր սոցիալ-տնտեսական սիստեմի տրոհելու հիման վրա, ոչ ճկուն, վերացական և պարզունակ բնորոշումներով»[1]:

«Ապագաղափարայնացման» կոնցեպցիայի տարբերակ է այն թեզը, թե գաղափարախոսությունը, իբր, էական դեր է խաղում հեղափոխական շարժման սկզբնական փուլերում միայն: Այն բանի համեմատ, երբ հասարակությունը կամ պետությունը դառնում է «ավելի հասուն», գաղափարախոսությունը, իբր, վեր է ածվում գրեթե մի հասարակ սիմվոլի: Այդպիսի հայացքներ ունի մասնավորապես, այդ քաղաքականության մշակողներից մեկը՝ Գ. Կիսինջերը, Միացյալ Նահանգների արտաքին քաղաքականության առաջատար տեսաբանը, որն իր նոր գրքում փորձում է գաղափարախոսությունը պատկերացնել որպես յուրօրինակ «մանկական հիվանդություն», որով հիվանդանում են մինչև հասունանալը»[1]:

¹ *Zbigniew K. Brzezinski. Ideology and Power in Soviet Politics. New York, 1962, p. 113.*



Վերջին ժամանակներս Արևմուտքում ավելի ու ավելի է տարածվում, այսպես կոչված՝ «գաղափարախոսության պահպանողականության» տեսությունը: Իսկույն ևեթ հարկավոր է բոլոր կետերը դնել i-ի վրա, մատնանշելով, որ այդ տեսությունը, ըստ էության, ուղղված է մարքսիստական-լենինյան գաղափարախոսության դեմ, թեև այդ քարոզներն ձևացնում են, թե պահպանողական են համարում ամեն մի գաղափարախոսություն:

Իհարկե, գաղափարախոսությունները տարբեր են լինում: **Բուրժուական գաղափարախոսությունը, և առանձնապես նրա առավել ռեակցիոն տարատեսակները, միջազգային հարաբերություններում հանդես են գալիս, անշուշտ, որպես պահպանողական գործոն, որպես լրացուցիչ արգելակ, որոնք խոչընդոտում են դրական, ռեալիստական տենդենցների ի հայտ գալուն ու զարգացմանը կապիտալիստական երկրների քաղաքականության մեջ:**

Այնուամենայնիվ արևմտյան պրոպագանդան ձգտում է ապացուցել, թե խոշորագույն կապիտալիստական տերությունների արտաքին քաղաքականությունը հաղթահարել է կամ հաջողությամբ հաղթահարում է «գաղափարախոսության պահպանողական ներգործությունը»: Եթե հավատանք դրան, ապա առաջատար իմպերիալիստական տերությունների արտաքին քաղաքականությունը թվում է որպես ինչ-որ «համընդհանուր շահերի ներդաշնակ արտահայտություն», որն, իբր, ընդհանուր ոչինչ չունի մոնոպոլիստական բուրժուազիայի գաղափարախոսության հետ:

«Ապագաղափարայնացման» կոնցեպցիան, ինչպես և «գաղափարախոսության պահպանողականության» տեսությունը կարելի է հիմնավորապես քննել որպես մի փորձ՝ «հերքելու» մարքսիզմ-լենինիզմը, որպես ձգտում՝ զինաթափելու միջազգային բանվոր դասակարգին, ստեղծելու «գաղափարական վակուում», որպեսզի այնուհետև այն լրացվի բուրժուական գաղափարախոսությամբ: Այս առումով խիստ հատկանշական է Ջ. Ֆոստեր Դալեսի խոստովանությունը, որն անդրադառնալով ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության մեջ գաղափարախոսության դերին, բացահայտ ասել է՝ «Մենք պետք է շարժունակ լինենք, մենք պետք է **գաղափարները** օգտագործենք որպես զենք...»[2]: Այդ հետաքրքրաշարժ վկայությունը ձայնակցվում է, այսպես կոչված՝ ամերիկյան քաղաքական գիտության ներկայացուցիչների ուրիշ այլ «խոստովանություններով»: «Կրկնաբևեռային պայքարում,— գրում է վերը հիշատակված Ֆլիեսը,— գաղափարախոսությունը ո՛չ միայն բացասական դեր է խաղում, խթանելով քաղաքական մտածողությունը, այլև քաղաքական գործիքի դրական դեր... Նկատի առնելով, որ իշխանության համար մղվող պայքարը հսկայական չափով հանդիսանում է պայքար մարդկանց մտքերի վրա հսկողություն սահմանելու համար, գաղափարախոսությունը առաջնակարգ կարևոր միջոց է»[3]:

Իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանների համար ներկա պայմաններում, երբ այդ երկրների բնակչության լայն մասսաներն ավելի ակտիվ են ներխուժում բուրժուական պետության սրբության սրբոցը՝ արտաքին քաղաքականության ոլորտը, հատուկ նշանակություն են ստանում արտաքին-քաղաքական կուրսի արդարացումն ու հիմնավորումը: Մոնոպոլիստական շրջանները, որոնք որոշում են իմպերիալիզմի արտաքին քաղաքականությունը, ոչ առանց պատճառի են այդ հիմնավորումը համարում քաղաքականությունը գործնականորեն կյանքում արմատավորելու պարտադիր պայմաններից և նախադրյալներից մեկը, մի հանգամանք, որը թուլացնում է այդ քաղաքականության նկատմամբ սեփական երկրների հասարակայնության հակազդեցությունը:

Հասկանալի է, որ իմպերիալիստական պետությունների հասարակայնության բացասական հակազդեցությունն իրենց իսկ կառավարությունների արտաքին-քաղաքական քայլերի վրա, դեռևս վճռական չափով չի կանխորոշում քաղաքական գծի ընտրությունը: Եվ, այնուամենայնիվ, բուրժուական կառավարությունները չեն կարող այն անտեսել: Դրա համոզիչ օրինակը հակապատերազմական շարժման աճն է ԱՄՆ-ում, մի շարժում, որը կառավարող շրջաններին, սկսած պրեզիդենտ Նիքսոնից, ստիպում է վիթխարի ջանքեր գործադրել, գաղափարախոսական մանիպուլյացիա կատարելով շեղել բողոքի ալիքը և արդարացնել Հնդկաչինում ագրեսիան շարունակելու գիծը:

Կարլ Մարքսը նկատել է. «Թուլությունը միշտ փրկվել է հրաշքներին հավատալով...»[4]: Ըստ երևույթին, ամերիկյան արտաքին քաղաքականության ղեկավարներն իրենց սփոփում են այնպիսի պատրանքներով, որ ամենաանպատկառ դեմագոգիայի օգնությամբ իրենց կհաջողվի կախարդական կերպափոխություն կատարել, Հնդկաչինում ԱՄՆ-ի ագրեսիան ներկայացնել որպես «ավանդ ընդհանուր խաղաղության գործում»:

---

**Արդի էտապում իմպերիալիզմի արտաքին քաղաքականությունը, եթե այն դիտելու լինենք որպես սոցիալ-քաղաքական իրողություն, որը բնութագրվում է գլխավոր հատկանիշների ընդհանրությամբ, խարսխվում է գաղափարախոսական հիմքի վրա, որի անկյունաքարը հակակոմունիզմն է: Հակակոմունիզմի գաղափարախոսությունը որոշում է իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ինչպես ընդհանուր նպատակներն ու ուղղությունները, այնպես և արտաքին-քաղաքական կոնկրետ գործողությունները:**

Դա վերաբերում է ո՛չ միայն սոցիալիստական պետությունների, այլև զարգացող երկրների նկատմամբ տարվող քաղաքականությանը: Այստեղ հակակոմունիզմը դրսևորվում է, մասնավորապես, երիտասարդ պետությունների ոչ-կապիտալիստական ուղիով զարգա-

¹ *Տե՛ս Henry A. Kissinger. American Foreign Policy. Three Essays. New York, 1969, pp. 24—25.*

² Цит. по: *„Survey. A Journal of Soviet and East European Studies„. Winter-Spring, 1969, p. 105.*

³ *P. Fiess.* Указ. соч., стр. 168—169.

⁴ К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 8, стр. 123.

քարի սրման ժամանակաշրջանում, ուր գոյացել էր, ըստ էության, ներքին հակասոցիալիստական ուժերի և արտաքին ռեակցիայի մի ինքնօրինակ դաշնակցություն, որի գլխավոր ստրատեգիական նպատակն էր «մեղմացնել սոցիալիզմը» և աստիճանաբար Չեխոսլովակիան կտրել սոցիալիստական մյուս երկրներից. հակակոմունիզմի գաղափարախոսները կարծում էին, թե վերջապես իրենց համար անօրինակ առիթ ծագեց իրենց պլանների գործնական ստուգման համար:

Այդ պլանների ձախողումը հակակոմունիստների շրջանում լայն դիսկուսիա առաջացրեց, որի նպատակն էր սոցիալիստական աշխարհ ներթափանցելու համար գաղափարա-քաղաքական առավել արդյունավետ նոր ծրագրեր մշակել: Այդ առթիվ միանգամայն բացահայտորեն է արտահայտվել Ա. Ծուբը, որը ԱՄՆ-ում համարվում է «կոմունիզմի պրոբլեմների մասնագետ»: Ամերիկյան արտաքին-քաղաքական մի ժուռնալում հրապարակված հոդվածներից մեկում Ա. Ծուբն առաջարկել է մտածել երկարատև տակտիկայի մասին՝ հունգարական և չեխոսլովակյան իրադարձությունների համանմանության դեպքում: Այդ տակտիկայի վճռական օղակը, նրա կարծիքով, պետք է ոչ թե ռազմական բազաները լինեն, պակտերը կամ դավադրությունները, այլ «կոմունիստական և մյուս սուվերեն պետությունների անկախության և **չմիավորվելու** (ընդգծումն իմն է, Ն. Կ.) իրավունքի արագ, եռանդուն պաշտպանությունը»[1]:

Կարծես թե ավելի պարզ չե՛ս ասի: Իսկ գլխավոր նպատակն այստեղ ևս նախկինն է՝ ջլատել սոցիալիստական համագործակցության քաղաքական և ռազմական հզորությունը, քայքայել սոցիալիզմի երկրների տնտեսական և ռազմա-քաղաքական դաշինքը և, այդպիսով, փոխել ուժերի հարաբերակցությունն աշխարհում: Ահա թե ինչու իմպերիալիզմի քայքայիչ գործունեության կարևոր տարրերից մեկը հարձակումներն են Վարշավայի պայմանագրի պաշտպանական կազմակերպության վրա, այն պնդումը, թե այժմ այն հարկավոր և արդյունավետ չէ[2]:

Այսպես են իմպերիալիզմի գաղափարախոսական կոնցեպցիաները ու դոկտրինաները ձևափոխվում-դառնում քաղաքական գործողությունների կոնկրետ ծրագրեր: Դա մեկ անգամ ևս ապացուցում է, որ հակակոմունիզմի գաղափարախոսությունն անխզելիորեն կապված է և միահյուսվում է հակակոմունիզմի քաղաքական պրակտիկայի հետ, իսկ հաճախ վերածվում քաղաքականության:

Պատմական, հատկապես վերջին տարիների փորձը, անհերքելիորեն ապացուցում է, որ **գաղափարախոսական պայքարի ճակատը երկու աշխարհների դասակարգային պայքարի ամենալարված և ամենաակտիվ տեղամասերից մեկն է:** Միջազգային հարաբերությունները, և, մասնավորապես սոցիալիստական ու կապիտալիստական պետությունների հարաբերությունները, ոչ միայն այդ տեսակետից որևէ բացառություն չեն կազմում, այլ, ընդհակառակը, դառնում են մի ասպարեզ, ուր այդ պայքարն ավելի սուր է դրսևորվում:

Միջազգային ասպարեզում գաղափարական պայքարի մասշտաբների ընդլայնումը և սրումը, սոցիալիստական երկրների և արդիականության բոլոր հեղափոխական ուժերին հրամայաբար թելադրում են ավելի ակտիվացնել ջանքերն իմպերիալիզմի քաղաքական և գաղափարախոսական դիվերսիաները մերկացնելու ու կանխելու գործում: Կոմունիստական և բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցությունում ՍՄԿԿ պատվիրակությունը հատկապես ընդգծեց «եղբայրական կուսակցությունների համաձայնեցված ջանքերի և փոխադարձ աջակցության նշանակությունն այնպիսի կոնկրետ գործողություններ իրականացնելու համար, որոնք ուղղված են կոմունիզմի հակառակորդների գաղափարախոսական հնարքների մերկացմանը»[3]: Հակակոմունիզմի դեմ գաղափարական պայքարի բազմակողմանի և մշտապես համաձայնեցված միջոցառումների համար բոլոր անհրաժեշտ պայմանները կան, և դա, անտարակույս, կբարձրացնի ընդհանուր ջանքերի գործունեությունն ու արդյունավետությունն այն գոտեմարտում, որ մղվում է հանուն սոցիալիզմի մեծ գաղափարների, ընդդեմ բուրժուական գաղափարախոսության:

Մարքսիզմ-լենինիզմի գաղափարները գնալով ավելի մեծ չափով են դառնում արդի միջազգային հարաբերությունների ամենահզոր ուժը, որը որոշում է դրանց կարևորագույն առանձնահատկությունները ու գծերը: Այդ փաստն արտացոլում է սոցիալիզմի և նրա գաղափարախոսության վերածվելը պատմական առաջադիմության վճռական գործոնի:

---

1 *„Foreign Affairs„, January 1969, p. 277.*

2 *Տե՛ս A. Korbonski. The Warsaw Pact. New York, 1969.*

3 «Международное Совещание коммунистических и рабочих партий», стр. 79.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции,—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03275 Պատվեր 1578 Թղթի չափսը 70 × 108 1/16, Տիրաժ 12800 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 20/X 1970 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խաչհակյանի փող. № 28:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Ընտիր երկեր: Եռհատորյակ: Հ. 1: Մ., Քաղհրատ, 1970, 640 էջ:

Կազմված է նրանց ստեղծագործությունների ժողովածուի երկրորդ հրատարակության հիման վրա: 1-ին հատորում զետեղված են՝ Թեզիսներ Ֆոյերբախի մասին, Գերմանական գաղափարախոսությունից, Կոմունիստական կուսակցության մանիֆեստը և այլ երկեր:

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Կոմունիստական կուսակցության մանիֆեստը: Մ., Քաղհրատ, 1970, 64 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ (Պատասխան մարքսիստների դեմ ուղղված «Русское Богатство»-ի հոդվածներին): Մ., Քաղհրատ, 1969, 223 էջ:

ՊԱՎԼՅՈՒՉԵՆԿՈ Ա. Մ.— Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը կոմունիստական հասարակության կառուցման մեջ օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների հարաբերության մասին: Մինսկ, ԲՊ Համալս. հրատ., 1970, 100 էջ:

ԶԱԳԻՆ Բ. Ա.— Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսն ստեղծեցին ու զարգացրին գիտական կոմունիզմի տեսությունը: Լենինգրադ, «Наука» հրատ., 1970, 330 էջ:

ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ Զ. Ա.— Վ. Ի. Լենինը և Հայաստանը: (Մատենագիտական ցանկ): Ե., Ալ. Մյասնիկյանի անվ. հանրապետ. գրադարանի հրատ., 1970, 201 էջ:

ՊՐՈՇՈՒՆԻՆ Ն. Ֆ.— Լենինյան խոսքի ուժը: Դիտողություններ Վ. Ի. Լենինի բանավիճելու արվեստի մասին: Մ., Քաղհրատ, 1969, 203 էջ:

ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.— Լենինը և Անդրկովկասը: 1893—1924: Գիրք առաջին՝ 1893—1904 թթ., «Հայաստան» հրատ., 1970, 334 էջ:

Ներկա ծավալուն մենագրության առաջին գրքում հեղինակը ցույց է տվել Վ. Ի. Լենինի խոշոր դերը Անդրկովկասում մարքսիզմի տարածման, հեղափոխական սոցիալ-դեմոկրատական, բոլշևիկյան կազմակերպությունների ստեղծման ու ամրապնդման և Վրաստանում, Ադրբեջանում ու Հայաստանում 1893—1904 թթ. հեղափոխական շարժման գործում:

ԻԼՅԻՉԵՎՍԿԻ Ա. Ֆ.— Լենինը Արևմուտքի գեղարվեստական գրականության մեջ: Կիևի համալս. հրատ., 1969, 287 էջ:

ԲԱԼԱՅԱՆ Ա. Ա.— Ա. Վ. Լունաչարսկին երիտասարդ սերնդի գեղագիտական դաստիարակության մասին: Ե., ՀՍՍՀ «Գիտելիք» ընկ. հրատ., 1970, 109 էջ:

Միխայիլ Վասիլևիչ Ֆրունզե: Հարազատների, մտերիմների, զինակիցների հուշերը (ժողովածու): Ֆրունզե, «Կիրգիզստան» հրատ., 1969, 223 էջ:

Արտակարգ կոմիսարի ուղիով: Ռոստով, Ռոս. հրատ., 1970, 507 էջ:

Ներկա ժողովածուն նվիրված է բոցավառ բոլշևիկ Սերգո Օրջոնիկիձեին (1886—1937):

ՎԻԼԱՐ ԿԼՈԴ— Սոցիալիստական շարժումը Ֆրանսիայում: 1893—1905: Մ., «Прогресс» հրատ., 1969, 583 էջ:

Կուսակցական աշխատողի տեղեկատու: Իններորդ պրակ: Մ., Քաղհրատ, 1969, 576 էջ:

Այստեղ զետեղված են՝ ՍՄԿԿ ԿԿ պլենումների բանաձևերը. որոշումները, ՍՄԿԿ ԿԿ, ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումները, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության օրենքներ, հրամանագրեր, ՀԱՄԿԽ և ՀամԼԿԵՄ ԿԿ մի քանի որոշումներ և այլն, որոնք ընդունվել են 1968 թ. ապրիլից մինչև 1969 թ. մարտը, ինչպես նաև միջազգային կոմունիստական ու բանվորական կուսակցությունների խորհրդակցությունների վավերագրեր: Փաստաթղթերը դասավորված են ըստ բովանդակության և ժամանակագրական կարգով:

ՍՄԿԿ պատմության դասախոսությունների դասընթաց: Մասն երկրորդ: (1925—1969): Դասագիրք տեխնիկական, գյուղատնտեսական և բժշկական բուհերի ուսանողների համար: Մ., « Высшая школа» հրատ., 1969, 416 էջ:

Գինը 25 կ.: 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԲԺՇԿԱԿԱՆ ՆՈՐ ՍԱՐՔ

*Ասեղնահարմամբ բուժման յուրաքանչյուր սեանս սկսվում է հիվանդի մարմնի վրա 10—15 ցավազուրկ կետերի որոնումից. այդպիսի կետերի թիվը հասնում է 600-ի: Անհրաժեշտ կետերը բժիշկը գտնում է հիվանդի ասելով և հատուկ ատլասով: Եթե ասեղնահարումից հիվանդը ցավ է զգում, որոնումը շարունակվում է մի այլ տեղ: Այս եղանակով միշտ հուսալի չէ ցավոտ և անցավ կետեր գտնելը:*

*Որոնումներին օգնում է նոր, ինքնատիպ փոքր սարքը, որի ծայրը սահում է մաշկի վրայով, և երբ ինդիկատորը հպվում է մաշկի ցավազուրկ կետին, լամպը վառվում է: Պարզվում է, որ մաշկի ցավազուրկ հատվածներն օժտված են բարձր էլեկտրահաղորդչականությամբ (Լենինգրադ):*

## ՖՏՈՐԸ ՀԱՐԲԵՐՈՎ

*Ատամի փտումը (կարիոզը) կանխելու մեթոդների ուսումնասիրումից պարզվել է, որ խմելու ջրի մշակումը ֆտորով՝ արդյունավետ, դյուրին ու անվնաս պրոֆիլակտիկ միջոց է: Ահա թե ինչու առողջապահության համաշխարհային կազմակերպությունը 130 պետությունների խորհուրդ է տվել խմելու ջուրը մշակել ֆտորով, եթե այս կամ այն պատճառով խմելու ջրում պակասել է ֆտորի առավելագույն քանակությունը (1 : 1000000):*

*Այնտեղ, ուր անհնար է նման եղանակով ջուրը մշակել, ԱՀԿ-ն առաջարկում է այլ մեթոդներ: Ֆտորը կարելի է օգտագործել հաբերի ձևով, բժշկի դեղատոմսով:*

## ՀԱՆՆԻ 105-ՐԴ ՏԱՐՐԸ

*ԱՄՆ-ի Լոուրենսի անվան ռադիացիոն լաբորատորիայի գիտնականները մինչև 84 ՄէՎ լարվածությամբ շարժման մեջ դնելով ազոտի միջուկի ծանր իոններ՝ դրանցով ռմբակոծել են Կալիֆոռնիա—249 ռադիոակտիվ իզոտոպի մանր հատիկները և հայտնաբերել Մենդելեևի աղյուսակի 105-րդ տարրը: Պրոֆեսոր Ա. Ջիորսոն այդ նոր տարրն անվանել է Հաննի, ի պատիվ գերմանացի միջուկագետ-ֆիզիկոս Օտտո Հաննի, որը 1939 թ. նկատեց, որ հնարավոր է 92-րդ տարրի՝ ուրանի տրոհումը շղթայական ռեակցիայի միջոցով:*

*Նոր տարրի ուսումնասիրումը կարևոր է միջուկային մատերիայի հատկությունների և տրանսուրանների քիմիական առանձնահատկությունների իմացության համար, որոնք օգնում են ճիշտ հասկանալու Մենդելեևի պարբերական աղյուսակի էությունը:*

## ՆՈՐԸ ԾԱՌԵՐԻ ՄԱՍԻՆ

*Ծառերն աճում են միայն գիշերները՝ երեկոյան ժամը 9-ից մինչև առավոտյան 6-ը: Ավստրալիացի գիտնական դոկտոր Գոնզալեսի բազմաթիվ չափումները վկայում են, որ ծառի օրական աճի 90 տոկոսը տեղի է ունենում մթության մեջ, իսկ 10-ը՝ երեկոյան: Կեսօրից մինչև երեկոյան ժամը 6-ը ծառերը «հանգստանում» են:*

## ՋՈՒՐԸ ԵՎ ՍԻՐՏԸ

*Հետազոտություններից պարզվել է, որ սրտային հիվանդություններից մահացության դեպքերը համեմատաբար քիչ են այն վայրերում, ուր հողը հարուստ է զանազան մետաղներով, որոնք մարդու օրգանիզմն են թափանցում խմելու ջրի միջոցով:*

*Ուսումնասիրություններ են կատարվել ԱՄՆ-ի Ջորջիա նահանգում, ուր մի շրջանում մահացությունը սրտամկանային հիվանդություններից ավելի մեծ է, քան մի այլ շրջանում: Ընդ որում բնակավայրերն իրարից տարբերվում են հիմնականում նրանով, որ հյուսիսային մարզերում լեռնահանքերի հողմահարությամբ ջուրը հագենում է տարբեր հանքանյութերի մանրագույն մասնիկներով. մինչ հարավային մարզերում հողը հարուստ չէ հանքանյութերով: Անգլիայում կազմված մահացության քարտեզները նույնպես վկայում են, որ սրտանոթային հիվանդությունններն առավել տարածված են փափուկ ջուր ունեցող վայրերում:*

## ԱՍՏՂԱԴԻՏԱՐԱՆ ՀՐԱԲԽԻ ՎՐԱ

*Ամենաբարձր աստղադիտարանը գործում է Հավայայում: Այն կառուցվել է երեք տարում, ծովի մակերևույթից 4140 մետր բարձրության վրա, Մաունա Քեա հանգած հրաբխի խառնարանի մոտ: Այդ աստղադիտարանում աշխատող աստղագետները հարկադրված օգտագործում են թթվածնային ապարատներ, գրում է փարիզյան «Ֆիգարոն»:*

*Օգնություն*

# ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ԴՊՐՈՑ

## ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԳԻՏԱԿԱՆՈՐԵՆ ՂԵԿԱՎԱՐՎՈՂ ՊՐՈՑԵՍ Է

Կոմունիստները խնդիր են դրել ստեղծելու այնպիսի հասարակարգ, որտեղ չկան շահագործող դասակարգեր, որտեղ պայմաններ կլինեն յուրաքանչյուր մարդու ընդունակությունների անկաշկանդ ու ազատ զարգացման համար: Այդ խնդրի լուծման հնարավորությունները առաջին անգամ հիմնավորել է մարքսիզմը: Հայտնագործելով հասարակության զարգացման օրենքները, մարքսիզմը ցույց տվեց հին աշխարհի հիմքերի դեմ մղվող աշխատավորության պայքարի ռեալ ուղիները, որոնք համապատասխանում են պատմական օբյեկտիվ օրինաչափությանը, սահմանեց այդ պայքարի կոնկրետ նպատակներն ու խնդիրները:

Կապիտալի դեմ ծավալված հեղափոխական շարժման, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ասպարեզում ձեռք բերված հաջողությունները համապատասխանում են այդ շարժմանը մասնակցող մասսաների հեղափոխական եռանդի մասշտաբներին: Կոմունիզմի կառուցումն աննախընթաց պրոցես է մարդկության պատմության մեջ: Աշխատավորական սովար մասսաները կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարությամբ անշեղորեն ներգրավվում են ստեղծագործական բեղուն գործունեության մեջ: Կապիտալիզմին հաջորդող նոր հասարակությունը, Լենինի խոսքերով ասած, բնորոշվում է այն բանով, որ նրա երևան գալուն պես «հասարակական և անձնական կյանքի բոլոր բնագավառներում սկսվում է արագ, իսկական, իրոք մասսայական առաջընթաց շարժում բնակչության ՄԵԾԱՄԱՍՆՈՒԹՅԱՆ, իսկ ապա ողջ բնակչության մասնակցությամբ» (ПСС, т. 33, стр. 99—100):

Սոցիալիզմի օրոք հասարակության առաջընթացը բոլոր բնագավառներում դառնում է հասարակության նպատակը, և այսպիսով, այն վերածվում է կառավարման արդյունավետ մեխանիզմներ պահանջող մարդկային գործունեության կարևորագույն օբյեկտի: Ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, «Հաղթելու գիտությունը, դա, ըստ էության, կառավարման գիտությունն է...» (Ճառ, արտասանած ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ («Правда», 13 հունիսի, 1970 թ.): Այժմ կոմունիզմի հաջող կառուցման էական գործոնը սոցիալիստական հասարակության յուրաքանչյուր անդամի կողմից այդ գիտության հիմունքների ու սկզբունքների խոր ըմբռնումն է:

Հասարակական զարգացման պրոցեսի գիտական կառավարման պրոբլեմը բազմաթիվ ասպեկտներ ունի: Դրանցից կարևորագույնն այն ասպեկտն է, որը կառավարումը դիտում է որպես կոմունիզմի կառուցման անհրաժեշտ գործոն, որն օբյեկտիվորեն պայմանավորված է նոր հասարակության կազմավորման, սոցիալիզմից կոմունիզմին անցման արտադրաուժերի և հասարակական հարաբերությունների զարգացման օրինաչափություններով[1]: Այդ ասպեկտն արծարծելիս պրոբլեմի ուսումնասիրման համար կարելի է առանձնացնել հետևյալ հարցերը.

1. Ի՞ՆՉ ԲԱՆ Է ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ:

2. ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԳԻՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ:

3. ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ:

Հայտնի է, որ աշխատանքի առարկան փոխելիս, մարդը միաժամանակ փոխում է նաև ինքն իրեն: Դա նշանակում է, որ պրակտիկ աշխատանքային գործունեությունն ուղղված է ոչ միայն առարկայական աշխարհի փոփոխմանը, բնության ուժերի ուսումնասիրությանն ու յուրացմանը, այլև բուն մարդու փոփոխմանը, հասարակության մեջ մարդկանց այն կապերի ու հարաբերությունների ձևերի փոփոխմանը, որոնց միջոցով միայն գոյություն ունի մարդկանց վերաբերմունքը բնության հանդեպ: Հետևապես, հասարակության զարգացումը միայն տեխնիկայի, գիտության զարգացումը չէ, այլ առարկայական աշխարհը վերափոխելու մարդու ունակությունը: Այն միաժամանակ բուն հասարակական հարաբերությունների զարգացումն է: Ընդ որում, սոցիալիզմի պայմաններում շարունակ աճում է պրակտիկ գործունեության այդ կողմի նշանակությունը: Կոմունիզմն անհնար է առանց նոր հասարակական հարաբերություններ ստեղծող մասսաների արարչագործ աշխատանքի: Այստեղից հետևում է, որ անհրաժեշտություն է յուրահատուկ գործունեություն ծավալել, որի նպատակը հասարակական հարաբերությունների կատարելագործումն է, դրանց պրակտիկ գործունեության անընդհատ զարգացումը և արդյունավետ բարձրացումը: Դա է սոցիալիզմի օրոք կառավարչական գործունեության սոցիալական ֆունկցիան:

Կապիտալիստական հասարակության զարգացման տարերայնությունն արտահայտվում է այն բանով, որ հասարակական հարաբերությունների ողջ սիստեմը՝ քաղաքական, տընտեսական, կազմակերպական մշտապես հակասության մեջ է մտնում արտադրաուժերի, աշխատավոր մասսաների ստեղծագործական ունակությունների զարգացման պահանջների հետ: Կապիտալիզմի շրջանակներում այդ հակասությունը աղբյուր է դասակարգային մշտական բախումների, որոնք, վերջին հաշվով, անխուսափելի են դարձնում կապիտալիզմի տապալման հեղափոխական ակտը, շրփման բոլոր ձևերը և, ամենից առաջ, արտադրահարաբերությունների համապատասխանեցումը արտադրաուժերի զարգացման մակարդակին: Կապիտալիզմի օրոք տեխնիկական իմաստով որքան էլ արդյունավետ լինի կառավարումը, սոցիալական առումով այն կլինի անարդյունավետ, քանի որ նրա անլուծելի հակասությունները մշտապես կրկնվում են նոր ձևերով: Այստեղ հասարակական հարաբերությունների զարգացման պրոցեսն ամբողջովին չի կարող ղեկավարվել հասարակության անմիջականորեն գիտակցված շահերով, որովհետև կառավարումն ի սպաս է դրված նպաստելու հասարակության շահագործողական էությանը, կապիտալիստների դասակարգի շահերի հետ կապված սոցիալական հարաբերությունների պաշտպանության ու պահպանման գործին: Այդ պատճառով կապիտալիստական հասարակարգի կառավարման բուն մեխանիզմին հատուկ է անտագոնիստական հակասությունն արտադրության զարգացման կարգավորման անհրաժեշտության և կառավարումը կապիտալիստական հարաբերությունների ամրապնդման նպատակներին ենթարկելու միջև:

Սակայն չպետք է կարծել, թե սոցիալիզմն իր առաջացման պահից իսկ կարող է հասարակական հարաբերությունների զարգացման կառավարումը մեկեն ենթարկել ամբողջ հասարակության անմիջականորեն գիտակցված շահերին: Այստեղ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԷՎՈԼՅՈՒՑԻԱՆԵՐԸ դադարում են ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐ լինելուց, ինչպես գրել են Մարքսն ու Էնգելսը, բայց միշտ առաջանում է հասարակական հարաբերությունները փոփոխվող արտադրաուժերին համապատասխանեցնելու պրոբլեմը: Եվ դա բնական է, քանի որ սոցիալիզմը զարգացող, դինամիկ հասարակարգ է: Արտադրաուժերի զարգացման

[1] *Կառավարման պրոբլեմի հետ առնչված մի քանի կարևոր հարցեր (կառավարման դասակարգային բնույթը, կառավարումը և սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը, կառավարումը գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում, կառավարման, կազմակերպության ու կարգապահության կապը) քննարկվել են Գ. Աշինի և Մ. Շաֆիրի «Հասարակության կառավարումը և սոցիալիստական դեմոկրատիզմը» հոդվածում, որը տպագրված է* «Политическое самообразование» *հանդեսի № 7-ում: Նոր հասարակարգի կառուցման գործում կոմունիստական կուսակցության ղեկավար դերին նվիրված կլինի հերթական հաջորդ կոնսուլտացիան՝ գիտական կոմունիզմի վերաբերյալ հոդվածաշարից:*

մակարդակից հասարակական կապերի ձևերի ետ մնալու ամեն մի, նույնիսկ աննշան փաստ անխուսափելիորեն հարուցում է էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացումը կասեցնող որոշ հնարավորություն: Ուստի, անհրաժեշտ է մշտապես որոնել հասարակական հարաբերությունների կատարելագործման պրոցեսի կառավարման բավարար չափով արդյունավետ գործող մեխանիզմներ: Այլ խոսքով, սոցիալիզմը՝ որպես հասարակական սիստեմ պահանջում է հասարակական հարաբերությունների զարգացման, աշխատանքի կազմակերպման ձևերի այնպիսի կառավարում, որի պայմաններում այդ հարաբերություններն ու ձևերը բոլոր մակարդակներում առավել չափով ապահովեն արտադրաուժերի աճը, ժողովրդական ամենալայն մասսաների ստեղծագործական պոտենցիալի զարգացումը: Այդպիսի կառավարման մեխանիզմը մշակվում է հասարակության առաջընթացին զուգընթաց:

Սոցիալիզմի օրոք կառավարման սիստեմի նպատակասլաց պրոցեսի կատարելագործումը, նախ և առաջ, բնորոշվում է կոմունիստական կուսակցության գործունեությամբ, որի ղեկավար դերն ավելի է աճում, երբ արտադրության տեխնիկայի զարգացման շնորհիվ բարդանում է տնտեսական կառուցվածքը, հասարակության կազմակերպությունը, երբ հրամայական է դառնում հասարակության ողջ պրակտիկ գործունեության արդյունավետ բարձրացումը:

Սոցիալիստական հասարակարգում կառավարման կատարելագործման պրոցեսի խորացման առավել բնորոշ ցուցանիշն է ներկայումս կիրառվող տնտեսական ռեֆորմը: Նրա նպատակն է՝ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքն առավել չափով օգտագործել ձեռնարկությունների ներսում և ձեռնարկությունների միջև, ձեռնարկությունների ու մինիստրությունների և այլ օբյեկտների միջև շփման այնպիսի ձևերի զարգացման համար, որոնք առավել բարենպաստ պայմաններ ընտեղծեն ո՛չ միայն ապահովելու արտադրության տնտեսական արդյունավետության ընտեղծված մակարդակը, այլև անշեղորեն բարձրացնելու այն: Հենց այդպիսի արդյունքի հասնելն է ժողովրդական տնտեսության կառավարման գլխավոր խնդիրը սոցիալիզմի օրոք:

Սոցիալիստական հասարակությունը կողմնորոշվել է հասարակական հարաբերությունների կոմունիստական ձևեր ստեղծելու: Այդ պայմաններում համապատասխան կազմակերպական ձևերի զարգացման ամեն մի ուշացում, երբ ներկայումս առաջին հերթին գիտատեխնիկական հեղափոխության կապակցությամբ բարդանում է հանրային արտադրության կառուցվածքը, հանգեցնում է ժողովրդական տնտեսության միջխարի կորուստների: Այլ կերպ ասած՝ արտադրության աճի, նրա զարգացման տեմպերի արագացման պրոցեսում անման տեններց ունի սխալների, առավել օպտիմալ ձևերից շեղումների «արժեքը»: Դա վերաբերում է հասարակության բոլոր բարդ ենթասիստեմներին, օրինակ, ձեռնարկություններին, ֆիրմաներին և այլն, որն ընտիպում է ավելի ու ավելի շատ ուժ ու միջոց հատկացնել արտադրության, աշխատանքի կազմակերպման հարցերին, տեխնոլոգիայի տարբերակների ընտրությանն այդպիսի ենթաբաժանումներից յուրաքանչյուրում:

Այսպիսով, այն սոցիալ-տնտեսական պրոցեսների կառավարումը, որոնց զարգացմամբ բնորոշվում է հասարակական հարաբերությունների կատարելագործումը, հանդես է գալիս որպես դեպի կոմունիզմ ընթացող հասարակության օրինաչափ և օբյեկտիվորեն անհրաժեշտ տարրը:

2

Մինչսոցիալիստական բոլոր ֆորմացիաներում դրսևորվող հասարակության զարգացումն ինչ-որ ձևով կոնսերվացնելու կամ լավագույն դեպքում այն ենթարկելու ձևավորված հասարակական հարաբերություններին՝ կառավարման կուսակցականության, դասակարգայնության դրսևորումն է: Տվյալ դեպքում պահպանողական տենդենցներն արտացոլում են շահագործողական իշխող դասակարգերի շահերը, որոնք հակասում են հասարակության անդամների մեծամասնության պահանջմունքներին:

Կառավարման մեխանիզմը սոցիալիզմի պայմաններում նույնպես կուսակցական, դասակարգային բնույթ է կրում: Բայց այստեղ գոյություն ունի խոր յուրահատկություն: Դա ամենից առաջ արտահայտվում է այն բանում, որ կուսակցականությունն ի սպաս է դրված բանվոր դասակարգի շահերին: Իսկ բանվոր դասակարգի շահերը սոցիալիզմի պայմաններում համընկնում են ամբողջ հասարակության արմատական շահերին, նրա զարգացման պահանջներին: Հասարակության կառավարման մեխանիզմը գոյություն ունեցող հարաբերությունների պահպանման միջոցից հասարակության առաջադիմության անհրաժեշտ պայման դարձնելն իր բարդությամբ աննախընթաց խնդիր է դնում կառավարման առաջ:

Այդ խնդրի տեսակետից չափազանց պարզ են թվում այն պրոբլեմները, որոնք լուծում է կառավարումը մինչսոցիալիստական հասարակարգում, քանի որ այնտեղ կառավարման



ողջ մեխանիզմն իր հիմքում ծառայում է արդեն գոյություն ունեցող այն հարաբերությունների վերարտադրմանը, որոնք ամրապնդված են իշխող կուլտուրայում, նրա նորմաներում, արժեքներում, սովորույթներում, առասպելներում և այլն: Սակայն իրադրությունն արմատապես փոխվում է սոցիալիզմի պայմաններում, երբ անհրաժեշտություն է ծագում կառավարելու հենց հասարակության զարգացումը, այսինքն երբ անխուսափելի են դառնում ներկայից ապագան տանող նոր ուղիների որոնումները: Իսկ դա պահանջում է կառավարման խոր և համակողմանի գիտականություն, բուն կառավարման տեսական հիմք դարձնել հասարակության վերաբերյալ գիտությունը:

Գիտությունը մարդկանց պրակտիկ ունակությունն է, որն ի վիճակի է տեսականորեն յուրացնելու բնության ու հասարակության օրենքները, որպես զարգացող ամբողջական սիստեմներ: Հասարակության զարգացման օրենքների իմացությունն այն շղթան է, որի միջոցով մարդը իդեալական ձևով անցում է կատարում դեպի ապագան նախապես ծրագրված պլանով, ինչպես և այդ պլանի գործնական իրականացմամբ:

Սակայն ճիշտ չէր լինի կարծել, թե գիտությունն այստեղ դրսևորվում է որպես մի հնարավորություն հաշվարկելու ապագայի հետագիծը, ինչպես, ասենք, հաշվարկում են արբանյակների հետագծերը: Գիտությունը, որը հիմք է ստեղծում հասարակության զարգացման արդյունավետ կառավարման համար, չի սահմանափակվում օբյեկտիվ տենդենցների արձանագրմամբ և այն բանի որոշմամբ, թե հասարակարգում ի՞նչ փոփոխություններ պետք է սպասել, եթե պահպանվեն հայտաբերված այդ տենդենցները: Գիտության խնդիրն է՝ դնել և լուծել այն ռեալ պրոբլեմները, որոնց բախվում է հասարակությունը:

Մարքսն ու Էնգելսը գրել են, թե պահանջմունքների բավարարումը անխուսափելիորեն նոր պահանջմունքներ է ծնում: Սակայն բարդությունը նրանում է, որ նոր պահանջմունքների ծագումն անխուսափելիորեն իր մեջ պարունակում է ինչ-որ նոր, այնպիսի տարրեր, որոնք չեն համապատասխանում հնարավորությունների գոյություն ունեցող մակարդակին: Կարճ ասած, մարդկային գործունեության զարգացման պրոցեսում շարունակ հակասություն է առաջանում հնարավորությունների և պահանջմունքների, մարդկանց ցանկությունների և դրանց գործնական իրականացման հնարավորությունների միջև:

Եվ հասարակության ռեալ առաջադիմության ամեն մի քայլն, ըստ էության երևան է գալիս որպես այդ հակասությունը լուծելու միջոց, պայման, անհրաժեշտ նախադրյալ: Գիտության խնդիրն է՝ հասարակության պրակտիկ գործունեության այնպիսի ծրագիր նախանշել, որը հանգեցնի ինչպես պահանջմունքների, այնպես և դրանց բավարարման պրակտիկ հնարավորությունների որակական աճին: Պրոբլեմի գիտականորեն հիմնավորված այդպիսի իդեալական լուծումը սոցիալիստական հասարակարգի սեփական զարգացումը կառավարելու ունակության բաղկացուցիչ մասն է:

Այսպիսով, կառավարումը սոցիալիզմի պայմաններում կուսակցականության ու գիտականության միասնականության կամ նույնականության մարմնացումն է: Կուսակցական է, քանի որ ծառայում է բանվոր դասակարգի, ողջ աշխատավորության շահերի բավարարման նպատակին: Գիտական է, որովհետև կառավարման զարգացումն իր մեջ որպես բաղկացուցիչ մաս պարունակում է գիտելիքների, հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքների, ծագող պրոբլեմների, հակասությունների պրակտիկ լուծման ուղիների իմացությունը:

Վ. Ի. Լենինը մարքսիզմը դիտում էր որպես իրերի օբյեկտիվ վիճակի վերլուծության գործում գիտական լիակատար զգաստության միացումը մասսաների, անձերի, խմբերի, կազմակերպությունների, կուսակցությունների հեղափոխական էներգիայի ամենավճռական ճանաչման հետ: Կուսակցականությունն ու գիտականությունը հանդես են գալիս որպես սոցիալիստական հասարակարգի գործունեության անհրաժեշտ մոմենտներ ու կողմեր: Կոմունիստական կուսակցությունն անհնարին է առանց օբյեկտիվ օրենքների առկայության, առանց հաշվի առնելու դրանց պահանջները քաղաքականության, պրակտիկ գործունեության մեջ: «Պրոլետարական կուսակցության համար չկա ավելի վտանգավոր սխալ,— նշել է Վ. Ի. Լենինը,— քան սեփական տակտիկան սուբյեկտիվ ցանկությունների վրա կառուցելը...» (ПСС, т. 31, стр. 352): Կոմունիստական կուսակցության յուրահատկությունը նրա անբաժանելիությունն է գիտականությունից: Դրա հետ մեկտեղ կուսակցականությունից, բանվոր դասակարգի արմատական շահերը, հասարակության առաջադիմական զարգացման պահանջներն արտահայտելու անհրաժեշտությունից անջատված գիտականությունն այլասերվում և դառնում է օբյեկտիվիզմ, հանգեցնում է հասարակական առաջընթացի ռեալ պրոբլեմներից գիտության հեռացմանը, որն անհամատեղելի է իսկական գիտականությանը: Սոցիալիզմի պայմաններում կոմունիստական կուսակցականության և գիտականության միաս-

նությունը կառավարման կարևորագույն տարրն է:

### 3

Կառավարման կարևորագույն սկզբունքներից մեկը սոցիալիստական հասարակարգում, ինչպես հայտնի է, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքն է: Նրա էությունն այն է, որ սոցիալիստական հասարակարգն իր արդյունավետ զարգացման, սոցիալ-տնտեսական պրոցեսների կառավարումը ապահովելու համար, պետք է լինի դեմոկրատիզմի ու ցենտրալիզմի միասնության մարմնացում:

Սոցիալիզմի, ինչպես և կոմունիզմի կառուցումն անբաժանելի է դեմոկրատիայի զարգացումից: Սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը սոցիալիստական հասարակարգի զարգացման անհրաժեշտ պայմանն է, նախադրյալը և արդյունքը: Դա բացատրվում է այն բանով, որ սոցիալիզմը պատմության մեջ առաջին սոցիալական սիստեմն է, որն առաջանում է ո՛չ թե որպես բազմաթիվ մասնավոր շահերի բախման օժանդակ, տարերային արդյունք, այլ միլիոնավոր մարդկանց ստեղծագործական նպատակասլաց գործունեության արտահայտություն: Ուստի, սոցիալիզմն անհնար է կառուցել առանց այդ պրոցեսին մշտապես մասնակից դարձնելու աշխատավոր մասսաներին, առանց պայմաններ ստեղծելու յուրաքանչյուր անձի ստեղծագործական ներունակությունների զարգացման համար:

Այնքան, որքան սոցիալիզմի, կոմունիզմի կառուցումը միլիոնների ամենօրյա խնդիրն է դարձնում պայքարը հանուն սոցիալական պրոգրեսի, սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը դառնում է հասարակության զարգացման կառավարման պրոցեսում մշտապես լուծվող պրակտիկ խնդիր: Հետևապես, դեմոկրատիայի զարգացումը չի կարելի բացատրել միայն որպես կոմունիզմին հատուկ մարդասիրական իդեալների մարմնացում: Բուն այդ իդեալներն իրենց արտահայտությունն են գտնում հասարակության առաջադիմության օբյեկտիվ պահանջմունքներում: Վ. Ի. Լենինը գրել է, թե «ամեն մի դեմոկրատիա, ինչպես ընդհանրապես ամեն մի քաղաքական վերնաշենք (անխուսափելի, քանի դեռ չի ավարտվել դասակարգերի վերացումը, քանի դեռ չի ստեղծվել անդասակարգ հասարակություն), վերջին հաշվով ծառայում է արտադրությանը և վերջին հաշվով որոշվում տվյալ հասարակության արտադրական հարաբերություններով» (նույն տեղը, հ. 42, էջ 276):

Գործի ոչ պակաս կարևոր կողմն է կառավարման ցենտրալիզմի կատարելագործումը: Դրա անհրաժեշտությունը պայմանավորված է նրանով, որ որպես աշխատանքի բաժանման, պրակտիկ գործունեության մասշտաբների աճման և ձևերի բազմապատկման հետ կապված բարդ սիստեմ, հասարակության ներքին տարրերի բազմազանության աճեղ անը բարդացնում է արտադրության, ժողովրդական տնտեսության բազմաթիվ ոլորտներում աշխատող մարդկանց ստեղծագործական ջանքերը միասնական ամբողջական հոսանքում միավորելու պրոբլեմը: Հասարակության ներքին բազմազանության այդ աճը հակասությունների առաջացման պայմաններ է ստեղծում ողջ հասարակության և նրա ենթասիստեմների զարգացման միջև, օրինակ, այն ձեռնարկությունների, որոնք ձգտում են առանձին դեպքերում պլանը կատարել առանց հաշվի առնելու հասարակության պահանջները տվյալ պահին: Նման փաստերը սուր քննադատվեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1969 թ.) պլենումում, որն ընդգծեց, թե անհրաժեշտ է բոլոր մակարդակներում ժողովրդական տնտեսության ղեկավարման մշտական կատարելագործում, կադրերի պատասխանատվության բարձրացում, արտադրության արդյունավետության համար մղվող պայքարի ուժեղացում:

Այսպիսով, հասարակության առաջընթացը՝ որպես ամբողջական սիստեմ հնարավոր է, երբ դրա առանձին մասեր հանդես են գալիս իբրև այդ ամբողջականի զարգացման տարրեր:

Դեմոկրատական ցենտրալիզմի էության, դեմոկրատիայի և ցենտրալիզմի միասնության ճիշտ ընկալումը կոմունիզմի կառուցման դաշրջանում բացառիկ մեծ, պրակտիկ նշանակություն ունի: Դեմոկրատիայի ու ցենտրալիզմի հակադրությունն անխուսափելիորեն կհանգեցնի կառավարման էության սխալ ըմբռնմանը, դա այն պատրանքն է ստեղծում, որ դեմոկրատիայի զարգացումն իբր թե ցենտրալիզմի թուլացումն է, իսկ ցենտրալիզմի զարգացումն իբր կապված է դեմոկրատիայի սահմանափակման հետ: Մինչդեռ իրականում հասարակության զարգացման կառավարման մեխանիզմի կատարելագործումը միաժամանակ նշանակում է քաղաքացիների, արտադրական բջիջների, իշխանության տեղական մարմինների և ուրիշների իրավունքների ու պարտականությունների ընդլայնում և դրա հետ մեկտեղ՝ այն անշուշտ ենթադրում է համապատասխան ուժեղացում ցենտրալիզմի որպես մի սկզբունքի, որն ի վիճակի է միասնական մի նպատակի ուղղելու իրենց առանձնահատուկ ֆունկցիաները կատարող առանձին կոլեկտիվների աշխատանքը:

Օրինակ, ձեռնարկությունների ընդլայնումը



որպես դեմոկրատիայի մեխանիզմի կատարելագործման մի քայլ կարող է միայն բացասական հետևանքների հանգեցնել, եթե դրա հետ մեկտեղ չկատարելագործվեն կենտրոնացված պլանավորման մեթոդները, որոնց նպատակն է յուրաքանչյուր ձեռնարկության շահերը տնտեսապես համաձայնեցնել հասարակության շահերի հետ, այսինքն կատարելագործել ցենտրալիզմը: Կենտրոնացված պլանավորման մասշտաբների ընդլայնումը նույնպես կարող է բացասական տենդենցների հանգեցնել, եթե այն միաժամանակ չզուգորդվի ներքևից եկող նախաձեռնության զարգացման, կառավարման բարձրագույն այնպիսի ֆունկցիաների օղակներից ազատման հետ, որոնք կարող են կատարվել ավելի ցածր մակարդակներում:

Ինչպես արդեն նշվեց, հասարակության զարգացման կառավարման կարևորագույն սկզբունքն է նրա բարձր արդյունավետության ապահովումը: Այն հարցի նկատմամբ, թե ինչպե՞ս հասկանալ հասարակության կառավարման արդյունավետությունը սոցիալիզմի պայմաններում գոյություն ունեն տարբեր տեսակետներ, մանավանդ տնտեսագետների մեջ: Առանց այդ վեճերի մանրամասնությունների մեջ մտնելու, պետք է նկատի ունենալ, որ կառավարման մեխանիզմի արդյունավետության չափանիշը, վերջին հաշվով, այն է, թե այդ մեխանիզմն ի՞նչ չափով ի վիճակի կլինի ապահովելու հասարակության առաջընթացը: Նճացած, պահպանողական սոցիալ-տնտեսական ֆորմացիաների պայմաններում արդյունավետությունն իշխող դասակարգերի կարծիքով որոշվում է ստեղծված հասարակական հարաբերությունների պահպանումն ապահովելու ունակությամբ: Կապիտալիզմի զարգացման հետ է կապված նոր չափանիշի ծագումն այդ պատկերացման սահմաններում: Նրա ընտրությունը պայմանավորված է սպառման, իրերի ձեռք բերման, հարստության կուտակման կողմնորոշմամբ: Հենց ինքնանպատակ իրային հարստության և նրա հետ կապված սպառողականության ապահովումն է կառավարման արդյունավետության՝ կապիտալիստական հասարակարգին հատուկ կարևորագույն չափանիշը:

Կոմունիզմը պրակտիկ գործունեության արդյունավետության, հետևապես նաև հասարակության կառավարման արդյունավետության սկզբունքորեն այլ չափանիշ է ենթադրում: Այդ չափանիշը կապված է հանրային հարստության նոր, իրերի պաշտամունքին խորթ հասկացողության հետ, որը բնական է կապիտալիզմի համար: Մարքսը գրել է, որ կոմունիզմի օրոք «իսկական հարստություն է բոլոր անհատների զարգացած արտադրաուժը» (Կ. Մարքսի, «Քաղաքատնտեսության քննադատությունը» երկի ձեռագրից: «Вопросы философии», 1967, № 7, стр. 121): Հարստության այդպիսի հասկացողությունը որոշիչ դեր է դառնում նոր հասարակարգի կառուցման պայմաններում: Մարդու ստեղծագործական ունակությունների զարգացումն է այստեղ արտահայտվում որպես հասարակության իսկական հարստության իր կարևորությամբ հարանուն ձևը: Դրան համապատասխան կառավարման արդյունավետությունն էլ չափվում է այն բանով, թե որքանով է դա նպաստում յուրաքանչյուր մարդու ստեղծագործական ներունակությունների զարգացմանը, նրա ունակությունների ու ձիրքերի ներդրմանը ողջ հասարակության առաջընթացի համար: Սակայն, հարստության այդպիսի հասկացողությունն ամենևին չի նշանակում, թե այժմ իբր կարելի է անտեսել մարդկանց նյութական բարեկեցության մշտական աճի անհրաժեշտությունը: Իսկական և իրերում մարմնավորված հարստության միջև եղած հարաբերությունն իր արտահայտությունն է գտնում սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքում, որի գործողության պայմաններում արտադրության միջոցների հանրային սեփականությունը, հանրային արտադրությունը և նյութական ու հոգևոր բարիքների բաշխումը բնական անհրաժեշտությամբ ենթարկում է հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությանը և յուրաքանչյուր մարդու անձի համակողմանի ազատ զարգացմանը:

* * *

Սոցիալիստական հասարակության կառավարման մեխանիզմի զարգացումն, ինչպես արդեն նշվեց, ողջ հասարակության առաջադիմության կարևորագույն կողմն է: Ուստի սոցիալիստական հասարակարգի ամենօրյա խնդիրն է՝ նոր պահանջներին, նոր պայմաններին համապատասխան կատարելագործել կառավարման մեխանիզմը:

Կառավարման զարգացման արդի փուլը չի կարելի պատկերացնել առանց հասարակության առջև գիտատեխնիկական հեղափոխության առաջադրած սկզբունքորեն նոր պահանջների: Այդ զարգացումն առնչվում է աշխատանքի բնույթի փոփոխման, գիտական արտադրության, գիտելիքների՝ պրակտիկ գործունեության վերածման պատմական որոշակի տենդենցի հետ: Այդ նախատեսելով, Մարքսը գրել է, որ անմիջական աշխատանքն իր ժամանակին համընդհանուր գիտական աշխատանքի համեմատությամբ կդառնա որոշակի, թեև անհրաժեշտ, բայց երկրորդական մոմենտ: Այդ

պրոցեսն ավելի ու ավելի է տարածվում մարդկային գործունեության տարբեր ոլորտների վրա՝ բնության վերափոխման տարբեր ձևերից սկսած մինչև հասարակության զարգացման գիտականորեն հիմնավորված կառավարումը:

Այդ կապակցությամբ աճում է հասարակության առջև ծառացած պրոբլեմներին ճիշտ մոտեցման նշանակությունը: Հարկավոր է նկատի ունենալ, որ համապատասխանորեն կարող են աճել հասարակության կորուստները, եթե այս կամ այն պրոբլեմի առթիվ սխալ որոշում ընդունվի: Որոշում ընդունելու պրոցեսը, ասենք, գործարանում, կոնստրուկտորական բյուրոյում, մինիստրությունում, այնքան է բարդանում, որ յուրաքանչյուր առանձին դեպքում պահանջում է կազմակերպական հատուկ միջոցառումներ՝ ձեռնհաս մարդկանց տեղափոխումը մի տեղից մյուսը, նրանց ընտրությունը, հանձնաժողովների ստեղծումը, այլ կազմակերպությունների հետ նոր կապերի հաստատումը, հարցերի մշակմանը տարբեր կազմակերպությունների մասնակից դարձնելը և այլն: Այդ գործունեության մասշտաբների ու նշանակության աճը պահանջում է համապատասխանորեն ավելացնել կառավարման մեխանիզմի ճկունությունը, գործունությունը, ուժեղացնել ամենօրյա պայքարը հանուն նրա արդյունավետության:

Մեր հասարակարգի հետագա զարգացման անհրաժեշտությունը կոմունիզմի ճանապարհին ենթադրում է ողջ հասարակության նպատակասլաց ստեղծագործական աշխատանք, նոր հասարակարգի կառուցման խնդիրների լուծման արդյունավետ ուղիների որոնումներ: Հաջողությունն այստեղ զգալի չափով որոշվում է այն բանով, թե ամեն ոք ի՞նչ չափով է հասկանում այդ խնդիրների կարևորությունը և որքանով պատրաստ է համապատասխան չափով պատասխանատվություն կրելու հանուն դրանց լուծման: Հասարակության զարգացման կառավարման անշեղ կատարելագործումը պայմաններ է ստեղծում այդ առաջընթացի համար և դրանով իսկ հանդես է գալիս որպես նրա կարևորագույն կողմը:

**Ա. ԱԽԻԵԶԵՐ**

«Политическое самообразование», 1970, № 9.



# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՍՊԵԿՏՆԵՐԸ

Արդի հասարակության տնտեսական ու սոցիալական կառուցվածքը ձևավորվում և զարգանում է ներկայումս տեղի ունեցող գիտատեխնիկական հեղափոխության կանխորոշիչ ներգործությամբ, որը մարդկության առաջ բաց է անում բնության վերափոխման, նյութական հարստությունների բազմապատկման, ստեղծագործական ունակությունների խորացման և մարդու բազմակողմանի զարգացման իրոք անսահման հնարավորություններ: Այդ հեղափոխության որակական առանձնահատկությունն այն է, որ առավել ինտենսիվ կերպով գիտությունն անմիջականորեն արտադրանք դարձնելու հիման վրա այն արմատական փոփոխություններ է մտցնում արտադրության տեխնոլոգիայի, էներգետիկայի, աշխատանքի գործիքների ու առարկաների, մարդկանց աշխատանքային գործունեության կառավարման կազմակերպման և բնույթի մեջ:

Գիտատեխնիկական հեղափոխությունը պատմականորեն առաջանում է գիտության ու տեխնիկայի նախընթաց զարգացման, կուտակված արդյունաբերական պոտենցիալի հիման վրա: Միաժամանակ այն պայմանավորված է նաև հասարակական արդի պահանջներով, իսկ տնտեսական առումով՝ արտադրության արդյունավետությունը բարձրացնելու և ինտենսիվ վերարտադրության գերակշռող դերն ապահովելու անհրաժեշտությամբ: Սովետական գիտությունն ուսումնասիրում է այդ հեղափոխության պրոբլեմները ո՛չ միայն տնտեսական գործոնների, արտադրության նյութեղեն տարրերի, այլև սոցիալ-քաղաքական գործոնների փոխկապերով ու փոխազդեցությամբ հանդերձ: Արդի գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները և մեր հասարակարգի սոցիալական նպատակների միակցումը կոմունիստական կուսակցությունը դիտում է, որպես համաշխարհային երկու սիստեմների պատմական մրցակցության ընթացքի վրա վճռական ազդեցություն ունեցող գործոն:

Սոցիալիստական արտադրահարաբերությունների սիստեմում գիտատեխնիկական նվաճումների իրականացումը ենթարկվում է տնտեսական օբյեկտիվ օրենքների գործողությանը: Գիտատեխնիկական հեղափոխության տնտեսական ու սոցիալական հետևանքների բնույթը պայմանավորվում է արտադրահարաբերությունները որոշող սեփականության հարաբերություններով: Ուստի, գիտատեխնիկական առաջընթացի ասպարեզում աշխատանքի մասշտաբները, արագությունն ու արդյունավետությունը, առաջին հերթին, պայմանավորվում են այն բանով, թե որքանով դրանք կհամապատասխանեն տնտեսական օբյեկտների պահանջներին, որքանով ռացիոնալ են օգտագործվում ժողովրդական տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունները:

* * *

Գիտատեխնիկական հեղափոխության տնտեսական հետևանքները կարող են ճիշտ ըմբռնվել միայն այն դեպքում, երբ դրանք դիտվեն հանրային արտադրության արդյունավետության բարձրացման խնդրի հետ սերտ կապված, որպես սովետական էկոնոմիկայի զարգացման տվյալ ժամանակաշրջանի ստրատեգիական ուղղություն:

Մի շարք հանգամանքներով է որոշվում ինտենսիվացման միջոցով արտադրության արդյունավետության բարձրացման օբյեկտիվ անհրաժեշտությունը: Երկրի ինդուստրացման շրջանում ծանր արդյունաբերության զարգացման բարձր տեմպերն զգալի չափով ապահովվեց ի հաշիվ ժողովրդական սպառման և գյուղատնտեսության առարկաներ արտադրող ճյուղերի: Ներկայումս կուսակցությունը խնդիր է դրել՝ խիստ բարձրացնել ժողովրդական սպառման արտադրանքի թողարկումը և աշխատավորների կենսամակարդակը, պահպանելով հանդերձ ծանր արդյունա-

քերության զարգացման բարձր տեմպերը: Մեր երկիրն այժմ ունի ամենաժամանակակից կառուցվածքի զորեղ ինդուստրիա, որը հիմք է ծառայում այդ չափազանց բարդ, երկակի տնտեսական խնդրի լուծման համար: Սակայն տվյալ խնդրի հաջող լուծման համար անհրաժեշտ ռեսուրսները կարող են ապահովվել միայն արտադրության ինտենսիվացման միջոցով, նրա արդյունավետության բարձրացման հիման վրա:

Հանրային արտադրության արդյունավետության բարձրացման գործում անշուշտ վճռական դեր է խաղում գիտատեխնիկական առաջընթացը: Մեր օրերում առանձնապես այժմեական է հընչում լենինյան հայտնի դրույթն այն մասին, թե հաղթանակում է նա, ով ունի մեծագույն տեխնիկա, կազմակերպվածություն, կարգապահություն և ավելի լավ մեքենաներ:

Սակայն գիտատեխնիկական առաջընթացով ապահովվող տնտեսական արդյունքի բազմապատկման համար անհրաժեշտ է առավել լիովին օգտագործել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունները: Ներկայումս հանրային արտադրության արդյունավետության բարձրացումն արգելակում են գիտահետազոտական, նախագծա-կոնստրուկտորական և փորձարարական աշխատանքների կազմակերպման, գիտատեխնիկական նվաճումների իրականացման գործում գոյություն ունեցող թերությունները: Հրամայական անհրաժեշտություն է սոցիալիզմի տնտեսական օրենքների համակողմանի հաշվառման հիման վրա ստեղծելու գիտատեխնիկական առաջադիմության իրականացման ճկուն և գործուն մեխանիզմ, վերացնելու ժողովրդական տընտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նըվաճումների օգտագործումը կասեցնող արգելքները:

Այս ուղղությամբ մեծ աշխատանք է կատարվում գիտահետազոտական, նախագծային, նախագծա-կոնստրուկտորական, տեխնոլոգիական կազմակերպությունների գործունեությունը գիտատեխնիկական կարևորագույն պրոբլեմների լուծման վրա կենտրոնացնելու, գիտական հետազոտությունների, կոնստրուկտորական ու տեխնոլոգիական մշակումների կատարման և դրանց գործնական իրականացման միջև ընկած ժամանակի կրճատման նպատակով գիտության ու տեխնիկայի զարգացման կառավարումը բարելավելու ուղղությամբ: Հատուկ ուշադրություն է դարձվում գիտության ու տեխնիկայի պետական պլանավորման ողջ սիստեմի կատարելագործմանը՝ պլանի կառուցվածքից սկսած մինչև ժողովրդատնտեսական պլաններում հայրենական և արտասահմանյան գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, առաջավոր փորձի օգտագործումից սպասվող արդյունքի ըստ հնարավորին առավել լրիվ հաշվառման կազմակերպումը: Սկըսվում է երկարատև ժամանակի (10—15 և ավելի տարիների) համար գիտատեխնիկական պրոգնոզների մշակումը, որոնց օգնությամբ կորոշվեն գիտության և տեխնիկայի զարգացման հիմնական տենդենցներն ու ուղղությունները և ժողովրդական տնտեսության մեջ գիտական հետազոտությունների ու մշակումների արդյունքներն ապագայում պրակտիկ կերպով օգտագործելու հնարավորությունները: Ընդ որում ոչ սակավ նշանակություն է ստանում գիտահետազոտական ու փորձնական-կոնստրուկտորական աշխատանքների ծավալների և բուն արտադրության, ինչպես նաև գիտատեխնիկական առաջադիմության փոխադարձաբար կապված առանձին փուլերի (ֆունդամենտալ ու կիրառական կարգի տեսական հետազոտությունների և այդ հետազոտությունների արդյունքների կոնստրուկտորական ու տեխնոլոգիական մշակման) առավել բարենպաստ հարաբերակցության ապահովումը:

Քանի որ պլանային յուրաքանչյուր ժամանակաշրջանում սահմանափակ են այն միջոցները, որոնք կարող են հատկացվել արտադրության տեխնիկական կատարելագործմանը, խնդիր է առաջանում ճիշտ ընտրելու գիտատեխնիկական առաջընթացի՝ արտադրության արդյունավետության բարձրացման տեսակետից տվյալ ժամանակաշրջանում առավել նպատակահարմար ուղղությունները: Այս առումով անբավարար ուշադրություն է նվիրվում նյութականացված աշխատանքի տնտեսումն ապահովող տեխնիկական միջոցների ստեղծմանն ու արմատավորմանը. գոյություն ունեցող տեխնիկան նպաստում է ավելի շուտ նյութական ռեսուրսների աճմանը, քան դրանց լավագույն օգտագործմանը: Մինչդեռ, ինչպես ցույց են տալիս 1968 թվականի տվյալները, անցյալում աշխատանքի ծախսումները արտադրության ծախքերում հասնում էին 80,3 տոկոսի (այդ թվում հումքինն ու նյութերինը 64,6 տոկոս, օժանդակ նյութերինը՝ 4,5, վառելանյութինը՝ 3,9, էներգիայինը՝ 2,5 և ամորտիզացիայինը՝ 4,8 տոկոս) և հետագա աճման տենդենց ունեն, իսկ ամբողջ աշխատավարձի տեսակարար կշիռը սոցապի գծով մասհանումների հետ մեկտեղ կազմում էր 16,6 տոկոս: Այս ամենն առաջացնում է նյութականացված աշխատանքի տընտեսումն ու նրա հասարակական արտադրողականության բարձրացումը ավելի մեծ չափով ապահովող տեխնիկայի ստեղծման աշխատանքներն արագացնելու անհրաժեշտություն:

Արտադրության տեխնիկական մակարդակը շատ բանով որոշվում է տեխնոլոգիական սարքավորման պարկի ժամանակին նորացմամբ: Ամորտիզացիայի ներկայումս գործող նորմաները ելնում են մեքենայական պարկի նորացման 17-ամյա ժամկետից, իսկ իրականում այն կազմում է 20—25 տարի: Մինչդեռ աշխատանքի գործիքների բազային նոր մոդելները մեծ մասամբ ստեղծվում են յուրաքանչյուր 7—10 տարին մեկ անգամ, և հենց այդ ժամկետն էլ որոշում է մեքենայական պարկի նորացման օպտիմալ տեմպը: Այսպիսով, ամորտիզացիայի նորմաներն իրենք տեխնիկական առաջընթացի տեմպերից մեքենայական պարկի նորացման ետ մնալու նախապայման են հանդիսանում: Դրա հետ մեկտեղ մեքենաների ու սարքավորման միջին տարեկան թողարկումը չի ծածկում արտադրական հիմնական ֆոնդերի ակտիվ մասի փաստացի մաշվածքը: Մեքենաշինության մեջ, օրինակ, այդ պատճառով ամեն տարի դուրս է գրվում սարքավորման 2 տոկոսից մի փոքր ավելին, մինչդեռ եթե նրանց փոխարինման ժամկետն ընդունենք նույնիսկ սարքավորման բազային մոդելների նորացման ժամկետը 2 անգամ գերազանցող մակարդակով (14 տարի), ապա ամեն տարի պետք է դուրս գրվի սկզբնական պարկի մոտավորապես 7 տոկոսը: Դրա հետևանքով չափից դուրս ավելանում է հիմնական վերանորոգման աշխատանքների ծավալը. սարքավորման ծառայության նորմալ ժամկետի ընթացքում այդ նպատակով կատարված ծախսերը հավասար են նրա թողարկման արժեքին, իսկ շատ դեպքերում զգալիորեն գերազանցում են այն:

Այդ առումով մեծ նշանակություն ունի ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը 1971 թվականի երկրորդ կիսամյակում (առ 1 հունվարի 1952 թ. վիճակով) հիմնական ֆոնդերի վերագնահատում կատարելու մասին. դրա շնորհիվ հնարավորություններ կստեղծվեն տեխնիկական առաջընթացի արագացմանը նպաստող շատ խնդիրների ավելի հաջող լուծման համար: Հիմնական ֆոնդերի կառուցվածքում դրանց վերականգնըման արժեքի և մաշվածքի աստիճանի առկայության վերաբերյալ լրիվ ու ճշգրիտ տվյալները կարող են օգտագործվել ժողովրդատնտեսական պլանավորման հետագա կատարելագործման միջոցառումներ կիրառելու համար: Միաժամանակ կստեղծվի տնտեսապես հիմնավորված բազա, որը թույլ կտա ճշտելու ամորտիզացիոն մասհանումների գործող նորմաները, հաշվի առած տեխնիկական առաջադիմությունը, նոր մեծածախ գներն ու տարիֆները, և անհրաժեշտ պայմաններ ապահովելու հիմնական ֆոնդերի վերարտադրության, պահպանման ու ավելի լավ օգտագործման համար:

Ամորտիզացիոն մասհանումների սիստեմի, ինչպես նաև սարքավորման գների կարգավորումը մեծ հնարավորություններ կստեղծեն տեխնիկական առաջադիմության արագացման համար: Այսպես, օրինակ, ավելի բարենպաստ պայմաններ կստեղծվեն տեխնիկական առաջընթացին զուգընթաց ֆոնդահատույցի բարձրացման օրինաչափության գործողության համար:



Գիտատեխնիկական առաջընթացի և նրանից բխող աշխատանքի հասարակական բաժանման խորացմամբ է պայմանավորված նյութական արտադրության կառուցվածքի սկզբունքային փոփոխությունների, միջճյուղային ու ներճյուղային համաչափությունների օպտիմացման անհրաժեշտությունը: Մի քանի հարյուր ճյուղերից բաղկացած սովետական էկոնոմիկայի արդի կառուցվածքը համոզիչ կերպով վկայում է երկրի ինդուստրիալ բարձր պոտենցիալի մասին: ՍՍՀՄ-ում բավական լայն չափերով են օգտագործվում ժողովրդական տնտեսության, այդ թըվում նաև արդյունաբերության կառուցվածքի կատարելագործման հնարավորությունները: Այսպես, անշեղորեն աճում է այնպիսի ճյուղերի տեսակարար կշիռը, ինչպիսիք են քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունն ու մետաղամշակումը, սարքաշինությունն ու ռադիոտեխնիկական, էլեկտրոնային, էլեկտրատեխնիկական, հաստիքա-գործիքային, էլեկտրաէներգետիկ արդյունաբերությունը:

Բայց միշտ չէ, որ արտադրական կառուցվածքը զարգացել է արտադրության առավել արդյունավետությունն ապահովելու միջոցով: Ներկայումս զգալի աշխատանք է ծավալվում արտադրության կառուցվածքի կատարելագործման օպտիմացման համար:

Կառուցվածքային փոփոխությունները երկրի արդյունաբերական կոմպլեքսում ընդհանուր առմամբ արտահայտվում են այն բանով, որ ամբողջությամբ վերցրած «Ա» խմբի ճյուղերի զարգացման տեմպերը գերազանցող առավել արագ տեմպերով է աճում մեքենաշինության ու մետաղամշակման, քիմիական արդյունաբերության, էլեկտրաէներգետիկայի և առաջավոր այլ ճյուղերի արտադրանքը: Միաժամանակ «Ա» խմբի ներսում տեղի են ունենում լուրջ տեղաշարժեր սպառման և բնակչության սպասարկման առարկաներ արտադրող ճյուղերի համար արտադրության միջոցների արտադրության տեսակարար կշռի աճման ուղղությամբ, այդ արտադրանքի տեսակարար կշիռն ընթացիկ հնգամյակի վերջում կկազմի «Ա» խմբի ամբողջ արտադրանքի առնվազն 20 տոկոսը:

Կառուցվածքային էական փոփոխություններ տեղի կունենան արդյունաբերության նաև մյուս ճյուղերում: Գազի և նավթի արդյունաբերության աճման գերազանցող տեմպերի հիման վրա բարելավվում է վառելիքային հաշվեկշռի կառուցվածքը: Քիմիական արդյունաբերության մեջ առավել բարձր տեմպերով է զարգանում պլաստիկ մասսաների և զանազան խեժերի, քիմիական մանրաթելի ու սինթետիկ կաուչուկի, հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության միջոցների, կենցաղային քիմիայի ապրանքների արտադրությունը: Սև մետալուր-

գիայում ավելանում է գլանվածքի առավել ձեռնտու տեսակների՝ նրբաթիթեղ պողպատի, սառը գլանված թիթեղի, ճկուն պրոֆիլների և այլ արտադրանքի տեսակարար կշիռը: Մեքենաշինության մեջ հիմնական ուշադրությունը դարձվում է ավտոմատ ու կիսաավտոմատ հաստոցների, ագրեգատային հաստոցների, խարտահաստոցների և սարքավորման առաջավոր այլ տեսակների թողարկմանը:

Սոցիալիստական արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն ուղղությունն է կապիտալ ներդրումների քաղաքականության կատարելագործումը: Արտադրության էական պրոբլեմներից և ոչ մեկը չի կարող լուծվել այդ քաղաքականությունից անկախ: Կապիտալ ծախսումների ճիշտ բաշխումը, գիտատեխնիկական առաջադիմության, ժողովրդական տնտեսության կառուցվածքի օպտիմացման, արտադրության ու աշխատանքի կազմակերպման կատարելագործման նախապայմանն է: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ առավել հատուցում տա ներդրված միջոցների յուրաքանչյուր ռուբլին:

Գիտատեխնիկական առաջադիմության տնտեսական հնարավորությունները իրականացվում են արտադրության և աշխատանքի կազմակերպման կատարելագործման միջոցով: Հայտնի է, որ տեխնիկայի յուրաքանչյուր տեսակը կազմակերպական որոշակի պահանջներ է ներկայացնում, և դրանց բավարարումը ոչ միայն աշխատանքի գործող միջոցների լրիվ օգտագործման, այլև գիտատեխնիկական առաջընթացի արագացման պայմանն է: Հենց դրանով էլ որոշվում է արտադրության տեխնիկական մակարդակին արտադրության և աշխատանքի կազմակերպման ձևերի ու միջոցների համապատասխանությունն ապահովելու անհրաժեշտությունը:

* * *

Տնտեսական առաջադիմության հետ անխզելիորեն կապված են սոցիալիստական հասարակության սոցիալական հարաբերություններում կատարվող տեղաշարժերը:

Գիտությանն ու տեխնիկային բնորոշ են այնպիսի հատկություններ, որոնք նպաստում են մարդու ազատագրմանը մարդուն ստրկացնող դարեր շարունակ ստեղծված աշխատանքի բաժանմանը ենթարկվելու անհրաժեշտությունից, օգնում են վերացնելու մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները, աշխատանքն ապրելու միջոցից կենսական առաջին պահանջ դարձնելուն: Այդ նպատակների իրականացումը հիմնված է սոցիալիզմի գիտական ու տեխնիկական արդի նվաճումների վրա: Անձի համակողմանի զարգացումն իր հերթին թույլ կտա մեծապես արագացնելու գիտության ու տեխնիկայի առաջընթաց տեմպերը, հանրային արտադրության արդյունավետության աճը:

Գիտա-տեխնիկական հեղափոխության սոցիալական հետևանքները աչքի են ընկնում բացառիկ բազմազանությամբ: Այդ հեղափոխությունը նախ և առաջ լուրջ փոփոխություններ է առաջացնում աշխատանքի բնույթի և բովանդակության մեջ, նոր պահանջներ է ներկայացնում աշխատողների որակավորման նկատմամբ: Ծանրության կենտրոնը աշխատանքի ֆիզիկական կոմպոնենտից մտավորին տեղափոխելը պահանջ է հարուցում բարձրացնելու բանվորների պրոֆեսիոնալ գիտելիքները, ինչպես նաև ավելացնելու որակյալ աշխատանքի մարդկանց տեսակարար կշիռը:

Բանվորների և մասնագետների բարձր որակավորումը շահութաբեր է երկրի տնտեսության համար: Ակադեմիկոս Ս. Գ. Ստրումիլինի հաշվարկումներով սովետական հասարակությունը որակավորման, հանրակրթական և կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հաշվին ամեն տարի ստանում է ազգային եկամտի 23 տոկոս աճ: Սակայն արտադրության տեխնիկական ու կազմակերպական մակարդակի անշեղ բարձրացումը բարդացնում է պրոֆեսիոնալ պահանջները, և միջնակարգ կրթության ավարտումը դառնում է բարդ մասնագիտությունների գծով պատշաճ որակավորում ձեռք բերելու պայման: Դրանով էլ թելադրվում է պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունները պրոֆեսիոնալ տեխնիկական (ուսուցման 3—4 տարվա ժամկետով) ուսումնարաններ վերակազմելն արագացնելու անհրաժեշտությունը. այդ ուսումնարանները, միջնակարգ կրթություն պահանջող բարդ մասնագիտությունների որակյալ բանվորներ կպատրաստեն հանրակրթական ութամյա դպրոցը վերջացրած երիտասարդներից, որոնք միջնակարգ կրթությունը կավարտեն այդ ուսումնարաններում: Ընդսմին, հատուկ ուշադրություն կնվիրվի տեսական ու արտադրական ուսուցման մակարդակի բարձրացմանը նեղ պրոֆիլի մասնագիտությունը վերացնելու և աշխատանքի փոփոխման վերաբերյալ օրենքի կիրառումը խթանելու նպատակով:

Հետաքրքրական է դրա հետ առնչված միասնական բանվորական ուժի պրոֆեսիոնալ կառուցվածքի կատարելագործման պրոցեսը: Արդի պայմաններում միայնակ աշխատողներն ի վիճակի չեն տիրապետելու մեքենաների ավելի ու ավելի բարդացող սիստեմին, անհատական բանվորական ուժը հնարավորություն է ստանում գործելու բացառապես հանրայնորեն կոմբինացված աշխատանքի շրջանակներում՝ որպես օրգանական մասը համատեղ բանվորական ուժի, որը կենտրոնացնում է այն ամենի, ինչ անհրաժեշտ է



ունակությունների հանրագումարի արգասիքի պատրաստման համար, որը «աշխատանքի համատեղ պրոցեսի կատարողն է...»[1]:

Մեր երկրում նոր հասարակարգի հաստատումից հետո աշխատողների բաշխումն ըստ մասնագիտությունների այլևս չի կատարվում ըստ դասակարգային հատկանիշի: Սակայն չնայած էական դրական տեղաշարժերին կադրերի մասնագիտական կառուցվածքում, այդ պրոբլեմն ամենևին չի կորցրել իր արդիականությունը: Համատեղ բանվորական ուժի փոփոխման ուսումնասիրությունը անհրաժեշտ է պաշտոնների անվանացուցակների մշակման և կադրերի առավել նպատակահարմար կառուցվածքի մշակման, աշխատողների տարբեր կատեգորիաների միջև առավել բարենպաստ համաչափությունների սահմանման և կադրերի պատրաստման պլանավորման համար:

Տեղաշարժերն աշխատավորների մասնագիտական կառուցվածքում տեղի են ունենում մի քանի ուղղություններով: Կրճատվում է ֆիզիկական ծանր աշխատանքի հետ կապված անձանց տեսակարար կշիռը և ավելանում բարձր որակավորում ունեցողներինը, երևան են գալիս նոր մասնագիտություններ: Այսպես, ածխարդյունաբերության մեջ ձեռքով աշխատող հորատողներին, հանքափորներին ու հարվածահատողներին փոխարինել են հանքային և հորատանցման կոմբայնների մեքենավարները: Նավթարդյունաբերության մեջ աշխատանքի այնպիսի բացառիկ ծանր ու վնասակար տեսակներին, ինչպիսիք են հարվածա-ճոպանային, մետաղաձողային հորատումը, փորադույլով նավթաքաշումը, փոխարինել են տուրբինային հորատումը, նավթահանման խորքա-պոմպային, կոմպրեսորային, փակ շատրվանային, արտադրանքի խմբային հավաքման և այլ մեթոդներ, ավելանում է կարգավորիչ բանվորների, ավտոմատացման միջոցներին սպասարկող տեխնոլոգ բանվորների թիվը: Քիմիական արդյունաբերության մեջ տարեցտարի բարձրանում է ապարատավարների, զոդող բանվորների, լաբորանտների տեսակարար կշիռը, սև մետալուրգիայում՝ գլանահաստոցների կարգավորիչների և օպերատորների տեսակարար կշիռը: Արագորեն աճում է ավտոմատիկ գծերի, ծրագրային կառավարման հաստոցների կարգավորման հետ կապված աշխատողների, ավտոմատիկ տեղակայանքների օպերատորների, սարքավարների, քիմիկոս-լաբորանտների տեսակարար կշիռը, աճում է սարքավորման սպասարկմամբ ու նորոգմամբ զբաղվող փականագործների, էլեկտրափականագործների և էլեկտրամոնտյորների մասնագիտության նշանակությունը:

Գիտատեխնիկական առաջադիմության կարևոր սոցիալական հետևանքն է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների աստիճանաբար հաղթահարումը, Մտավոր գործունեությունը միշտ էլ եղել է նյութական արտադրության ոլորտի աշխատանքի պրոցեսի բաղկացուցիչ մասը: Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում խիստ աճում է այդպիսի գործունեության ծավալը, ընդ որում այն իրականանում է տնտեսության առանձին մակարդակների համար յուրահատուկ տարբեր ձևերով (բանվորի աշխատանքի ընդհանուր ծախսումներում մտավոր աշխատանքից սկսած մինչև գիտական հետազոտություններն ու մշակումները, որոնք ներկայումս դարձել են նյութական արտադրության պրոցեսի ֆունկցիոնալ մասը):

Մեր երկրում սիստեմատիկորեն աճում է մտավոր աշխատանքի տեսակարար կշիռը: Այսպես, եթե 1926 թվականին կար մտավոր աշխատանքով զբաղվող 2,9 միլիոն մարդ, ապա 1959 թվականին նրանք արդեն կազմում էին 20,5 միլիոն, իսկ 1961 թվականին՝ ավելի քան 27 միլիոն, 1939 թվականից մինչև 1959 թվականը ֆիզիկական աշխատանքով զբաղվածների տեսակարար կշիռը ժողովրդական տնտեսության մեջ զբաղված անձանց ընդհանուր թվում կրճատվել և 82,5 տոկոսից հասել է 79,3 տոկոսի, իսկ մտավոր աշխատանքով զբաղվածների տեսակարար կշիռը աճել և 17,5 տոկոսից հասել է 20,7 տոկոսի[2]:

Մտավոր աշխատանքի ծախսումների տեսակարար կշռի ավելացման և աշխատողի հանրակողմանի զարգացման համար նոր հնարավորությունների ստեղծման գործում կարևոր դեր է խաղում արտադրության ավտոմատացումը: Այն կարող է բարձրացնել և 60—70 տոկոսի հասցնել ֆիզիկական ու մտավոր աշխատանքի համատեղում պահանջող գործողություններին ընկնող աշխատանքային ժամանակի տեսակարար կշիռը: Խրոնոմետրաժային տվյալներով ավտոմատացման միջոցներ չկիրառող որոշ նավթահանքերում օպերատորների ժամանակի 75 տոկոսը ծախսվում է պարաֆինազերծիչ ձեռքի վերհանող մկանային աշխատանքի վրա, իսկ 75—85 տոկոսով տեխնոլոգիական պրոցեսի ավտոմատացման դեպքում սարքերի վերահսկողությունը և մտավոր ֆունկցիաների կատարումը արդեն կազմում են ժամանակի գրեթե 52 տոկոսը: Նավթահանման օպերատորը ավելի ու ավելի

[1] Տե՛ս Архив Маркса и Энгельса, т. II (VII), стр. 129.

[2] Տե՛ս «Итоги Всесоюзной переписи населения 1959 года СССР» (сводный том). Госстатиздат, 1962, стр. 130; «СССР и зарубежные страны после победы Великой Октябрьской социалистической революции». Издательство «Статистика», 1970, стр. 160.

դառնում է այնպիսի լայն պրոֆիլի բանվոր, որը զուգակցում է նախկինում ինքնուրույն մասնագիտությունների՝ էլեկտրամոնտյորի, սարքավորման փականագործի, վերահսկիչ-չափիչ սարքեր կարգավորողի ֆունկցիաները։ Տարակույս չկա, որ համեմատաբար ոչ հեռու ապագայում հենց այդպիսի տիպի մասնագիտական խմբերը կկազմեն աշխատողների հիմնական մասը։

Սոցիալական փոփոխությունների կարևոր ձևերից են գիտատեխնիկական առաջընթացով պայմանավորված տեղաշարժերը զբաղվածության կառուցվածքում, նյութական արտադրության մեջ՝ հօգուտ արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի, ի հաշիվ գյուղատնտեսության, իսկ ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության մեջ՝ հօգուտ անարտադրական ոլորտի, ի հաշիվ նյութական արտադրության։ Այդպիսի փոփոխությունները արտադրաուժերի զարգացման բնական հետևանք են։ «Երկիրն այնքան հարուստ է,— նշել է Մարքսը,— որքան նույն քանակության արտադրանքի պայմաններում արտադրող բնակչությունը պակաս է անարտադրողից։ Չէ՛ որ արտադրական բնակչության համեմատական սակավաթվությունը կլիներ աշխատանքի համեմատական բարձր արտադրողականության լոկ մի այլ արտահայտությունը»[1]։

1940 թվականին անարտադրական ոլորտում զբաղվածները կազմում էին բոլոր աշխատավորների 11,7 տոկոսը, 1960 թվականին՝ 17.0 տոկոսը, իսկ 1968 թվականին՝ արդեն 21,7 տոկոսը։ Զբաղվածության ավելացումը անարտադրական ոլորտում և առաջին հերթին նրա այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են լուսավորությունը, առողջապահությունը և գիտությունը, ոչ միայն բարենպաստ պայմաններ է ապահովում մարդու հանրակողմանի զարգացման համար, այլև արտադրության աճի զորեղ խթանիչն է։

Ոչ բավարար զարգացած անարտադրական ոլորտը նկատելիորեն իջեցնում է հասարակական շահագրգռվածությունը արտադրության արդյունքներով, հակասություններ է ստեղծում հասարակական, կոլեկտիվ և անձնական շահերի միջև, սահմանափակում է անձի առաջադիմությունը ազատ ժամանակի խելամիտ օգտագործման հիման վրա, կարող է հոգեբանական բացասական ազդեցություն ունենալ աշխատողների վրա՝ դրանից բխող բոլոր բացասական հետևանքներով հանդերձ, այդ թվում նաև արտադրության համար։ Կասկած չկա, որ զարգացած անարտադրական ոլորտը հարկավոր է դիտել որպես արտադրության զարգացման գործոն։

Գիտատեխնիկական առաջադիմության սոցիալական հետևանքների դրսևորման խիստ կարևոր բնագավառ են աշխատանքի պայմանները։ Հատկանշական է, որ աշխատանքի վայրը փոխող աշխատողների զգալի մասը դա բացատրում է աշխատանքի անբավարար պայմաններով։ Աշխատանքի պայմանների բարելավման ասպարեզում դեռևս շատ անելիքներ կան։ Այսպես, երբ չկան կոմպլեքսային մեքենայացում և ավտոմատացում, օժանդակ տնտեսություններն իրենց տեխնիկական զինվածությամբ դեռևս զգալի չափով ետ են մնում հիմնական արտադրությունից։ Այդ պատճառով ձեռքի աշխատանքի փոխարինումը մեքենայացված ու ավտոմատացված աշխատանքով հաճախ զուգորդվում է օժանդակ աշխատանքի տեսակարար կշռի բարձրացման, ոչ որակյալ կամ ֆիզիկական ծանր աշխատանքով զբաղված բանվորների՝ ձեռքով աշխատող բեռնակիրների, մանրիչ, անցքափակիչ բանվորների թվի աճման հետ։ Օրինակ, մեքենաշինության մեջ այն բանվորների ընդհանուր թվի, որոնց աշխատանքը կիսաավտոմատացված և ավտոմատացված է, միայն 40 տոկոսն է կատարում սարքավորման, հսկողության, կանոնավորման ու կարգավորման բարձրորակ աշխատանք, իսկ մնացածներն զբաղված են սարքավորման բեռնման, բեռնաթափման, գործարկման ու կանգնեցման սակավորակ աշխատանքով։

Դեռևս մեծ է ոչ որակյալ ֆիզիկական աշխատանքի տեսակարար կշիռը կոլտնտեսային արտադրության մեջ։ 1965 թվականին ձեռքի ոչ որակյալ աշխատանքով զբաղվածները կազմում էին մոտ 71 տոկոս, ֆիզիկական աշխատանքով զբաղվող որոշակի մասնագիտություն ունեցող անձինք՝ 14 տոկոս, մեքենաների վարմամբ զբաղվող որակյալ ֆիզիկական աշխատանքի բանվորները (տրակտորիստները, կոմբայնավարները և այլն) կազմում էին ավելի քան 10 տոկոս, առավելապես մտավոր աշխատանքով զբաղված անձինք (կոլտնտեսությունների վարչա-կառավարչական անձնակազմը և մասնագետները)՝ մոտ 5 տոկոս[2]։

Նման դրությունն, ըստ երևույթին, շատ թե քիչ չափով կպահպանվի, քանի դեռ չի ավարտվել արտադրական պրոցեսների կոմպլեքսային ավտոմատացումը, քանի բուն աշխատանքային պրոցեսը չի դարձվել մարդու հանրակողմանի զարգացմանը խթանող վճռական գործոն։ Այդ չափազանց կարևոր սոցիալական նպատակին հասնելու ճանապարհին եղած մոտակա խնդիրներն են ավտոմատիկ հոսքնթաց գծերի մասսայական արմատավորումը, աշխատողի ազատումը մեքենայական շատ գործողություններից և շաբլոն ֆունկցիաներից, նրա գործունեության մեջ ֆիզիկական ու մտավոր էներգիայի ծախսումների

[1] К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 26, ч. I, стр. 215.

[2] *Տե՛ս* **«Вопросы философии»** № 12, 1967, стр. 8:



էական փոփոխությունը հօգուտ վերջինիս, ոչ աշխատանքային և ազատ ժամանակի առավել նպատակահարմար օգտագործման համար անհրաժեշտ պայմանների ստեղծումը (բնորոշ է, որ ավելի բարձր է աշխատանքով անբավարարվածությունը այն մարդկանց մոտ, ովքեր հնարավորություն չունեն կանոնավոր հաճախելու կուլտուրլուսավորական հիմնարկները, ընդ որում այն առանձնապես զգալի է ավելի բարձր կրթության տեր մարդկանց մոտ), ներդասակարգային տարբերությունների հաղթահարումը (որոնք արտահայտվում են, օրինակ, նրանով, որ բանվորական մեկ խմբերը մյուս խմբերից տարբերվում են աշխատանքի բովանդակությամբ, որակավորման մակարդակով, ստացվող եկամուտներով, կրթական և կուլտուր-տեխնիկական պատրաստությամբ, կենսապայմաններով), կադրերի բաշխումը, հաշվի առած գիտելիքների մակարդակը։

Այդ կապակցությամբ բացառիկ մեծ նշանակություն է ստանում արտադրական կոլեկտիվների սոցիալական զարգացման տենդենցների ուսումնասիրությունը։ Հայտնի է, որ հասարակական գիտակցությունը բնորոշվում է հասարակական կեցությամբ։ Բայց այս ֆորմուլան չի կարող բացատրել միկրո-կոլեկտիվի և առանձին անձի վարքը տվյալ արտադրական իրադրության մեջ նրանց ամենօրյա դրսևորումներում։ Մարդկանց կոնկրետ արարքները ձևավորվում են անհատական առանձնահատկությունների ներգործության ներքո։ Ուստի չափազանց կարևոր է մարդկանց անհատական հարաբերությունների ուսումնասիրությունը, արտադրության պայմաններում նրանց վարքի մոտիվացիան։ Արտադրության մեջ սոցիալական հարաբերությունների կատարելագործումը թույլ է տալիս զարգացնելու կոլեկտիվիզմի, ընկերության և փոխադարձ օգնության զգացումը, պայմաններ է ստեղծում աշխատանքի հասարակական արտադրողականության աճի տեմպերի բարձրացման համար։

Սոցիալիստական հասարակարգում աշխատանքի պայմանների բարելավումն իրականացվում է հաշվի առած այն, որ վերջիններս արդեն հանդես են գալիս ոչ այնքան արտադրության պրոցեսի մեջ ամփոփված, որքան որպես պայմաններ, որոնց առկայության դեպքում մարդը արտադրության բուն պրոցեսի նկատմամբ դառնում է նրա վերահսկիչն ու կարգավորիչը[1]։ Արտադրության արդի տեխնիկայի և կազմակերպման պայմաններում հարկավոր է անցյալից էականորեն տարբերվող մոտեցում աշխատանքի պայմանների և այդ ասպարեզում եղած թերությունների վերացման ուղիների ընտրության պահպանմանը։ Արդեն ներկայումս աշխատանքի ծանր պայմանների վերացման և ֆիզիկական աշխատանքի դյուրացման հետ մեկտեղ, որպես գլխավոր խնդիր անշեղորեն առաջին պլանի վրա է մղվում ավտոմատացված արտադրության մեջ կատարած աշխատանքից առաջացող հոգեկան հոգնածությունը կանխող և վերացնող միջոցառումների մշակումը։

Արտադրության տեխնիկական մակարդակում և աշխատանքի բնույթում արմատական վերափոխումների իրականացմանը զուգընթաց խիստ աճում է անձի պրոֆեսիոնալ-աշխատանքային կողմնորոշման նշանակությունը, գիտական կանխատեսման դերը մասնագիտության ընտրման, պրոֆեսիոնալ ընտրության գործում։ Տարակույս չկա, որ մոտակա տասնամյակներում արմատական փոփոխություններ կկրի կադրերի մասնագիտական կառուցվածքը։ Ուստի արդեն այժմ հարկավոր է ձգտել որոշելու, թե գիտա-տեխնիկական առաջընթացի հարաճուն տեմպերի պայմաններում ո՞ր մասնագիտություններն են հեռանկարային և ո՞ր մասնագիտությունները պետք է վերանան։

Մինչդեռ մասնագիտության ընտրության կանխատեսման հարցում մեր երկրում գոյություն ունեցող սիստեմը լուրջ կատարելագործման կարոտ է։

Ժամանակին լայնորեն տարածված էր այն տեսակետը, թե յուրաքանչյուր մարդու կարելի է ցանկացած մասնագիտությունը սովորեցնել։ Մինչդեռ փորձն այլ բան ցույց տվեց. առանձին վերցրած յուրաքանչյուր մարդու հնարավորություններն ունեն հոգեբանա-ֆիզիոլոգիական և կենսաբանական իրենց սահմանները։ Միջավայրի դերի ճանաչման հետ մեկտեղ անձի կենսաբանորեն պայմանավորված կողմի, ժառանգականության դերի ճանաչումը ընդհանուր ոչինչ չունի անձի բիոլոգիզացիայի հետ, որն այնքան բնորոշ է բուրժուական գիտությանը, որը փորձում է այդ երևույթի բնորոշ գծերը բացատրել բացառապես ֆիզիկական կառուցվածքի առանձնահատկություններով։

Մարքսիզմը ենթադրում է անձի ձևավորման բոլոր ասպեկտների հաշվառման անհրաժեշտությունը։ Ընդ որում կենսաբանական գործոնի համեմատությամբ ավելի էական է սոցիալական գործոնը։ Մարքսը նշել է, որ «մարդու էությունը առանձին անհատին հատուկ աբստրակտ չէ։ Իր իրականությամբ այն հասարակական բոլոր հարաբերությունների ամբողջությունն է»[2]։ Բայց դրա հետ մեկտեղ նա անձը դիտում էր որպես բնական և ձեռքբերովի ունակությունների զուգակցություն, առաջիններն առնչելով մարդու բնական էության հետ, նա խոսում էր բոլոր հա-

[1] *Տես* К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 46, ч. II, стр. 213.

[2] К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 3, стр. 3.

կումների զարգացման անհրաժեշտության մասին:

Ակներև է, որ զարգացող գիտատեխնիկական հեղափոխության և բարդացող սոցիալական կառուցվածքի իրադրության մեջ սոցիալական կարևոր խնդիրների թվին է պատկանում մարդու ներքին աշխարհի ու վարքի ղեկավարումը: Այստեղից էլ բխում է մարդկանց սոցիալական գործունեության և վարքի ղեկավարման անհրաժեշտությունը, ելնելով աշխատողի դաստիարակության և ուսուցման ընթացքում նրա նպատակային կողմնորոշումից: Ուստի հարկավոր է ընդլայնել ուսումնասիրությունները սոցիալական հոգեբանության բնագավառում: Կարևոր է սիստեմատիկորեն ուսումնասիրել աշխատանքային պրոցեսի մասնակիցների փոխհարաբերությունները, նրանց համատեղ գործողությունների բնույթըն ու ձևերը, որ իր հերթին ենթադրում է աշխատողի անհատական և տիպոլոգիական առանձնահատկությունների՝ նրա հոգեբանական ու ֆիզիոլոգիական տվյալների, հակումների և ունակությունների, համոզմունքների ու բարոյական դրույթների, այսինքն՝ ամբողջությամբ վերցրած անձի, իմացությունը, հաշվի առած նրա զբաղմունքը, սեռը, տարիքը, կրթության մակարդակը: Նման ուսումնասիրությունների հիման վրա ընտացված տվյալները կարող են հաջողությամբ օգտագործվել արտադրական կոլեկտիվների գործունեության պայմանների օպտիմացման և արդյունավետության բարձրացման համար:

Սոցիալիստական հասարակարգում գիտությունը հնարավորություն ունի կանխատեսելու գիտա-տեխնիկական հեղափոխության սոցիալական հետևանքները, որ գիտական կոմունիզմի առավելությունն է: Այդ կանխատեսումը հիմնվում է արտադրաուժերի և արտադրական հարաբերությունների շարժման օբյեկտիվ օրինաչափությունների իմացության վրա: Արտադրական հարաբերությունների որոշակի սիստեմում արտադրաուժերի զարգացման մակարդակը և հիմնական ուղղությունները բնորոշող նյութերը թույլ են տալիս բավարար չափով որոշելու սոցիալական պրոցեսների առավել էական մոմենտները շատ թե քիչ հեռավոր պատմական հեռանկարում:

Գիտատեխնիկական առաջադիմության տընտեսական ու սոցիալական նշանակությունը կաճի կենսաբանության, ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի, կիբեռնետիկայի և այլ գիտությունների բնագավառում նոր հայտնագործությունների երևան գալուն զուգընթաց: Միաժամանակ ավելի կուժեղանա այդ հեղափոխության դերը որպես տնտեսական ու սոցիալական առաջընթացի ուժեղ գործոն, որպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման նախապայման, կոմունիստական հասարակարգի կարևորագույն սոցիալական խնդիրների լուծման միջոց:

**Ա. ՕՄԱՐՈՎ**

*«Вопросы экономики» 1970, № 9*

Լրացուցիչ գրականություն

*Ս. Պ. Տրապեզնիկով*

Լենինիզմը և արդի գիտատեխնիկական հեղափոխությունը.

*«Լենինյան ուղիով», 1970 թ., № 6*

